ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



12

ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 12
ԴԵԿՏԵՄԲԵՐ
1958 Թ.



ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



էջ



### ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## СОДЕРЖАНИЕ



# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

Բերկրալի օրեր է ապրում մեր լայնարձակ ու հզոր սոցիալիստական Հայրենիքը: Ամենուրեք սովետական մարդիկ բուռն խանդավառությամբ և հայրենասիրական բարձր ակտիվությամբ պատրաստվում են արժանավայել դիմավորելու իրենց հարազատ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը:

Մեր պարտիան դեպի իր XXI համագումարն է գնում ավելի միաձույլ և ավելի համախմբված լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը: Պարտիան ջախջախեց և մի կողմ նետեց Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խումբը, որը փորձում էր ձախողել պարտիայի XX համագումարի կողմից սահմանված քաղաքական կուրսը և շեղել նրան լենինյան ուղուց:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն հետևողականորեն կենսագործելով պարտիայի XX համագումարի որոշումները, աչքի լույսի պես է պահպանում մարքս-լենինյան տեսության անաղարտությունը, ստեղծագործաբար զարգացնում է այդ տեսությունը կոմունիզմի համար մղվող գործնական պայքարի պրոցեսում և այն հարստացնում պատմական նոր ու կենդանի գործունեության փաստերի հիման վրա:

Անշեղորեն առաջնորդվելով ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման լենինյան պլանով, սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ հաղթանակներ է ձեռք բերել երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, աշխատավորների բարեկեցության բարձրացման գործում: Այժմ Սովետական Միությունը ունի հզոր, բազմակողմանիորեն զարգացած արդյունաբերություն, տրանսպորտ, բարձր մեքենայացված սոցիալիստական գյուղատնտեսություն: Տարեցտարի աճում է երկրի հանրային հարստությունն ու ազգային եկամուտը: Միայն 1946 — 1958 թվականներին պետական կապիտալ ներդրումների ծավալը ժամանակակից գներով կազմել է ավելի քան մեկ տրիլիոն վեց հարյուր միլիարդ ռուբլի: Այդ ժամանակամիջոցում կառուցվել և գործարկվել են պետական արդյունաբերական մոտ 12 հազար խոշոր ձեռնարկություններ և մեծ թվով միջակ ու մանր ձեռնարկություններ:

Սովետական ժողովուրդը,— ասված է ՍՄԿՊ XXI համագումարին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում,— համախմբված իր Կոմունիստական պարտիայի շուրջը, հասել է այնպիսի բարձունքների, կատարել այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր, կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:

Կոմունիստական շինարարության լենինյան գաղափարների վառ արտա-

ցումն է հանդիսանում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման
առաջիկա յոթնամյա պլանը, որը շարադրված է ՍՄԿՊ XXI համագումարին
ընկ. Ն. Ս. Խրուշչովի՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման
1959 — 1965 թվականների կոնտրոլ թվերը» զեկուցման թեզիսներում։

Այս օրերին մեր ամբողջ երկրով մեկ պարտիական կազմակերպություն-
ների ժողովներում ու կոնֆերանսներում, արդյունաբերական ու գիտական ձեռ-
նարկությունների, հիմնարկների բանվոր-ծառայողների և կոլտնտեսական-
ների ժողովներում նախահամագումարյան քննարկման են ենթարկվում պար-
տիայի Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Նոյեմբերյան պլենումի նյու-
թերը, որոնք արժանանում են մեր երկրի աշխատավորների ջերմ հավանու-
թյանը։ Ոչ միայն մեր երկրի աշխատավորական լայն մասսաների, այլև մեր
Հայրենիքի սահմաններից դուրս միլիոնավոր առաջավոր մարդկանց ուշա-
դրությունը կենտրոնացած է ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների
վրա, որոնք հանդիսանում են մեր երկրում կոմունիզմի կառուցման վեհ
ծրագիրը։

1959 թվականի հունվարի 10-ին հրավիրվում է Հայաստանի Կոմունիս-
տական պարտիայի XX արտահերթ համագումարը, որը քննարկելու է «ՍՍՌՄ
ժողովրդական տնտեսության զարգացման 1959 — 1965 թթ. կոնտրոլ թվերի
մասին» ՍՄԿՊ XXI համագումարին տրվելիք ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուց-
ման թեզիսները և ընտրելու է պարտիայի XXI համագումարի պատգամա-
վորներ։

Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների հզոր զարգացման
մարմնացումն է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը,
որը մշակված է լենինյան ազգային քաղաքականության սկզբունքներից ել-
նելով։ 1959 — 1965 թվականների կոնտրոլ թվերի նախագծով նախատեսված
է բոլոր ազգային ռեսպուբլիկաների, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ-ի
տնտեսության և կուլտուրայի բուռն վերելք։

Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 1959—
1965 թթ. կոնտրոլ թվերի համաձայն, ռեսպուբլիկայի արդյունաբերության
համախառն արտադրանքը 1965 թվականին, 1958 թվականի համեմատու-
թյամբ, ավելանալու է 2,2 անգամ։ Տարեկան աճի միջին տեմպը կազմելու է
11 տոկոս, այն ժամանակ, երբ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համա-
խառն արտադրանքի տարեկան միջին աճը նախատեսված է մոտավորապես
8,6 տոկոս։ Յոթնամյա պլանով մեր ռեսպուբլիկայի կապիտալ ներդրումնե-
րը կազմելու են 12 միլիարդ ռուբլի, որը զգալիորեն գերազանցում է սովե-
տական բոլոր տարիների կապիտալ ներդրումներին։ Յոթնամյակի վերջին
տարում ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրանքը
կկազմի ավելի քան 16 միլիարդ ռուբլի։

Կոմունիստական պարտիան անշեղորեն կենսագործելով մեծ Լենինի
ցուցումները, երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում
առաջնությունը տալիս է ծանր արդյունաբերությանը, որը մեր Հայրենիքի
առաջընթացի, նրա պաշտպանունակության է՛լ ավելի ամրապնդման և աշ-
խատավորության նյութական բարեկեցության բարձրացման հիմքերի հիմքն է
հանդիսանում։ Առաջիկա յոթնամյակում էլ մեր ռեսպուբլիկայի ժողովրդա-
կան տնտեսության զարգացման մեջ առաջնությունը տրված է ծանր արդյու-
նաբերությանը։



Մոտակա տարիներին ռեսպուբլիկայում առավելապես բարձր տեմպերով
կզարգանան մեր տնտեսության այնպիսի կարևոր ճյուղեր, ինչպիսիք են՝
քիմիական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, շինանյութերի
արդյունաբերությունը, մեքենաշինության բոլոր ճյուղերը և, հատկապես, էլեկ-
տրամեքենաշինությունը, հաստոցաշինությունը, գործիքաշինությունը և սար-
քաշինությունը։ Այսպես, յոթնամյակի վերջին տարում՝ 1965 թվականին,
1958 թվականի համեմատությամբ, պղնձի ձուլումը ավելանալու է 4 անգամ,
ռաֆինացված պղնձինը՝ 5,6 անգամ, մոլիբդենային կոնցենտրատինը՝
ավելի քան 3,2 անգամ։ Նախատեսվում է յոթնամյակում քիմիական արդյու-
նաբերության համախառն արտադրանքը ռեսպուբլիկայում 1965 թվականին,
1958 թվականի համեմատությամբ, զարգացնել ավելի քան 3,4 անգամ։ Քի-
միական արդյունաբերության մեջ որպես հումք և վառելիք լայնորեն կկիրառ-
վի բնական գազը, որը հնարավորություն կտա զգալիորեն ավելացնել նրա
արտադրանքի ծավալը։

Մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկությունների համախառն
արտադրանքը ռեսպուբլիկայում, նոր ձեռնարկությունների շահագործման և
գործող արտադրական կարողությունների ընդլայնման շնորհիվ ավելանալու
է 4,1 անգամ, այդ թվում էլեկտրա-տեխնիկական արդյունաբերությանը՝ 3,3
անգամ, ռադիոտեխնիկայինը՝ 55 անգամ, հաստոցաշինությանը և գործիքա-
շինությանը՝ 5,6 անգամ։ Նախատեսվում է կառուցել և շահագործման հանձ-
նել միկրոշարժիչների, տեխնիկական քարերի, ֆրեզերային հաստոցների,
հղկիչ հաստոցների և այլ գործարաններ։

Արդյունաբերության այս կարևորագույն ճյուղերի արագ զարգացման
շնորհիվ կփոխվի նրանց տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբե-
րության համախառն արտադրանքի մեջ։ Այսպես, 1965 թվականին մեքենա-
շինության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբերության համա-
խառն արտադրանքի մեջ կկազմի 23,2 տոկոս՝ 1958 թվականի 14,8 տոկոսի
դիմաց։

Նախատեսվում է արդյունաբերական նոր ձեռնարկությունները տեղա-
բաշխելիս դրանք ավելի մոտեցնել հումքի աղբյուրներին, հաշվի առնելով
ձեռնարկությունների մասնագիտացման և կոոպերացման պահանջները, աշ-
խատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և ռեսպուբլիկայի արդ-
յունաբերական տեսակետից թույլ զարգացած մի շարք շրջաններում արդյու-
նաբերական օջախներ ստեղծելու անհրաժեշտությունը։ Նոր ձեռնարկություն-
ների մի զգալի մասը կառուցվելու է ռեսպուբլիկայի շրջաններում և հատկա-
պես Ախտայում, Լուսավանում, Սևանում, Դիլիջանում, Գորիսում, Բասարգե-
չարում և այլ վայրերում։

Յոթնամյա պլանով լայն միջոցառումներ կիրականացվեն ռեսպուբլի-
կայի էներգետիկ արդյունաբերության բնագավառում, որի արտադրանքի աճը
նախատեսվում է 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ավե-
լացնել 1,8 անգամ։ 1958 — 1960 թվականների ընթացքում շահագործման են
հանձնվելու Աթարբեկյանի և Երևանի հիդրոէլեկտրակայանները։ Կառուցվելու
և շահագործման է հանձնվելու Տաթևի հիդրոէլեկտրակայանը։

Արդյունաբերական նոր ձեռնարկությունների կառուցման և բնակարանային շինարարության մեծ պլանների իրականացումը պահանջում է շինանյութերի արդյունաբերության բուռն զարգացում։ Ելնելով դրանից, առաջիկա յոթնամյակում նախատեսվում է 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, շարելու նյութերի արտադրությունը ավելացնել 1,9 անգամ, կրի արտադրությունը՝ 4,1 անգամ, գաջինը՝ 1,8 անգամ։ Զգալի չափով կաճի ցեմենտի, շիֆերի և այլ շինանյութերի արտադրությունը։ Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայում կստեղծվի ասբոցեմենտային խողովակների և միջնորմային սալիկների արտադրությունը։

Ռեսպուբլիկայի յոթնամյա պլանը լայն հեռանկարներ է բացում սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողների առջև։ Խնդեր է դրվում ավելացնելու գյուղատնտեսական արտադրությունը այն հաշվով, որպեսզի բնակչությունն առատորեն ապահովվի սննդամթերքներով, իսկ արդյունաբերությունը՝ հումքով։ ՀՍՍՌ գյուղատնտեսության մեջ նախատեսվում է ավելի քան մեկ միլիարդ ռուբլու կապիտալ ներդրում։ Մեծ աշխատանք է ծավալվելու ոռոգման ցանցի հետագա ընդարձակման վրա, որի շնորհիվ ոռոգելի տարածությունները ավելանալու են 38 հազար հեկտարով և 180 հազար հեկտար արոտավայրեր կապահովվեն ջրով։ Նախատեսվում է Թալինի, Արզնի-Շամիրամի և Կոտայքի ոռոգման սիստեմների տակ ընկնող տարածությունների վրա կազմակերպել խաղողագործական և պտղաբուծական 19 նոր սովետական տնտեսություններ։

Ռեսպուբլիկայում 1957 թվականի համեմատությամբ, 1965 թվականին ավելանալու է հացահատիկի արտադրությունը՝ 28,2 տոկոսով, բամբակինը՝ 23 տոկոսով, ծխախոտինը՝ 40 տոկոսով, բանջարեղենինը՝ 76,7 տոկոսով, խաղողինը՝ մոտավորապես 2,9 անգամ, մրգինը՝ 3 անգամ, բոժոժինը՝ 1,7 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, կաթինը՝ 1,8 անգամ, բրդինը՝ 2 անգամ, ձվինը՝ 79,7 տոկոսով։ Յոթնամյակում տնկվելու են շուրջ 44 հազար հեկտար խաղողի և պտղատու նոր այգիներ։ Գյուղատնտեսական կուլտուրաների արտադրանքի համախառն աճը հիմնականում լինելու է բերքատվության բարձրացման հաշվին, ըստ որում նախատեսվում է 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականի յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը բարձրացնել, հացահատիկինը՝ 10,5-ից 14,1 ցենտների, բամբակինը՝ 22,5-ից (1958 թվականի պլանով նախատեսածից) 27 ցենտների, ծխախոտինը՝ 12,9-ից 16 ցենտների, շաքարի ճակնդեղինը՝ 226-ից 266 ցենտների, խաղողինը՝ 86,8 ցենտների, մրգինը՝ 69,6 ցենտների։

Անասնաբուծության զարգացման կոնտրոլ թվերն իրագործելու նպատակով խոշոր նշանակություն է տրվում կերի կայուն բազա ստեղծելուն, որը հնարավորություն կտա զգալիորեն աճեցնելու անասունների գլխաքանակն ու շեշտակիորեն բարձրացնելու մթերատվությունը։

Սովետական հասարակության զարգացման օրենքն է՝ ժողովրդի բարեկեցության անընդհատ աճը, սոցիալիստական արտադրության զարգացման և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։ Արդյունաբերության և գյուղատնտեսության բուռն աճի հետ միասին միշտ էլ կոմունիստական պարտիայի հոգատարության առարկան է եղել աշխատավորու-



թյան նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացման հարցը։ Աշխատավորների անմիջական կենսական պահանջմունքները բավարարելու նպատակով յոթնամյակում մեր ռեսպուբլիկայում մեծ չափով կզարգանա թեթև և սննդի արդյունաբերությունը։ Թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաճի 1,7 անգամ։ Այդ թվում համապատասխանորեն բամբակե գործվածքների արտադրությունը կաճի 32,6 տոկոսով, բրդյա գործվածքներինը՝ 65,8 տոկոսով, մետաքսյա գործվածքներինը՝ 80 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 70,3 տոկոսով։ Կկառուցվեն և շահագործման կհանձնվեն՝ Դիլիջանում տրիկոտաժի ֆաբրիկա, կարի և ձեռնոցների նոր ֆաբրիկաներ Երևանում և այլ ձեռնարկություններ։

Յոթնամյակի ընթացքում ռեսպուբլիկայում զգալիորեն ավելանալու է սննդարդյունաբերության համախառն արտադրանքը։ Նախատեսվում է 1965 թվականին մսի արտադրությունը հասցնել 20,8 հազար տոննայի, կենդանական յուղինը՝ 2.300 տոննայի, անարատ կաթնամթերքներինը՝ 45 հազար տոննայի, երշիկեղենինը՝ 10 հազար տոննայի, խաղողի գինիներինը՝ 5,2 միլիոն դեկալիտրի, կոնյակինը՝ 200 հազար դեկալիտրի։ Զգալիորեն աճելու է շաքարի, հանքային ջրերի, գարեջրի, բուսական յուղի և այլ ապրանքների արտադրությունը։

Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության գծով կապիտալ ներդրումները կկազմեն ավելի քան 3 միլիարդ ռուբլի, կամ նախորդ հնգամյակի համեմատությամբ կաճեն ավելի քան երեք անգամ։

Եթե նախորդ հնգամյակում առողջապահության, լուսավորության և կուլտուրայի բնագավառում ներդրվել է 305 միլիոն ռուբլի, ապա այս յոթնամյակում այն կկազմի ավելի քան մեկ միլիարդ ռուբլի։ Միայն Լուսավորության մինիստրության մասսայական դպրոցներում սովորողների թիվը 1965 թվականին կհասնի մոտ 400 հազարի, 1958 թվականի 274 հազար աշակերտի դիմաց։ Յոթնամյակի վերջին տարում հիվանդանոցների մահճակալների թիվը կավելանա 7300-ով, 1958 թվականի համեմատությամբ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործման շնորհիվ վճռական քայլ կարվի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման, մեր Հայրենիքի հզորության և պաշտպանունակության է՛լ ավելի ամրապնդման, աշխատավորության նյութական բարեկեցության բարելավման ճանապարհին և հնարավորություն կստեղծվի պատմական կարճ ժամկետում հասնելու և անցնելու կապիտալիստական առավել առաջավոր երկրներից՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ։

Յոթնամյա պլանն իր վիթխարիությամբ միանգամայն ռեալ ու իրագործելի է։ Այն ռեալ է, որովհետև մեզ մոտ այդ պլանի իրականացնողները մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով ոգեշնչված, Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող սովետական մարդիկ են, աշխատավորական լայն մասսաները։ Մեր պարտիայի ուժի ու հզորության աղբյուրը նրա սերտ կապն է աշխատավորական լայն զանգվածների հետ, որը նրանց հնարավորություններ է տալիս ծավալելու ստեղծագործական նախաձեռնությունը և այն ուղղելու կոմունիզմի կառուցման նպատակին։ Դրա համար էլ կոմու-

նիստական հասարակարգի կառուցմանը վերաբերող կարևորագույն հարցերը մեր պարտիան միշտ էլ լուծում է ժողովրդի հետ, հաշվի առնելով նրա կարծիքն ու խորհուրդները: Իսկ սովետական մարդիկ քաջ գիտեն, որ Կոմունիստական պարտիան՝ մեր ժամանակի միտքը, խիղճն ու պատիվը, լենինյան լուսաշող ուղիով իրենց տանում է դեպի կոմունիզմ, դրա համար էլ ազնվորեն աշխատում են է՛լ ավելի ամրապնդել մեր Հայրենիքի տնտեսական, քաղաքական հզորությունն ու նրա պաշտպանունակությունը:

Կոմունիզմը պահանջում է մարդու հոգևոր և ֆիզիկական ունակությունների համակողմանի զարգացում: Կատարելով մեծ Լենինի պատգամները, մեր պարտիան միշտ էլ կոմունիզմի կառուցումը շաղկապում է գաղափարական աշխատանքի բարելավման, աշխատավորության քաղաքական ու կուլտուրական դաստիարակության հարցերի հետ: Կոմունիզմի կառուցման ներկա էտապը պարտիական կազմակերպություններից պահանջում է է՛լ ավելի բարելավել մասսաների հետ տարվող գաղափարական դաստիարակչական աշխատանքը, ավելի ակտիվ և վճռական պայքարել մարդկանց գիտակցությունից վնասակար ազդեցության մնացորդները վերացնելու համար: Մեր ամբողջ քաղաքական-կազմակերպական, ագիտացիոն-պրոպագանդիստական և գիտական ու կուլտուրական աշխատանքները պետք է ծառայեն այն նպատակին, որպեսզի սովետական բոլոր մարդիկ ազնվորեն կատարեն իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ և ակտիվորեն մասնակցեն կոմունիզմի կառուցմանը: Պարտիական կազմակերպությունների ամենաառաջնահերթ խնդիրն է՝ աշխատավորական լայն մասսաների սեփականությունը դարձնել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, նրանց պայքարի հանել կոմունիզմի կառուցման վեհ ծրագիրը հաջողությամբ իրագործելու համար:

Հայաստանի բոլշևիկները, հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, իրենց XX համագումարն են գալիս այն նշանակալի նվաճումներով, որ ձեռք է բերել հայ ժողովուրդը սոցիալիզմի կառուցման բնագավառում: Համագումարը քննարկելու և հաստատելու է գալիք յոթնամյակի պլանը: Նրանք միաձույլ շարքերով դեպի ՍՄԿՊ XXI համագումարն են գնում ավելի համախմբված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի շուրջը, որը բարձր է պահում մարքսիզմ-լենինիզմի անպարտելի դրոշը:

---

# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԻ ՀԱՆՐԱԳՈՒՄԱՐԸ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Դեկտեմբերյան պլենումն ավարտեց իր աշխատանքները: Պլենումը լսեց և քննարկեց ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը՝ վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրների մասին: Պլենումը լիովին հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության քաղաքական գծին ու պրակտիկ գործունեությանը՝ գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան, ինչպես նաև հաջորդ պլենումների որոշումների և պարտիայի XX համագումարի որոշման կենսագործման ուղղությամբ:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում քննարկված այդ հարցը կոմունիզմի կառուցման համար խոշորագույն նշանակություն ունի, փաստորեն դա գյուղատնտեսության վիճակի մասին Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունն էր ժողովրդի առջև: Իր այդ զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ցույց տվեց գյուղատնտեսության վերելքի գործում մեր պարտիայի կատարած վիթխարի աշխատանքի արդյունքները և առաջիկա տարիներում գյուղատնտեսական մթերքների արտադրության շեշտակի ավելացման ուղիները:

Հինգ տարի առաջ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը վճռականորեն բացահայտեց գյուղատնտեսության ղեկավարման լուրջ սխալներն ու խոշոր թերությունները, համարձակորեն դեն շպրտեց այն ամենը, ինչ խանգարում էր գյուղատնտեսության զարգացմանը և մշակեց հողագործության ու անասնապահության շեշտակի վերելքի ծավալուն ծրագիր: Սեպտեմբերյան պլենումի որոշումները գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման շրջադարձային կետ հանդիսացան:

Պարտիայի մշակած խոշորագույն միջոցառումները գյուղատնտեսության զարգացման համար նոր էտապ նշանավորեցին կոլտնտեսային կարգի ու մեր ամբողջ սոցիալիստական սիստեմի զարգացման ասպարեզում: Դրանց ճիշտ կիրառման շնորհիվ ծավալվեցին կոլտնտեսային կարգի ուժերը, գործի դրվեցին նրա ռեզերվները, ստեղծվեցին ռեալ հնարավորություններ գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու և գյուղատընտեսության մեջ աշխատանքի ավելի բարձր արտադրողականության հասնելու համար: Վերջին հինգ տարին կոմունիզմի կառուցման լենինյան ծրագրի հաջող կենսագործման, աշխատավորության բարեկեցության աճման, Սովետական պետության հզորության ամրապնդման, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի, մեր պարտիայի, ամբողջ ժողովրդի լարված մեծ աշխատանքի ու հոյակապ նվաճումների ժամանակաշրջանն էր:

Մինչև ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը գյուղատնտեսության վիճակը մեզ մոտ բարվոք չէր. գյուղատնտեսության արտադրանքի մակար-

դակը չէր բավարարում երկրի պահանջմունքները, կոլտնտեսությունների և
սովետական տնտեսությունների ղեկավարման գործում եղած խոշոր թերու-
թյունները և կոլտնտեսային շինարարության որոշ խեղաթյուրումներ արգե-
լակում էին գյուղատնտեսության արտադրանքի աճը։ Ստեղծված դրությունը
պահանջում էր վճռական միջոցներ ձեռք առնել գյուղատնտեսության ար-
տադրության արագ աճն ապահովելու համար։

Հենվելով բոլոր աշխատավորների բուռն աջակցության և ստեղծագոր-
ծական ակտիվության վրա, պարտիան կազմակերպական ու քաղաքական
հսկայական աշխատանք ծավալեց գյուղատնտեսության շեշտակի վերելքի
ծրագիրը կենսագործելու համար։ Պարտիան լուծեց սոցիալիստական գյու-
ղատնտեսության զարգացման մի շարք կարևորագույն հարցեր. գյուղատըն-
տեսական մթերքների արտադրության ավելացման գործում վերականգնվեց
կոլտնտեսականների, գյուղի բոլոր աշխատավորների նյութական շահագըր-
գըռվածության սկզբունքը, որը նպաստեց կոլտնտեսային մասսաների աշ-
խատանքային ակտիվության բարձրացմանը, աշխատանքի արտադրողակա-
նության բարձրացմանը։ Կոլտնտեսությունները և սովետական տնտեսու-
թյունները ամրապնդվեցին ղեկավար կադրերով, ինչպես նաև գյուղատնտե-
սության մասնագետներով. գյուղատնտեսությունը կարճ ժամանակամիջոցում
ստացավ հարյուր հազարավոր տրակտորներ, կոմբայններ, զանազան գյու-
ղատնտեսական մեքենաներ ու գործիքներ. պետությունը հսկայական ներ-
դրումներ կատարեց գյուղատնտեսության մեջ։ Կիրառվեց պլանավորման
նոր կարգ, որը հնարավորություն տվեց լիակատար կերպով օգտագործելու
կոլտնտեսային արտադրության հարուստ միջոցները, գործի դնելու գյուղա-
տնտեսության նորանոր ռեզերվներ, ծավալելու կոլտնտեսականների նախա-
ձեռնությունը։

Պարտիայի կոչով սովետական մարդիկ ձեռնամուխ եղան և յուրացրին
36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր, որ վճռական նշանակություն
ունեցավ մեր երկրում հացահատիկի արտադրությունն աննախընթաց չափով
ավելացնելու, դրանով իսկ ամբողջ գյուղատնտեսության վերելքն ապահո-
վելու գործում։

Վերջին հնգամյակում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, զգալի-
րեն ավելացան գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրությունը և
մթերումները, որի շնորհիվ բարձրացավ սովետական մարդկանց կենսամա-
կարդակը։ Հացահատիկի համախառն բերքն այս տարի կազմեց 8,5 մի-
լիարդ փութ, որը 69 տոկոսով ավելի է 1953 թվականի եղածից։ Գերակատար-
վեց հացամթերումների պլանը։ 1958 թվականին, 1953 թվականի համեմա-
տությամբ, հացահատիկի մթերումները ավելացան 91 տոկոսով։ Եթե գյու-
ղատնտեսության համախառն արտադրանքը 1949 — 1953 թվականներին
տարեկան միջին հաշվով կազմում էր 300 միլիարդ ռուբլի, ապա 1954 —
1958 թվականներին կազմում է ավելի քան 400 միլիարդ ռուբլի։

Այս ամենը սովետական ժողովրդի անդուլ ստեղծագործական աշխա-
տանքի, Կոմունիստական պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմի-
տեի քաղաքական, կազմակերպչական վիթխարի գործունեության փայլուն
արդյունքն է։ Այժմ արդեն կայուն բազա է ստեղծված գյուղատնտեսության
հետագա ավելի արագ ու բազմակողմանի զարգացման, մեր երկրին անհրա-
ժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։



Ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված
վիթխարի հաջողությունների ֆոնի վրա հիմա ավելի ցայտուն է դառնում,
թե ինչպես պարտիայի Կենտկոմի կողմից ժամանակին մերկացված և ջախ-
ջախված Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի հա-
կապարտիական խումբը ձգտում էր մեր պարտիան շեղել նրա լենինյան
գծից, վիժեցնել ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի և պարտիայի
XX համագումարի որոշումների կենսագործումը։

Ժամանակը ցույց տվեց, որ այդ հակապարտիական խմբի մասնակիցները
վերջնականապես սնանկ դուրս եկան։ Այժմ ավելի պարզ է դառնում, թե
նրանք որքան էին կտրվել կյանքից, պարտիայից և ժողովրդից, թե ինչպես
քաղաքական բոլոր կարևոր հարցերում հանդես էին գալիս որպես աղանդա-
վորներ և դոգմատիկներ, տիրացուական, քարացած մոտեցում էին ցուցա-
բերում մարքսիզմ-լենինիզմի հանդեպ։ Հակապարտիական խմբի մասնակից-
ները կառչել էին աշխատանքի հին, իրենց դարն ապրած ձևերին ու մեթոդ-
ներին։ Կտրված լինելով կյանքից, նրանք չըմբռնեցին և սխալ գնահատեցին
սովետական սոցիալիստական իրականության նոր իրադարձությունները։
Կորցնելով հավատը մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ,
նրանք ցանկանում էին արգելակել այն նորը, որը մշակել և իրագործում է
պարտիայի Կենտկոմի կոլեկտիվ ղեկավարությունը։ Նրանք դեմ էին խոպան
հողերի յուրացմանը, գյուղատնտեսության պլանավորման նոր կարգին,
փորձում էին խափանել առաջավոր կոլտնտեսությունների և սովետական
տնտեսությունների սկսած հայրենասիրական շարժումը, որ ծավալվել է
բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրու-
թյամբ առաջիկա տարիներին ԱՄՆ-ին հասնելու համար, հանդես էին գալիս
բանվորների և ծառայողների տնտեսությունները մսի, կաթի, կարտոֆիլի և
գյուղատնտեսական մյուս մթերքների պարտադիր հանձնումներից ազա-
տելու դեմ։

Պարտիան և ժողովուրդը դատապարտեցին այդ ֆրակցիոն պառակտիչ
խումբը, որի ջախջախումն էլ ավելի կոփեց մեր պարտիան, սովետական ժո-
ղովրդին էլ ավելի համախմբեց հարազատ պարտիայի և նրա լենինյան
Կենտրոնական Կոմիտեի շուրջը։

Կոմունիստական պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի
կողմից գյուղատնտեսության զարգացման բնագավառում կատարած բեղմ-
նավոր աշխատանքի պտուղներն ակնհայտ են Սովետական Միության եղ-
բայրական բոլոր ռեսպուբլիկաներում, այդ թվում և Սովետական Հայաս-
տանում։

Հետևողականորեն կենսագործելով ՍՄԿՊ Կենտկոմի որոշումները, մեր
ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պարտիական կազմա-
կերպությունների ղեկավարությամբ ձեռք են բերել նշանակալի հաջողու-
թյուններ։ Սեպտեմբերյան պլենումից հետո ընկած ժամանակամիջոցը մեր
ռեսպուբլիկայի համար բնութագրվում է կոլտնտեսությունների և սովետական
տնտեսությունների համախառն եկամուտների աճմամբ, գյուղատնտեսական
կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության
բարձրացմամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտների ավելաց-
մամբ և կոլտնտեսային գյուղացիության բարեկեցության զգալի աճով։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովետական տնտեսություններն

այս տարի գերակատարեցին պետությանը հացահատիկ, միս, կաթ, բուրդ,
շաքարի ճակնդեղ վաճառելու պլանները: Հատկապես խոշոր հաջողություն-
ների հասան բամբակագործները, որոնք պատվով կատարեցին Կրեմլում՝
բամբակագործների համամիութենական խորհրդակցությունում ստանձնած
սոցիալիստական պարտավորությունները և պլանից ավելի պետությանը վա-
ճառեցին 21 հազար ցենտներ բամբակ: Գյուղատնտեսության բնագավառում
ձեռք բերած հաջողությունների համար ռեսպուբլիկայի աշխատավորները ար-
ժանացան ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի շնորհակալու-
թյանը:

ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը հանրագումարի բերելով
գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերված հոյակապ հաջողություն-
ները, մշակեց մեր երկրում գյուղատնտեսական մթերքների հետագա ար-
տադրության ավելացման կոնկրետ խնդիրները և դրանց ուղիները:

Պլենումն այսուհետև ևս գյուղատնտեսության զարգացման կարևորա-
գույն խնդիրը համարեց հացահատիկի արտադրության ավելացումն այն հաշ-
վով, որ առաջիկա յոթ տարում հացահատիկի բերքը հասնի 10 — 11 մի-
լիարդ փթի. այդ ավելացման գլխավոր աղբյուրը հացահատիկային կուլտու-
րաների բերքատվության բարձրացումն է: Ելնելով դրանից՝ պլենումը պա-
հանջեց առաջիկա յոթնամյակում հացահատիկային կուլտուրաների բերքա-
տվությունը բարձրացնել միջին հաշվով հեկտարից 3 — 4 ցենտներով: Պլե-
նումի որոշման մեջ ասված է, որ կոլտնտեսությունները և սովետական տըն-
տեսությունները պետք է կայուն և բարձր բերքի հասնեն հողագործության
ճիշտ սիստեմ մտցնելու հիման վրա՝ ելնելով բնատնտեսական գոտիների և
յուրաքանչյուր տնտեսության առանձնահատկություններից, գյուղատնտեսու-
թյան արտադրության հետագա մասնագիտացման և ավելի լավ տեղաբաշխ-
ման, մոլախոտերի, գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և
հիվանդությունների դեմ վճռական պայքարի, գիտության նվաճումները և
առաջավոր փորձը լայնորեն արմատավորելու հիման վրա: Հացահատիկի
բերքատվության բարձրացման և համախառն բերքի ավելացման վճռական
պայմանը գյուղատնտեսական աշխատանքների կատարման ժամկետների
խստիվ պահպանումն է և այդ աշխատանքների բարձր որակը: Պահանջվում
է հացահատիկային կուլտուրաների գարնանացանը կատարել սեղմ ժամկե-
տում, բերքահավաքը՝ 10 — 12 օրում, մտցնել ճիշտ ցանքաշրջանառություն,
բարելավել սերմաբուծության գործը, օրգանական պարարտանյութերի կու-
տակումը և նրա ճիշտ օգտագործումը:

Կենտկոմի պլենումի որոշման մեջ խնդիր է դրված մեծ չափով ավելաց-
նել տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի և մրգերի ար-
տադրությունը՝ բնակչությանը սննդամթերքներով, իսկ արդյունաբերությունը՝
հումքով ավելի լրիվ բավարարելու համար: Պահանջվում է բանջարեղենի
արտադրությունը հասցնել բնակչության պահանջմունքները լրիվ բավարարող
չափերի, մրգերի ու հատապտուղների արտադրությունն ավելացնել առնը-
վազն 2 անգամ և խաղողինը՝ 4 անգամ: Շաքարի ճակնդեղի, բամբակի ար-
տադրության հետագա ավելացումը պետք է ընթանա գլխավորապես այդ
կուլտուրաների բերքատվության բարձրացման, ցանքատարածությունների
ընդարձակման, եղած ոռոգելի հողերի ճիշտ օգտագործման հաշվին: Պետք է



միջոցներ ձեռք առնել, որպեսզի բերքատվության բարձրացման հետ միա-
սին նվազեն արտադրական ծախսերը:

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումում բացա-
հայտվեցին և լուրջ քննադատության ենթարկվեցին հանրային անասնապա-
հության զարգացման թերությունները: Գյուղատնտեսության համար կենսա-
կան նշանակություն ունեցող այդ ճյուղը երկար ժամանակ բարձիթողի վի-
ճակում էր, որի հետևանքով չէր բավարարվում երկրում կաթի, յուղի, մսի և
անասնաբուծական մյուս մթերքների պահանջը: Պարտիան և կառավարու-
թյունը մշակեցին և իրագործեցին միջոցառումներ, որոնք բարձրացրին
անասնաբուծությունը: Դրա շնորհիվ մսի արտադրությունը սպանդանոցային
քաշով 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացավ 2,1
միլիոն տոննայով, կաթինը՝ 21,3 միլիոն տոննայով, բրդինը՝ 86 հազար
տոննայով, ձվինը՝ 7,4 միլիարդ հատով: 1958 թվականին խոշոր եղջերավոր
անասունների գլխաքանակը, 1953 թվականի համեմատությամբ, աճել է 24
տոկոսով, այդ թվում կովերինը՝ 28 տոկոսով, խոզերինը՝ 41 տոկոսով, ոչ-
խարներինը՝ 29 տոկոսով:

Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշման մեջ ընդգծված է անասնա-
բուծական մթերքների և, ամենից առաջ, մսի արտադրության ավելացման
կարևորությունը: Կենտկոմի պլենումը առաջիկա յոթնամյակում անասնաբու-
ծության ասպարեզում գլխավոր խնդիրը համարում է անասունների ու թռչ-
չունների գլխաքանակի խիստ ավելացումը և անասնաբուծության մթերատը-
վության հետագա բարձրացումն այն հաշվով, որ 1965 թ. մսի արտադրությունը
սպանդանոցային քաշով հասնի առնվազն 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100 —
105 միլիոն տոննայի, բրդինը՝ մոտավորապես 548 հազար տոննայի և ձվինը՝
37 միլիարդ հատի: Կենտկոմի պլենումը նշում է, որ մսի արտադրության ավե-
լացումը առաջնահերթ նշանակություն ունի: Մարզերի, շրջանների, կոլտնտե-
սությունների ու սովետական տնտեսությունների հաջողություններն ամե-
նից առաջ պետք է գնահատել անասնաբուծության այդ կարևորագույն ար-
տադրանքի արտադրության մակարդակով: Կոլտնտեսություններում և սովե-
տական տնտեսություններում անասնաբուծության զարգացման հիմնական
ցուցանիշը պետք է լինի անասունների, հատկապես կովերի խտությունը 100
հեկտար հողի դիմաց:

Պլենումը կարևոր խնդիր համարեց անասնապահության կերի բազայի
ամրապնդումը, առաջին հերթին՝ եգիպտացորենի ցանքատարածությունների
ընդարձակման և նրա արտադրության ավելացման միջոցով: Պլենումը պա-
հանջեց, որ տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օր-
գանները, կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները պայքար
ծավալեն հեկտարից 500 — 600 ցենտներ, իսկ անբավարար չափով խոնավ
շրջաններում՝ մոտավորապես 300 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգ-
ված (ցողուն ու կողրեր) ստանալու համար, որը բոլոր կոլտնտեսություննե-
րին ու սովետական տնտեսություններին կբավարարի առատ կերով: Եգիպ-
տացորենի առատ բերք աճեցնելու հետ միասին պետք է լուրջ ուշադրություն
հատկացնել նաև կերային մյուս կուլտուրաների արտադրության ավելաց-
մանը: Բնակչության մեկ շնչին ընկնող մսի և անասնապահական մյուս
մթերքների արտադրությամբ շատ կարճ ժամանակում ԱՄՆ-ին հասնելու նը-
պատակով ծավալված շարժման ընդարձակումը և դրա առաջավորների խրա-

խուսումը պետք է գտնվի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Կենտրոնական Կոմիտեի պլենումը, նշելով անցած հինգ տարիներում սովետական տնտեսությունների ամրապնդման և զարգացման ուղղությամբ կատարված մեծ աշխատանքները, խնդիր դրեց ձեռնարկել անհրաժեշտ միջոցներ՝ սովետական տնտեսությունների աշխատանքն ավելի բարձր մակարդակի հասցնելու համար, որպեսզի նրանք ամենակարճ ժամանակում դառնան օրինակելի տնտեսություններ, ավելի լավ օգտագործեն հողն ու տեխնիկան, հանդիսանան խոշոր սոցիալիստական գյուղատնտեսական արտադրությունը ճիշտ վարելու օրինակ, ապահովեն աշխատանքի արտադրողականության զգալի աճ և արտադրանքի ինքնարժեքի իջեցում։

Սեպտեմբերյան պլենումից հետո անցած հինգ տարիների ընթացքում գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը սովետական ամբողջ ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման կարևոր գործոնն է։ Այժմ քաղաքի աշխատավորները ստանում են ավելի շատ սննդամթերք. ավելացել է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, ավելացել են կոլտնտեսությունների եկամուտները, աճել են անբաժանելի ֆոնդերը և դրա հիման վրա բարձրացել է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։ Եթե 1952 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտները կազմում էին 42,8 միլիարդ ռուբլի, ապա 1957 թվականին դրանք աճեցին և հասան 95,2 միլիարդ ռուբլու։ Արտադրողական ուժերի զարգացման, կոլտնտեսային սոցիալիստական սեփականության ամրապնդման հետ միասին փոխվում են ոչ միայն գյուղական կյանքի տնտեսական, այլև կուլտուրական պայմանները, փոխվում է կոլտնտեսային գյուղի դեմքը։ Վերջին հինգ տարում մեծ ծավալ է ստացել բնակարանային շինարարությունը. գյուղում կառուցվել և կառուցվում են մանկամսուրներ, մանկապարտեզներ, դպրոցներ, հիվանդանոցներ և կուլտուր-կենցաղային այլ հիմնարկներ։ Պլենումը խնդիր դրեց առաջիկայում ավելի լայնորեն ծավալել կուլտուրական շինարարությունը գյուղում։

Պլենումի որոշման մեջ նշված է, որ կոլտնտեսային կարգի կենսական ուժի, ամրության ու զարգացման, կոլտնտեսության հանրային հարստության աճի, կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման կարևորագույն աղբյուրը կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերն են։ Անբաժանելի ֆոնդերի ավելացումը, դրանց ճիշտ օգտագործումը, կոլտնտեսային սեփականության զարգացումը, նրա աստիճանական մերձեցումն ու հետագա լրիվ միաձուլումը համաժողովրդական սեփականության հետ, համապատասխանում են մեր ժողովրդի շահերին, կոմունիստական հասարակարգի կառուցման շահերին։ Պլենումը պարտավորեցրեց պարտիական կազմակերպություններին, սովետական ու գյուղական օրգաններին՝ ամեն կերպ նպաստել միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացմանն ու ընդլայնմանը, խրախուսել կոլտնտեսությունների նախաձեռնությունը և նրանց օգնել էլեկտրակայանների, ոռոգման մելիորատիվ կառուցվածքների, ճանապարհների ու վերամշակման ձեռնարկությունների համատեղ շինարարություն կազմակերպելու, շինանյութերի արտադրության միջկոլտնտեսային կազմակերպություններ ստեղծելու գործում։



Գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճն առաջիկա յոթնամյակում պետք է ապահովվի գյուղատնտեսության հետագա մեքենայացման և էլեկտրիֆիկացման բազայի վրա, աշխատանքի արտադրողականության բարձրացման միջոցով։ Գլխավորը աշխատանքի նվազագույն ծախսումներով առավել մեծ քանակությամբ մթերքներ ստանալն է։ Կոլտնտեսությունների եկամուտների աճը պետք է ապահովվի ոչ թե մթերքների գների բարձրացման հաշվին, այլ մթերքների արտադրությունն ընդարձակելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, յուրաքանչյուր աշխատողին ընկնող մթերքների քանակն ավելացնելու հաշվին։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը միահամուռ հավանություն տվեց Ն. Ս. Խրուշչովի զեկուցմանը, պարտիական կազմակերպություններին առաջարկեց բոլոր ուժերը մոբիլիզացնել կոմունիստական շինարարության տվյալ փուլում գյուղատնտեսության հետագա վերելքի վերաբերյալ պարտիայի մշակած միջոցառումները կենսագործելու համար։ Կենտկոմի պլենումը պարտիական կազմակերպություններին, սովետական ու գյուղական օրգաններին ցուցում տվեց յուրաքանչյուր կոլտնտեսությունում ու սովետական տնտեսությունում կազմակերպել առաջիկա յոթնամյակում գյուղատնտեսության զարգացման պլանների մշակումը։ Լուրջ ուշադրություն պետք է հատկացնել աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումներով գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա խիստ ավելացման համար ռեզերվներ հայտաբերելուն և դրանք ավելի լրիվ օգտագործելուն։ Պլանների մշակման գործում պետք է լայնորեն ներգրավել կոլտնտեսականներին, սովետական տնտեսությունների բանվորներին, գյուղատնտեսության մասնագետներին։

Կենտրոնական Կոմիտեի պլենումը գյուղատնտեսության հետագա վերելքի կարևորագույն պայմանը համարեց գյուղական սկզբնական պարտիական կազմակերպությունների դերի բարձրացումը, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում արտադրական պլանների կատարման գործում նրանց ազդեցության ուժեղացումը, մասսաների մեջ տարվող քաղաքական ու կազմակերպական աշխատանքի մակարդակի բարձրացումը, արտադրության կազմակերպման, տնտեսության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման հարցերի լուծման գործին ավելի ակտիվորեն մասնակցելը։

Առաջադրված խնդիրների կատարման հաջողությունը կախված է նաև նրանից, թե մեր կազմակերպությունները, ղեկավար կադրերը ինչպես կգլխավորեն յոթնամյա պլանի առաջադրանքների կատարման համաժողովրդական պայքարը, ինչպիսի օգնություն ցույց կտան կոլտնտեսականներին և սովետական տնտեսության բանվորներին՝ նրանց հայրենանվեր աշխատանքում։ Կենտկոմի պլենումը պարտիական, սովետական, արհմիութենական կազմակերպություններին կոչ արեց՝ գլխավորել մասսաների աճող ակտիվությունը, գյուղատնտեսական աշխատողների մեջ դաստիարակել աշխատանքում առաջ ընթանալու, նոր բարձր ցուցանիշներ ձեռք բերելու մշտական ձգտում, է՛լ ավելի լայնորեն ծավալելու սոցիալիստական մրցությունը՝ առաջադրված խնդիրները պատվով կատարելու համար։

Պլենումը պարտիական կազմակերպություններից պահանջեց մեծ հոգատարություն ցուցաբերել գյուղական կոմերիտական կազմակերպությունների նկատմամբ, նրանց ավելի համարձակորեն ներգրավել տնտեսական և կուլ-

տուրական շինարարության կարևորագույն խնդիրների լուծման գործում, օգնել նրանց՝ տիրապետելու գյուղատնտեսական տեխնիկայի առաջավոր փորձի նվաճումներին, ամեն կերպ զարգացնելու մրցությունը, խրախուսել կոմերիտմիության նախաձեռնությամբ առաջացած հայրենասիրական շարժումը՝ կոմունիստական աշխատանքային բրիգադներ ստեղծելու գործում։

Կենտկոմի պլենումը առանձնակի ընդգծեց, որ գյուղատնտեսության զարգացման համար վճռական նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության բարձրացումը։ Պլենումի որոշման մեջ այս ուղղությամբ ասված է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևոր պայմաններից մեկը կոլտնտեսություններում արտադրության, նորմավորման, աշխատանքի հաշվառման ու վարձատրության ճիշտ կազմակերպումն է։ Ներկայումս կոլտնտեսություններում արտադրանքի մեկ միավորի վրա աշխատանքային ծախսումների չափանիշ է ծառայում աշխօրը, չնայած որ այն չի արտացոլում արտադրանքի միավորի վրա կոլտնտեսականների ծախսած աշխատանքի կամ ժամանակի կոնկրետ քանակությունը։ Ուստի շատ կոլտնտեսություններ աշխատանքը աշխօրերով գնահատելուց անցնում են աշխատանքի հաշվառման ու վարձատրության նոր, ավելի առաջադիմական ձևերի, որոնց նպատակն է է՛լ ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմամբ։ Ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի ու շրջանների պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները պետք է ամեն կերպ պաշտպանեն կոլտնտեսությունների նախաձեռնությունը այդ գործում, խոր կերպով ուսումնասիրեն նրանց փորձը, այն ընդհանրացնեն և լայն օգտագործման համար կոլտնտեսություններին հանձնարարեն այն ամենը, ինչ լավագույնն է։

Մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների առջև դրված են լուրջ և պատասխանատու խնդիրներ. գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և հատկապես, մսի արտադրությունը մեծ չափերով ավելացնելու գործում լարված աշխատանք է պահանջվում։ Մեր խնդիրն է՝ մոբիլիզացնել ռեսպուբլիկայի աշխատավորության և, հատկապես, գյուղատնտեսության բոլոր աշխատողների ջանքերը կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների հարուստ ռեզերվներն օգտագործելու, գյուղատնտեսական արտադրության նոր հզոր վերելքի վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի մշակած հոյակապ ծրագիրը հաջողությամբ իրականացնելու համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## ԳԼՈՒԽ IV

## ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ՌԵԱԿՑԻԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ (1907—1910 թվականներ)

### 1. ՍՏՈԼԻՊԻՆՅԱՆ ՌԵԱԿՑԻԱՆ։

1907 թվականի հունիսի 3-ին ցրելով Պետական դուման, ցարիզմը հաղթանակ էր տանում։ Երկիրը սեղմված էր սեհարյուրյակային տեռորի մամլակներում։ Ցարական կառավարությունը անողոքաբար դատաստան էր տեսնում բանվորների ու գյուղացիների հետ։ Ամենուրեք մոլեգնում էին պատժիչ ջոկատներն ու ռազմա-դաշտային դատարանները։ Նրանք գազանաբար դատաստան էին տեսնում բոլոր նրանց հետ, ում կասկածում էին ռևոլյուցիոն շարժմանը պատկանելու մեջ։ Ռևոլյուցիոն պայքարի հազարավոր մասնակիցներ մահապատժի ենթարկվեցին։ Տասնյակ հազարավորները դատապարտվեցին տաժանակրության։ Բանտերը լեփ-լեցուն էին։ Շահագործողները դաժանորեն վրեժ էին լուծում աշխատավորներից, որոնք համարձակվել էին ռևոլյուցիայի ելնել։ Ցարական մինիստր Ստոլիպինը ստացավ «կախող» մականունը, իսկ կախաղանները, որոնցով նա ծածկեց երկիրը, ժողովուրդը մկրտեց «ստոլիպինյան փողկապներ» անունով։

Ինքնակալությունը ամենամեծ դաժանությամբ հարձակվեց բանվոր դասակարգի վրա։ Ոստիկանությունն առանձնապես վայրագություններ էր անում բանվորական կազմակերպությունների նկատմամբ։ 1906—1910 թվականների ընթացքում փակեցին 497 արհմիություն, մերժեցին գրանցել 604 արհմիությունների։ Արհմիությունների անդամների թիվը 1907 թվականի սկզբներին եղած 245 հազարից 1909 թվականի վերջերին իջավ 13 հազարի։ Ռևոլյուցիոն շարժման դեմ պայքարելու համար ցարական պահնորդական բաժանմունքը ուժգին թափով պրովոկատորներ էր ուղարկում, որոնք լրտեսում էին ռևոլյուցիոն կազմակերպությունների ներսում և մատնում ռևոլյուցիոներներին։

Բանվոր դասակարգը տուժում էր ո՛չ միայն ոստիկանական հետապնդումներից, այլև կապիտալի հարձակումից։ Դրանք արդյունաբերության լճացման և գործազրկության աճման տարիներ էին. միայն 1909 թվականից որոշ տնտեսական աշխուժացում նշմարվեց։ Ձեռնարկատերերի միությունները կատաղի պայքար էին մղում բանվորների դեմ։ Ֆաբրիկանտներն ու գործարանատերերը հայտարարում էին լոկաուտներ՝ փակում էին ձեռնարկությունները և մասսայաբար արձակում բանվորներին։ Նրանք ակտիվ բանվորներին մտցնում

էին «սև ցուցակների» մեջ, որոնց հիման վրա նրանց աշխատանքի չէին ընդունում ձեռնարկատերերի միության մեջ մտնող և ոչ մի ձեռնարկությունում։ Նորից վերականգնվեցին նախառևոլյուցիոն գործարանային կարգերից շատերը, երկարացվեց աշխատանքային օրը, իջեցվեց աշխատավարձը, ամենուրեք կիրառվում էին տուգանքներ։ «Այժմ եկել է մեր ժամանակը, և դրության տերերը մենք ենք»—լկտիաբար հայտարարում էին բանվորներին ձեռնարկատերերը։

Սակայն ամբողջովին վերադառնալ նախառևոլյուցիոն կարգերին ցարիզմը չէր կարող։ Ռուսաստանն արդեն այն չէր, ինչ 1905 թվականից առաջ։ Բոլոր դասակարգերն անցել էին ռևոլյուցիայի միջով, և նրանցից յուրաքանչյուրը ռևոլյուցիայից քաղել էր իր դասերը։

Ցարիզմը, ճորտատեր-կալվածատերերը հասկացան Ռուսաստանի կապիտալիստական զարգացմանը հարմարվելու անհրաժեշտությունը, որպեսզի պահպանեն իրենց իշխանությունն ու եկամուտները և իրենց համար դաշնակիցներ էին որոնում քաղաքի ու գյուղի բուրժուազիայի մեջ։ Ուստի ցարիզմն սկսեց վարել նոր քաղաքականություն, որը ցարական կառավարության ղեկավար Ստոլիպինի անունով ստացավ ստոլիպինշչինա անունը։ Ստոլիպինշչինայի համար բնորոշ էին հունիսերեքյան քաղաքական ռեժիմը և ագրարային նոր քաղաքականությունը։

Պետական դուման ցարիզմին հարկավոր էր այն բանի համար, որ ամրապնդեր կալվածատերերի ու բուրժուազիայի հակառևոլյուցիոն դաշինքը և փորձեր խաբել բնակչության հետամնաց խավերին։ Բայց ցարական կառավարությանը հարկավոր էր հնազանդ դումա։ Այդ նպատակով հրատարակվեց նոր ընտրական օրենք, որն է՛լ ավելի կրճատեց բանվորների ու գյուղացիների իրավունքները։ Նոր օրենքով ընտրություններն այնպես կազմակերպվեցին, որ կալվածատերերն ու կապիտալիստներն իրենց կուրիաներում ընտրում էին բոլոր պատվիրակների երեք քառորդից ավելին, իսկ բանվորներն ու գյուղացիները՝ մեկ քառորդից էլ պակաս։ Այսպիսով, պատվիրակների նահանգային ժողովներում, որտեղ դեպուտատներ էին ընտրվում, իշխում էին կալվածատերերն ու կապիտալիստները։ Ճնշված ազգերի ներկայացուցչությունը խիստ կրճատվում էր. Միջին Ասիայի տեղական բնակչությունը բոլորովին զրկվում էր ընտրական իրավունքներից։ Լեհաստանի, Կովկասի և ազգային մյուս շրջանների դեպուտատների թիվը գրեթե երեք անգամ պակասեց։ Այլանդակ ընտրական օրենքը կառավարող շայկային ցանկալի արդյունքներ բերեց։ III Պետական դումայի դեպուտատների գրեթե կեսը կալվածատերեր էին։ Ցարական չինովնիկների ու հոգևորականության հետ միասին նրանք կազմում էին դումայի դեպուտատների երկու երրորդը։

Ցարիզմը փորձում էր յուրովի լուծել նաև հողի հարցը, բայց այնպես լուծել, որ հող տրվի ոչ բոլոր գյուղացիներին և ոչ կալվածատերերի հաշվին։ Կառավարող վերնախավը, որին ռևոլյուցիան ստիպեց հրաժարվել «հայր ցարի» նկատմամբ գյուղացու նվիրվածության ամեն մի հույսից, սկսեց իր համար հենարան ստեղծել հանձին գյուղական բուրժուազիայի՝ կուլակների։ Դա իր արտահայտությունը գտավ Ստոլիպինի ագրարային քաղաքականության մեջ, որը ամրապնդվեց 1906 թվականի նոյեմբերի 9-ի հրամանագրում և 1910 թվականի հունիսի 14-ի օրենքում։

Ցարական նոր ագրարային օրենքները պաշտպանում էին կալվածատերերի և կուլակների շահերը։ Կալվածատիրական հողերը մնում էին լիովին անձեռնմխելի։ Յուրաքանչյուր գյուղացի իրավունք ստացավ դուրս գալ համայնքից և իր հողաբաժինը դարձնել անհատական սեփականություն։ Համայնքից առանձնացողներին հող էր տրվում մի տեղում (խուտոր կամ օտրուբ)։ Համայնքը բռնի քայքայման էր ենթարկվում այնպիսի ձևով, որ լավագույն գյուղացիական հողերը հատկացվում էին կուլակներին։ Զուր չէ, որ գյուղացիները հողաշինարարական հանձնաժողովները դիպուկ կերպով անվանում էին «հողակողոպտչական», իսկ բուն ստոլիպինյան հողաշինարարությունը՝ «հողաքայքայում»։

9 տարվա ընթացքում (1907—1915 թվականներ) մոտ 2,5 միլիոն տնատերեր դուրս եկան համայնքից և անհատական սեփականություն դարձրին գրեթե 17 միլիոն դեսյատին հող։ Համայնքից առանձնանալով շահագրգռված էր ամենից առաջ գյուղական բուրժուազիան։ Կուլակները ձգտում էին այդ ճանապարհով ամրապնդել իրենց տնտեսությունը։ Համայնքից դուրս էր գալիս նաև չքավորների, առանձնապես վաստակի համար քաղաքում գտնվողների մի մասը, որպեսզի վաճառի իր հողաբաժինը և վերջնականապես կապը խզի գյուղի հետ։ Կուլակները Գյուղացիական բանկի օգնությամբ հնարավորություն ստացան էժան գնով գնել չքավորների հողաբաժինները։ Գյուղացիների հիմնական մասսան համայնքից առանձնանալը կարիքից և ստրկությունից փրկություն չէր համարում։ Չնայած ցարական իշխանությունների գործադրած հսկայական ճնշմանը, ընդհանուր առմամբ եվրոպական Ռուսաստանում համայնքից դուրս եկավ գյուղացիական բոլոր ծխերի միայն մոտ մեկ քառորդը։

Ստոլիպինյան ագրարային քաղաքականության հետևանքը եղավ գյուղացիների հետագա քայքայումը և դասակարգային հակասությունների սրումը գյուղում։ Կարիքից ճզմված գյուղացիական տնտեսությունը մնում էր հետամնաց։ Գյուղացին առաջվա նման չարչարվում էր վատ և ուժասպառ չնչին հողակտորի վրա, օգտագործելով արտադրության հին, պրիմիտիվ գործիքներն ու եղանակները։ 1910 թվականին գյուղատնտեսության մեջ գործածվում էր գրեթե 8 միլիոն փայտե արոր և 3 միլիոն փայտե գութան։

1861 թվականից հետո ստոլիպինշչինան երկրորդ քայլն էր կիսաճորտատիրական ցարիզմը բուրժուական միապետության վերածվելու ճանապարհին։ Դա, ինչպես գրում էր Լենինը, վերջին փականը բացելու մի փորձ էր՝ ռևոլյուցիան կանխելու, կալվածատեր-ճորտատերերի իշխանությունը, սեփականությունն ու արտոնությունները պահպանելու համար։

Բայց Ստոլիպինին չհաջողվեց ցարիզմը բուրժուական միապետության վերածել։ Իրականում ցարական ինքնակալությունը ճորտատեր-կալվածատերերի դիկտատուրան էր, որոնք Ռուսաստանը կառավարում էին խոշոր բուրժուազիայի հետ սերտորեն դաշնակցած։ Ստոլիպինյան ռեֆորմի հետևանքով գյուղացիության շերտավորման ուղղությամբ գյուղում արված առաջընթաց քայլը թեպետև ուժեղացրեց գյուղացիության ներսում չքավորության ու կուլակության միջև տեղի ունեցող պայքարը, սակայն հիմնական հակասությունը առաջվա նման ամբողջ գյուղացիության պայքարն էր ընդդեմ կալվածատերերի։ Ցարիզմն ամբողջ ժողովրդի գլխավոր թշնամին էր։

Հետռևոլյուցիոն Ռուսաստանում դասակարգերի պայքարն իր արտահայտությունը գտավ տարբեր պարտիաների դիրքավորման մեջ III Պետական Դումայում։ Դումայում կար ընդամենը 429 դեպուտատ, որոնք ըստ պարտիա-

ների բաշխվում էին հետևյալ կերպ. աջեր՝ 144, օկտյաբրիստներ՝ 148, կադետներ և նրանց մոտիկ խմբերի անդամներ՝ 104, տրուդովիկներ՝ 14, սոցիալ-դեմոկրատներ՝ 19։

Ճորտատեր-կալվածատերերի շահերը պաշտպանում էին, այսպես կոչված, աջերը։ Դրանք բանվորների ու գյուղացիների նկատմամբ արյունալի դատաստանի, հրեական ջարդերի, ոչ-ռուս ժողովուրդների հալածանքի, ռևոլյուցիոներների ու առաջադեմ գործիչների սպանությունների կազմակերպիչներն էին։ Ժողովուրդն արդարացի կերպով աջերին անվանեց սևհարյուրյակայիններ։

Բուրժուազիան հակառևոլյուցիոն դիրք էր գրավում։ Նա հազարավոր տնտեսական թելերով կապված էր կալվածատերերի ու ցարական բյուրոկրատիայի հետ և վախեցել էր ռևոլյուցիայի մեջ պրոլետարիատի ղեկավար դերից։ Բուրժուազիային ներկայացնում էին օկտյաբրիստների և կադետների պարտիաները։ Օկտյաբրիստները նախանձախնդիր կերպով պաշտպանում էին Ստոլիպինի քաղաքականությունը. նրանք, ինչպես և աջերը, կառավարական պարտիա էին։ Կադետները հունիսերեքյան դումայում օպոզիցիայի դեր էին խաղում, երբեմն հանդես էին գալիս ցարական կառավարության առանձին միջոցառումների քննադատությամբ։ Կադետները փորձում էին խաբեության միջոցով մասսաներին ներթարկել իրենց գաղափարական-քաղաքական ազդեցությանը։ Իրականում կադետները ռեակցիայի առաջ սողացող հակառևոլյուցիոն լիբերալներ էին։ Բոլոր հիմնական քաղաքական հարցերում — բյուջետային քաղաքականություն, հատկացումներ նոր պատերազմի նախապատրաստման համար, գյուղացիներին քայքայող ագրարային քաղաքականություն, ռևոլյուցիան խեղդելու միջոցառումներ — կադետները Պետական դումայում պաշտպանում էին ցարական կառավարության առաջարկները։

Մի խումբ աջքի ընկնող կադետ գրողների կողմից 1909 թվականին հրատարակված «Վեխի» ժողովածուում նրանք ուղղակի հայտարարում էին, թե հարկավոր է «օրհնել այս իշխանությունը, որը միակն է, որ իր սվիններով ու բանտերով դեռ պաշտպանում է մեզ ժողովրդի ցասումից»։

Գյուղացիությունը ձգտում էր ոչնչացնել կալվածատերերին ու կալվածատիրական հողատիրությունը։ Նա շատ բան էր սովորել ռևոլյուցիայից, բայց դեռ լրիվ չէր հասկացել, որ հաղթանակը հնարավոր է միայն պրոլետարիատի ղեկավարությամբ, որ, այսպես կոչված, «ժողովրդական ազատության պարտիան» ժողովրդական ազատության դավաճանների պարտիա է։ Գյուղացիական մասսաներին դումայում ներկայացնում էին մանրբուրժուական դեմոկրատները՝ տրուդովիկները։ Տրուդովիկները թույլ էին կազմակերպված, բավականաչափ գիտակից չէին, քաղաքականության մեջ ծայր աստիճան անկայուն էին։ Մանր տնտեսատերերի դասակարգային դրությունը որոշում էր նրանց տատանումները կադետների և սոցիալ-դեմոկրատների միջև։

Բանվոր դասակարգին դումայում ներկայացնում էին սոցիալ-դեմոկրատները։ Նրանց մեջ կային բոլշևիկներ և մենշևիկներ։ Դումայում աշխատավորների հետևողական ու անհողդողդ պաշտպանները միայն բոլշևիկներն էին։ Դումայում, բանվոր դասակարգի պարտիայի խնդիրն էր, ինչպես գրում էր Լենինը, օգնել մանրբուրժուական թույլ դեմոկրատներին, հանել նրանց կադետների ազդեցության տակից. ցարական միապետության դեմ մղվող պայքարում համախմբել դեմոկրատիայի լագերը ոչ միայն ինքնակալության բա-



ցահայտ կողմնակիցների, այլև հակառևոլյուցիոն լիբերալների դեմ և դրանով իսկ ներգործել գյուղացիական մասսաների վրա։

Ռեակցիան արտահայտվում էր հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, գիտության, փիլիսոփայության, արվեստի մեջ։ Ցարիզմը կատաղի շովինիստական ագիտացիա էր մղում։ Ակտիվորեն էր հանդես գալիս մարտնչող տերտերականությունը։ Ինտելիգենցիայի շրջանում լայն տարածում ստացան հակառևոլյուցիոն տրամադրությունները, ռենեգատական գաղափարները, կրոնով հրապուրվելը։ Փորձում էին ժողովրդի հիշողությունից դուրս վանել ռևոլյուցիան։

Ռևոլյուցիայի պարտության և հակառևոլյուցիայի հաղթանակի հետ թուլացավ մասսաների պայքարը։ Խիստ ընկավ բանվորական շարժման ալիքը։ Գործադուլավորների թիվը 1907 թվականի 740 հազարից 1910 թվականին իջավ 46,5 հազարի։ Ժամանակավորապես հանդարտվեց սուր պայքարը գյուղում։ Զգացվում էր հոգնածություն մի քանի տարվա մեծագույն ռևոլյուցիոն լարումից հետո։ Ժամանակ էր հարկավոր, որ այդ հոգնածությունն անցներ։ Բայց բանվորներն ու գյուղացիները չէին մոռացել պայքարի հերոսական տարիները։ Խուլ խմորում էր տեղի ունենում մասսաների մեջ։ Ի պատասխան սևհարյուրյակային կառավարության ծաղր ու ծանակի և գործարանատերերի ճնշումների, բանվորներն ասում էին՝ «Սպասեցե՛ք, էլի կգա 1905 թվականը»։

## 2. ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ՊԱՐՏԻԱՅԻ ՀԱՄԱՐ, ԸՆԴԴԵՄ ԼԻԿՎԻԴԱՏՈՐՆԵՐԻ, ՕՏԶՈՎԻՍՏՆԵՐԻ ԵՎ ՏՐՈՑԿԻՍՏՆԵՐԻ։

Սևհարյուրյակային կալվածատերերի կառավարությունը մի առանձին դաժանությամբ հարձակվեց բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի վրա։ Սկսվեցին պարտիայի անդամների մասսայական ձերբակալություններ։ Ձերբակալվեցին Կենտրոնական Կոմիտեի մի շարք անդամներ։ Խեղդեցին բանվորական մամուլը։ Պարտիայի կենտրոնական օրգան «Սոցիալ-դեմոկրատ» թերթի լույսընծայումը հաջողվեց կարգավորել միայն 1909 թվականից։ Չկար մի տեղական կոմիտե, որը ոստիկանական ջախջախման չենթարկվեր։ Պետերբուրգի կոմիտեն այդ տարիների ընթացքում ձերբակալվեց տասնյակ տասն անգամ։ Աչքի ընկնող պարտիական շատ աշխատողներ գտնվում էին տաժանավայրերում, բանտերում ու աքսորավայրերում։ Մանրբուրժուական ինտելիգենտները փախչում էին պարտիայի շարքերից։ Պարտիական կազմակերպությունների թվական կազմը զգալիորեն կրճատվեց։ Պետերբուրգում 1907 թվականին կար պարտիայի գրեթե 8 հազար անդամ, իսկ 1908 թվականին՝ միայն մոտ 3 հազար, Եկատերինբուրգում պարտիայի անդամների թիվը 1070-ի փոխարեն դարձավ 250, Իվանովո-Վոզնեսենսկում 2 հազարից մնաց ոչ ավելի քան 600։ Թուլացան կապերը պարտիական կազմակերպությունների միջև։

Ռեակցիայի ժամանակաշրջանի ընդհատակը շատ ավելի ծանր էր նախառևոլյուցիոն ընդհատակից։ Այն ժամանակ պարտիական կազմակերպություններն աշխատում էին ռևոլյուցիայի հասունացման պայմաններում, այժմ՝ ռևոլյուցիայի պարտության իրադրության մեջ։ Մի բան էր հարձակվել, այլ բան էր՝ ստիպված լինել նահանջել։ Նահանջի պայմաններում հարկավոր են առանձին կայունություն ու տոկունություն։ ՌՍԴԲՊ կազմակերպական թուլաց-

*մանը միանում էր նրա շարքերում եղած գաղափարական լուրջ տարընթացությունը։ Ավելի ու ավելի խորն էր դառնում վիհը բոլշևիկների ու մենշևիկների միջև։*

*Մենշևիկները միանգամայն բարոյալքվեցին ռևոլյուցիայի պարտությունից։ Նրանք նահանջում էին խուճապով, ավելի ու ավելի բարձրաձայն հայտարարելով, թե հարկ էլ չկա մտածելու նոր ռևոլյուցիայի մասին։ Նրանք խայտառակ կերպով հրաժարվում էին պարտիայի ռևոլյուցիոն ծրագրից ու ռևոլյուցիոն լոզունգներից։ Նրանք բանվոր դասակարգին կոչ էին անում համաձայնության գալ բուրժուազիայի հետ, փաստորեն հաշտվել ստոլիպինյան սևհարյուրյակային ռեժիմի հետ, այսինքն՝ դավաճանում էին ոչ միայն սոցիալիզմին, այլև դեմոկրատիային։ Նրանք ձգտում էին լիկվիդացնել անլեգալ պարտիական կազմակերպությունները և դադարեցնել անլեգալ ռևոլյուցիոն աշխատանքը։ Մենշևիկները գործը տանում էին դեպի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի, ռևոլյուցիոն մարքսիզմի պարտիայի լիկվիդացումը։ Պարտիայի ծրագրից ու տակտիկայից, նրա ռևոլյուցիոն տրադիցիաներից հրաժարվելու գնով լիկվիդատորները ուզում էին գնել ցարական ոստիկանության թույլտվությունը լեգալ գոյության համար։ Ուստի միանգամայն տեղին նրանց անվանեցին «ստոլիպինյան բանվորական պարտիա»։*

*Մենշևիզմի այնպիսի առաջնորդներ, ինչպես Դանն ու Մարտովը, մանևրում էին, ջանալով թաքցնել իրենց լիկվիդատորությունը։ Նրանք սկսեցին արտասահմանում հրատարակել իրենց օրգանը՝ «Գոլոս սոցիալ-դեմոկրատա»-ն։ Ստացվեց աշխատանքի յուրահատուկ բաժանում. լիկվիդատորները Ռուսաստանում նստել էին լեգալ կազմակերպություններում և լսել անգամ չէին ուզում անլեգալ պարտիայի մասին, իսկ մենշևիկյան օրգանն արտասահմանում ամեն կերպ արդարացնում էր լիկվիդատորների հակապարտիական գործերը։*

*Բոլշևիկների մեջ գտնվող որոշ անկայուն տարրեր այդ ժամանակ ցուցաբերեցին վտանգավոր երերումներ։ Քողարկվելով ռևոլյուցիոն ֆրազով, նրանք հայտարարում էին, թե ռևոլյուցիոներ է միայն նա, ով բարիկադային կռվի կոչ է անում, թե ռևոլյուցիոներներին վայել չէ սևհարյուրյակային դումայում գտնվել։ Նրանք քարոզում էին, թե պարտիան պետք է հրաժարվի աշխատանքի լեգալ ձևերն օգտագործելուց, և առաջարկում էին սոցիալ-դեմոկրատական ֆրակցիան ետ կանչել* (ОТОЗВАТЬ) *դումայից։ Օտզովիստները, ինչպես նրանց անվանում էին, Ա. Ա. Բոգդանովի գլխավորությամբ ստեղծեցին իրենց առանձին խումբը, որը պայքար սկսեց Լենինի և լենինյան գծի դեմ։ Եթե լիկվիդատորներն ուղղակի էին առաջարկում վերացնել անլեգալ պարտիան, ապա օտզովիստները նրա գոյությանն սպառնում էին մյուս կողմից. հրաժարվելով մասսաների մեջ տարվող աշխատանքի լեգալ հնարավորություններն օգտագործելուց, նրանք խզում էին պարտիայի կապերը մասսաների հետ, իսկ առանց մասսաների հետ ունեցած կապի պարտիան կորցնում է իր ուժը, դառնում է աղանդավորական կազմակերպություն։ Ահա ինչու Լենինը գրում էր, թե օտզովիստները շուռ տված լիկվիդատորներ են։*

*Լիկվիդատորության և օտզովիզմի երևան գալն ուներ իր դասակարգային արմատները։ Ռևոլյուցիայի ժամանակ պարտիային հարեցին շատ մանրբուրժուական ուղեկիցներ։ Ռևոլյուցիայի պարտությունը տրոհում ու քայքայում առաջ բերեց մանր բուրժուազիայի մեջ։ Այս բոլորն իր արտացոլումը*



*գտավ պարտիայի մեջ։ Մենշևիկները հնազանդորեն գնում էին լիբերալ բուրժուազիայի հետևից։ Հակառևոլյուցիոն բուրժուական լիբերալիզմի ուղղակի ազդեցության տակ մենշևիկյան օպորտունիզմը վերածվեց լիկվիդատորության։ Թե՛ լիկվիդատորները, թե՛ օտզովիստները պրոլետարիատի և նրա պարտիայի մանրբուրժուական ուղեկիցներն էին, բուրժուազիայի գործակալությունը բանվորական շարժման մեջ։*

*Ռևոլյուցիայի պարտության և մասսաների հոգնածության պայմաններում գաղափարական երերումներն առանձնապես վնասակար էին, լուրջ վտանգ էին ներկայացնում մարքսիստական պարտիայի և բանվոր դասակարգի համար։ Լիկվիդատորները ցարիզմի առջև կապիտուլյացիայի ենթարկվելու իդեոլոգիան էին պատվաստում։ Օտզովիստները պուտչի, ավանտյուրիստական գործողությունների էին դրդում։ Թե՛ մեկը, թե՛ մյուսներն անվստահություն էին սերմանում մասսաների ռևոլյուցիոն հնարավորությունների, բանվոր դասակարգի հաղթանակի նկատմամբ։ Նրանք ոտնձգություն էին անում պարտիայի բուն իսկ գոյության դեմ։*

*Պարտիայի համար այդ ծանր պահին հսկայական ուժով հնչեց Լենինի ձայնը։ Արտասահման գնալուց հետո գրած առաջին իսկ հոդվածում Լենինը, դիմելով պարտիային, նախագուշակում էր գալիք հաղթանակը։*

> *«Մենք կարողանում էինք երկար տարիներ աշխատել նախքան ռևոլյուցիան։ Իզուր չէ, որ մեզ կոչել են կարծրաքարներ։ Սոցիալ-դեմոկրատները կազմել են մի պրոլետարական պարտիա, որը չի հուսահատվի առաջին ռազմական գրոհի անհաջողությունից, գլուխը չի կորցնի, ավանտյուրաներով չի տարվի։ Այդ պարտիան գնում է դեպի սոցիալիզմ, առանց կապելու իրեն և իր ճակատագիրը բուրժուական ռևոլյուցիաների այս կամ այն ժամանակաշրջանի վախճանի հետ։ Հենց այդ պատճառով էլ այդ պարտիան ազատ է նաև բուրժուական ռևոլյուցիաների թույլ կողմերից։ Եվ այդ պրոլետարական պարտիան գնում է դեպի հաղթանակ»* (Երկեր, հատ. 13, էջ 574)։

*Լենինը պարտիային տվեց հետագա պայքարի պարզորոշ հեռանկար, մշակեց նրա խնդիրներն ու տակտիկան՝ զարգացման նոր պայմաններին համապատասխան։*

*Ռևոլյուցիան առաջ բերած հիմնական պատճառները մնում էին ուժի մեջ. ժողովուրդն իրավազուրկ էր, գյուղացիները գտնվում էին կալվածատիրոջ ստրկության մեջ, բանվորները կրկնակի լծի՝ գործարանատիրոջ և ժանդարմի լծի տակ։ Ռևոլյուցիոն նոր վերելքն անխուսափելի էր։ Բոլշևիկների հիմնական քաղաքական նպատակը մնում էր նույնը, ինչ և 1905 թվականին,— բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի լիակատար հաղթանակը և նրա վերաճումը սոցիալիստական ռևոլյուցիայի։ Ուժի մեջ էին մնում պարտիայի ռևոլյուցիոն ծրագրային պահանջները՝ դեմոկրատական ռեսպուբլիկան, կալվածատիրական հողի բռնագրավումը հօգուտ գյուղացիների, ութժամյա աշխատանքային օրը, ազգերի ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատումը և ժողովրդի շահերին համապատասխանող մյուս պահանջները։*

*Բայց ռևոլյուցիոն պայքարը պետք էր շարունակել նոր, փոփոխված պայմաններում, ռեակցիայի հաղթանակի և մասսայական շարժման վայրէջքի պայմաններում։ Այդ պատճառով չէր կարելի անփոփոխ թողնել այն տակտիկան, որ պարտիան կիրառում էր ռևոլյուցիայի պայմաններում, չէր կարելի մասսա-*

*ներին ցարական միապետության դեմ ուղղակի գրոհի կոչ անել։ Անհրաժեշտ էր նահանջել, անմիջական ռևոլյուցիոն պայքարի մեթոդներից անցնել պայքարի շրջանցիկ մեթոդներին՝ բանվոր դասակարգի ու աշխատավոր մասսաների դաստիարակման ու կազմակերպման համառ աշխատանքով նոր ռևոլյուցիա նախապատրաստելու համար։ Իսկ դրա համար անլեգալ պարտիան պետք է ամեն կերպ օգտագործեր լեգալ հնարավորությունները՝ Պետական դումայի ամբիոնը, արհմիությունները, կոոպերատիվները, ակումբները և նման կազմակերպություններ։ Պարտիան պետք է սովորեր անլեգալ պարտիական կազմակերպության ղեկավարությամբ զուգակցել անլեգալ և լեգալ աշխատանքը։ Լենինը մշակեց և հիմնավորեց ճկուն տակտիկա, որը նպատակ ուներ պահպանել և ի մի հավաքել ուժերը՝ բարենպաստ պայմաններում նոր ռևոլյուցիոն հարձակում նախապատրաստելու համար։*

*Ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի առաջ ծառացել էր մի խնդիր, որը նրան դեռ չէր վիճակվել լուծել՝ նահանջել կազմակերպված կարգով, ռևոլյուցիոն ձևով օգտագործել աշխատանքի ու կազմակերպության լեգալ ձևերը։ Այդ պատմական խնդիրները լուծելու համար անհրաժեշտ էր պահպանել և ամրապնդել մասսաների հետ սերտորեն կապված անլեգալ պարտիան։ Եվ բոլշևիկները, ղեկավարվելով Լենինի կողմից, պայքար ծավալեցին երկու ճակատում՝ ընդդեմ լիկվիդատորների և օտզովիստների։*

*Ռեակցիայի տարիներին պարտիայի զարգացման մեջ շրջադարձային կետ դարձավ ՌՍԴԲՊ Համառուսաստանյան V կոնֆերենցիան, որ կայացավ 1908 թվականի դեկտեմբերին Փարիզում։ Կոնֆերենցիայի աշխատանքին մասնակցում էին բոլշևիկները, մենշևիկները, լեհական սոցիալ-դեմոկրատները և բունդականները։ Այնտեղ ներկա էին խոշորագույն պարտիական կազմակերպությունների՝ Պետերբուրգի, Մոսկվայի, Կենտրոնական-արդյունաբերական մարզի, Ուրալի, Կովկասի կազմակերպությունների ներկայացուցիչները։ Կոնֆերենցիայում հիմնական զեկուցումը տվեց Լենինը։ Այդ զեկուցման ոգով մենշևիկ-լիկվիդատորների դեմ մղվող սուր պայքարում ընդունվեցին ռեակցիայի ամբողջ ժամանակաշրջանի համար պարտիայի ռևոլյուցիոն գիծն ու կազմակերպական քաղաքականությունը որոշող բանաձևեր։ Նոր ռևոլյուցիոն ճգնաժամն անխուսափելի է, պարտիայի առջև առաջվա նման ծառացած են հին ռևոլյուցիոն նպատակները, հայտարարեց կոնֆերենցիան։ Օրակարգում դրվում է ամենից առաջ պրոլետարիատին, գյուղացիությանն ու բանակին դաստիարակելու, կազմակերպելու ու համախմբելու, լեգալ հնարավորություններն օգտագործելու տևական աշխատանքը։ Լենինի առաջարկությամբ կոնֆերենցիան դատապարտեց լիկվիդատորությունը և պարտիական բոլոր կազմակերպություններին կոչ արեց ամենավճռական պայքար մղել պարտիային թշնամի այդ հոսանքի դեմ։ Միաժամանակ կոնֆերենցիան վճռականորեն սահմանազատվեց օտզովիզմից։ Բոլշևիկները կոնֆերենցիայում լուրջ հաղթանակ տարան մենշևիկների դեմ մղած պայքարում։ Պարտիան կոնֆերենցիայի որոշումներով էր ղեկավարվում այդ ծանր տարիներին։*

*Բոլշևիկների համար լուրջ նշանակություն ուներ պայքարը օտզովիզմի դեմ։ Մոսկվայի, Պետերբուրգի, Օդեսայի և մի քանի այլ արդյունաբերական քաղաքների բանվորների մի մասի շրջանում տարածվել էին տրամադրություններ սևհարյուրյակային Պետական դումային մասնակցելու դեմ։ Լենինը մատնանշում էր, թե մի բան է՝ բանվորների դժգոհությունը սևհարյուրյակային դումայից և այնտեղ սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի գործունեությունից, այլ բան է օտզովիզմը՝ որպես քաղաքական ուղղություն։ «Բայց մենք թույլ չենք տա, որ օրինական դժգոհությունը մեզ գրավի դեպի սխալ քաղաքականություն»,— ասում էր Լենինը* (Երկեր, հատ. 15, էջ 368—369)*։ Բանվորների այդ տրամադրությունները շուտով կանցնեն. կյանքը կապացուցի, իսկ բոլշևիկները կպարզաբանեն դումայի օգտագործման անհրաժեշտությունը։ Իսկ ինչ վերաբերում է օտզովիզմին՝ որպես քաղաքական ուղղության, ապա նրան պետք է անհաշտ գաղափարական պատերազմ հայտարարվի։ Լենինը բոլշևիկների մեջ ատելություն էր դաստիարակում դեպի «ռևոլյուցիոն ֆրազը», նրանց սովորեցնում էր, որ իսկական ռևոլյուցիոները պետք է կարողանա իր պարտքը կատարել նաև ամենածանր, դանդաղ, առօրյա միապաղաղ աշխատանքում։*

*Նոր պայմաններում գիծ մշակելու և օտզովիստների դեմ մղվող պայքարում բոլշևիկներին համախմբելու համար 1909 թվականի հունիսին Փարիզում հրավիրվեց բոլշևիկյան «Պրոլետարի» (Բոլշևիկյան փաստական կենտրոն) թերթի ընդլայնված խմբագրության խորհրդակցություն։ Խորհրդակցության աշխատանքին մասնակցում էին Պետերբուրգի, Մոսկվայի մարզային կազմակերպության, Ուրալի պատգամավորները։ Խորհրդակցությունը օտզովիստներին վտարեց բոլշևիկյան շարքերից, գտավ, որ օտզովիզմը անհամատեղելի է բոլշևիզմի հետ, և բոլոր բոլշևիկներին կոչ արեց ամենավճռական պայքար մղել ռևոլյուցիոն մարքսիզմից կատարվող այդ նահանջի դեմ։ Օտզովիստներն ստեղծեցին վպերյոդականների իրենց ֆրակցիան նրանց հրատարակած «Վպերյոդ» օրգանի անունով։*

*Պարտիական կյանքում առաջացած նոր երևույթների կապակցությամբ խորհրդակցությունը նշեց բոլշևիկների նոր խնդիրները պարտիայի համար մղվող պայքարում։ Բանն այն է, որ մի շարք կազմակերպություններում (Պետերբուրգի Վիբորգյան շրջան, Մոսկվա, Եկատերինոսլավ, Կիև, Բաքու, Ուֆա և ուրիշներ) բանվոր-մենշևիկները դուրս եկան լիկվիդատորների դեմ։ Այդպիսի մենշևիկներին սկսեցին անվանել մենշևիկ-պարտիականներ։ Լիկվիդատորների քննադատությամբ հանդես եկավ նաև Պլեխանովը։ Ուստի խորհրդակցությունը, չկոծկելով բոլշևիկների ու մենշևիկների միջև եղած սկզբունքային տարաձայնությունները, առաջարկեց բոլշևիկների և մենշևիկ-պարտիականների բլոկի տակտիկան՝ անլեգալ պարտիայի համար մղվող պայքարում։*

*Այն ժամանակ դեռևս քիչ չէին այն բանվորները, որոնք վատ էին հասկանում բոլշևիկների ու մենշևիկների միջև տեղի ունեցող պայքարի էությունը և գտնվում էին մենշևիկների ազդեցության տակ։ Բայց նրանք սկսում էին հասկանալ, որ լիկվիդատորները դավաճանել են սոցիալիզմին ու դեմոկրատիային, հանդես են եկել որպես անլեգալ պարտիայի քայքայիչներ, մի պարտիա, որին բանվոր դասակարգը տվել է իր լավագույն ուժերը։ Այդ բանվորներն ավելի ու ավելի էին համոզվում, որ միայն բոլշևիկներն էին ռեակցիայի ծանր տարիներին կայուն ու անհողդողդ կերպով պաշտպան կանգնել պարտիայի շահերին, վճռական ու անհաշտ պայքար էին մղում լիկվիդատորների դեմ։ Բանվորները համախմբվում էին բոլշևիկների շուրջը։*

*Պայքարը մենշևիկների դեմ գնալով ավելի էր սրվում։ Լիկվիդատորներին օգնության եկան ցենտրիստները։ Ցենտրիզմը II Ինտերնացիոնալում՝ մեկ ընդհանուր պարտիայի կազմում պրոլետարական տարրերին մանրբուրժուա-*

կան տարրերին ներարկելու իդեոլոգիան ու քաղաքականությունն էր։ Ցենտրիստները խոսքով հավաստիացնում էին, թե իրենք հավատարիմ են մարքսիզմին, իսկ գործով խեղաթյուրում էին այն։ Նրանք չէին ցանկանում պայքարել օպորտունիզմի դեմ, որով հեշտացնում էին նրա հաղթանակը արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական պարտիաներում։ Ցենտրիզմը Ռուսաստանում պատվաստում էր Տրոցկին, որը Վիեննայում հրատարակում էր իր «Պրավդա» թերթը։ Տրոցկին քարոզում էր մեկ պարտիայի մեջ ռևոլյուցիոներների և օպորտունիստների համակեցության նեխած և վնասակար «տեսությունը», ձգտում էր միավորման՝ անսկզբունք հիմքի վրա։ Իրեն հայտարարելով «արտաֆրակցիոն» սոցիալ-դեմոկրատ, իրականում Տրոցկին իր լիկվիդատորությունը քողարկում էր հաշտվողականությամբ։ Մերկացնելով Տրոցկուն, Լենինը ցույց տվեց, որ նրա այն պնդումը, թե իբր ինքը վեր է կանգնած ֆրակցիաներից, իրականում մենշևիկների պաշտպանություն է, լիկվիդատորության մի ձևն է։ Լենինը զայրույթով Տրոցկուն անվանեց Հուդա և նրա մասին գրում էր. «...Տրոցկին վարվել է որպես ամենաստոր կարիերիստ... ֆրակցիոներ... Շաղակրատում է պարտիայի մասին, իսկ իրեն պահում է ամեն տեսակ ֆրակցիոներներից էլ վատ» (Երկեր, հատ. 34, էջ 464)։

Որպես տրոցկիստների դաշնակիցներ հանդես եկան հաշտվողականները, որոնք փորձում էին պարտիայի անդամներին համոզել, թե հնարավոր է համատեղ աշխատել լիկվիդատորների հետ։ Հաշտվողական տատանումներ ցուցաբերեցին Կենտկոմի անդամներ Դուբրովինսկին ու Նոգինը։ Պարտիային առանձնակի վնաս էին հասցնում Զինովևը, Կամենևը և Ռիկովը, որոնք Լենինի թիկունքում համաձայնության էին գալիս Տրոցկու հետ։ Ի հակակշիռ լենինյան այն պլանի, թե բոլշևիկները պետք է բլոկ կազմեն մենշևիկ-պարտիականների հետ լիկվիդատորների դեմ պայքարելու նպատակով, հաշտվողականները պահանջում էին բոլշևիկների միավորում լիկվիդատորների ու տրոցկիստների հետ, որը նշանակում էր փաստորեն լիկվիդացնել բոլշևիկյան պարտիան։ Այս ամենը բարդացնում էր Լենինի և լենինյանների պայքարը պարտիան լիկվիդատորներից մաքրելու համար։

1910 թվականի հունվարին Փարիզում կայացավ Կենտրոնական Կոմիտեի պլենումը։ Հակառակ Լենինի, հաշտվողականները, Տրոցկու հետ դաշնակցած, պլենումում անցկացրին մի շարք որոշումներ. կենտրոնական հիմնարկների կազմում մտցվեցին ոչ թե մենշևիկ-պարտիականներ, այլ մենշևիկ-լիկվիդատորներ, որոշեցին տրոցկիստական «Պրավդա»-ին նյութապես օժանդակել և նրա խմբագրության մեջ մտցնել Կենտկոմի ներկայացուցիչ Կամենևին։ Հաշտվողականները բացահայտորեն գործը տանում էին դեպի այն, որ ցենտրիստ Տրոցկու թերթը դարձնեն Կենտկոմի օրգան։

Լենինը հասավ այն բանին, որ պլենումը դատապարտեց լիկվիդատորությունը և օտզովիզմը որպես պրոլետարիատի վրա բուրժուական ազդեցության արտահայտություն։ Բայց այստեղ էլ տրոցկիստներն ու հաշտվողականները պնդեցին, որ անորոշ ասվի «երկու թեքումները» դատապարտելու մասին, առանց լիկվիդատորներին ու օտզովիստներին իրենց իսկական անունով կոչելու։

Պլենումի հաշտվողական որոշումները լուրջ վնաս հասցրին պարտիային։ Ինչպես և կանխատեսում էր Լենինը, հաշտվողականները գործեցին լիկվիդատորների օգտին։ Հաշտվողականները (Զինովև, Կամենև և ուրիշներ)



որոշեցին փակել բոլշևիկյան «Պրոլետարի» թերթը։ Իսկ մենշևիկները հրաժարվեցին փակել իրենց ֆրակցիոն օրգան «Գոլոս սոցիալ-դեմոկրատա»-ն։

Լիկվիդատորներն սկսեցին Ռուսաստանում լեգալ կերպով հրատարակել իրենց «Նաշա զարյա» օրգանը, որին աշխատակցում էին Աքսելրոդը, Դանը, Մարտովը և այլ մենշևիկ գոլոսականներ։ Պահանջվեց Լենինի մեծ աշխատանքը՝ պլենումի հաշտվողական որոշումները հաղթահարելու համար։

Ռեակցիայի տարիներին դրությունը ՌՍԴԲՊ-ում շատ ծանր էր։ Օգտագործելով ռևոլյուցիայի պարտության իրադրությունը, մի ամբողջ շարք օպորտունիստական ֆրակցիաներ ու խմբեր՝ լիկվիդատորները, օտզովիստները, տրոցկիստները և ուրիշներ, փորձում էին բանվորների մեջ անհավատություն սերմանել նոր ռևոլյուցիայի հնարավորության նկատմամբ, համոզել նրանց, թե հետագա ռևոլյուցիոն պայքարը հեռանկար չունի։ Նրանք բոլորն էլ ամբողջ ուժով ձգտում էին քայքայել պրոլետարիատի անլեգալ ռևոլյուցիոն պարտիան։ Այդ խռովահույզ ժամանակ միայն Լենինը և բոլշևիկները իրենց ցուցաբերեցին որպես անհողդողդ ռևոլյուցիոներներ և արիաբար պաշտպանում էին պարտիականությունը։ Կյանքը պարտիական կադրերին ու գիտակից բանվորներին համոզում էր, որ Լենինը իրավացի է։

Բոլշևիկները պարտիայի շահերը պաշտպանում էին ամեն գույնի օպորտունիստների դեմ մղած անհաշտ պայքարում։ Ընդսմին նրանք հենվում էին ՌՍԴԲՊ բոլոր անդամների համար պարտադիր այն որոշումների վրա, որ ընդունել էին համապարտիական կոնֆերենցիաները, Կենտկոմի պլենումները և այլն։ Բոլշևիկներն անց էին կացնում բոլոր նրանց համախմբելու ճիշտ քաղաքականություն, ովքեր ընդունակ էին պայքարելու անլեգալ պարտիայի համար, ընդդեմ նրա քայքայիչների։ Այս բոլորն ապահովում էր, որ բոլշևիկները նոր դիրքեր նվաճեն պարտիայի համար մղած պայքարում։

## 3. ՄԱՐՔՍԻԶՄԻ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԼԵՆԻՆԻ ԿՈՂՄԻՑ։ ՊԱՐՏԻԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ՈՒՍՄՈՒՆՔԻ ՀԵՏԱԳԱ ՄՇԱԿՈՒՄԸ ԼԵՆԻՆԻ ԿՈՂՄԻՑ։

Բոլշևիկները պրոլետարական պարտիան ամրապնդում էին ռևոլյուցիայի փորձով հարստացած մարքսիզմի տեսության գաղափարական ամուր հիմքի վրա։

Ռեակցիայի տարիներին իդեոլոգիայի բնագավառում առաջին պլան մղվեց մարքսիստական փիլիսոփայության, պարտիայի տեսական հիմունքների, նրա աշխարհայացքի պաշտպանությունը։ Դա որոշվում էր մի շարք պատճառներով։

Ռեակցիայի հարձակումը տեղի ուներ նաև իդեոլոգիական ճակատում։ Բուրժուական գիտնականները, գրողները, ժուռնալիստները բոլոր եղանակներով «հերքում էին» մարքսիզմը և առաջին հերթին նրա փիլիսոփայական հիմքերը։ Դիալեկտիկական մատերիալիզմը հայտարարվում էր հնավանդ, հնացած, իսկ կրոնը ճանաչվում էր որպես մարդկային ոգու «բարձրագույն նվաճում»։ Մարքսիզմի վրա առանձնապես թունդ էին հարձակվում ռևոլյուցիայի շատ նախկին ուղեկիցներ, որոնք դուրս էին եկել բուրժուական ինտելիգենցիայի շարքերից։ Նրանք ռևոլյուցիայի վրա թուք ու մուր էին թափում, գովաբանում նրանից հրաժարվելը։ Ժողովրդի շահերի պաշտպանու-

թյունը նրանք ծաղրի էին ենթարկում որպես «ժողովրդապաշտություն», իսկ ժողովրդի նկատմամբ դավաճանությունը փառաբանում որպես առաքինություն։ Ժողովրդի գիտակցությունը թունավորելու, նրան ռևոլյուցիոն պայքարից շեղելու համար բուրժուական ինտելիգենցիան լայնորեն քարոզում էր տերտերականություն ու միստիկա, գովերգում էր հոռետեսությունն ու անկումայնությունը, արմատավորում անառակությունը։

Գաղափարական քայքայումը թափանցել էր նաև ռևոլյուցիոն միջավայրը։ Իրենց մարքսիստ համարող, բայց մարքսիզմը վատ յուրացրած պարտիական ինտելիգենտների մի մասը հեռացավ մարքսիզմից և ռևիզիոնիստական դիրքեր գրավեց փիլիսոփայության մեջ։ Մի քանի մենշևիկ գրականագետներ (Վալենտինով, Յուշկևիչ) և նախկինում բոլշևիկների շարքերում գտնվող մի քանի ինտելիգենտներ (Բոգդանով, Բազարով) գրոհեցին մարքսիստական փիլիսոփայության արմատական դրույթների դեմ։ Բայց այդ բանը նրանք անում էին ոչ թե բացահայտորեն, ոչ թե ուղղակի, այլ քողարկվում էին այն երեսպաշտ հայտարարություններով, թե իբր իրենք մարքսիզմի կողմնակիցներ են, բայց ուզում են «բարելավել», «ուղղել» այն։

Որոշ սոցիալ-դեմոկրատներ հանդես եկան նույնիսկ պահանջելով մարքսիզմը հաշտեցնել կրոնի հետ։ Նրանք պնդում էին, թե «սոցիալիզմը կրոն է» (Լունաչարսկի), թե իրենք կառուցում են ապագայի նոր և բարձրագույն կրոնը։ Գիտական սոցիալիզմին կրոնական հավատալիքի բնույթ տալու փորձ անող այդպիսի քարոզիչներին սկսեցին անվանել «աստվածաշինարարներ»։

Մարքսիստական փիլիսոփայության դեմ պայքարելու և իդեալիստական, կրոնական հայացքներ քարոզելու համար բուրժուական գիտնականներն ու նրանց ձայնակիցները՝ ռևիզիոնիստները, փորձում էին օգտագործել բնագիտության հաջողությունները՝ խեղաթյուրված ձևով մեկնաբանելով դրանք։

Բանն այն է, որ այդ ժամանակ ֆիզիկայի և մյուս բնական գիտությունների բնագավառում արվեցին շատ հայտնագործություններ, որոնք փշրում էին դարերով հաստատված հայացքներն ու պատկերացումները։ Առաջ գիտնականները ատոմը համարում էին նյութի վերջին, անբաժանելի մասնիկը, իսկ քիմիական տարրերը՝ անփոփոխ։ Էլեկտրոնի, ռադիոակտիվության հայտնագործումը ցույց տվեց, որ ատոմը բաժանվում է, իսկ քիմիական տարրերը փոփոխական են և կարող են փոխարկվել մեկը մյուսին։ Հին բնագիտությունը գտնում էր, որ մարմնի զանգվածը մշտական է և կախված չէ այն բանից, թե մարմինն անշարժ է կամ շարժվում է։ Ուսումնասիրելով էլեկտրոնը, ֆիզիկոսները պարզեցին, որ նրա զանգվածը կախված է շարժման արագությունից։ Արվեցին և այլ խոշոր հայտնագործություններ, որոնք արմատապես փոխեցին նյութի կառուցվածքի ու շարժման վերաբերյալ հայացքը։

Շատ գիտնականներ չկարողացան ճիշտ գնահատել այդ հայտնագործությունները։ Նրանց թվում էր, թե մատերիան խորտակվում է, կործանվում է բուն գիտությունը, քայքայվում են գիտության հիմքերը։ Սկսեցին խոսել «բնագիտության ճգնաժամի» մասին։ Հենց դրանից էլ որոշեցին օգտվել կրոնի քարոզիչները, ամեն գույնի իդեալիստները։ Նրանք իդեալիստորեն մեկնաբանեցին բնական գիտությունների նվաճումները և այդ հիման վրա հարձակում սկսեցին մարքսիստական փիլիսոփայության դեմ։



Արևմտաեվրոպական և ռուսական ռևիզիոնիստները, գերմանական բուրժուական փիլիսոփա Մախի հետևորդները, սկսեցին ապացուցել, թե բնագիտության բնագավառում կատարված հայտնագործություններն իբր թե վկայում են նյութի «անհայտացման» մասին, որ, հետևաբար, փիլիսոփայական մատերիալիզմը հնացել է, իսկ դիալեկտիկան «միստիկա» է։ Մախիստները հայտարարեցին, որ իրենց իդեալիստական փիլիսոփայությունը «չեզոք» է, որն իբր վեր է կանգնած փիլիսոփայության բնագավառում պայքարող լագերներից՝ մատերիալիստներից և իդեալիստներից։ Մախիստների ուսմունքի մեջ իդեալիզմը հանդես եկավ առանձնապես նրբին ու կոկած ձևով։

Այսպիսով, բնագիտության նորագույն հայտնագործությունների ճիշտ, մատերիալիստական ընդհանրացման բացակայությունը սպառնում էր մարքսիստական աշխարհայացքի բուն հիմքերին։

Պայքարը մարքսիզմի տեսական հիմքերի գաղափարական անաղարտության համար հրամայական էր մանավանդ այն պատճառով, որ ռևոլյուցիան քաղաքական կյանքի էր բարձրացրել ժողովրդի հսկայական խավեր։ Ռևոլյուցիոն մարտերի մասնակից շատ բանվորներ էին մտել պարտիայի մեջ։ Նրանք սկսում էին ծանոթանալ մարքսիզմին։ Մատերիալիզմն ու դիալեկտիկան ժխտող փիլիսոփայական հայացքների տարածումը պարտիական շարքերում, բանվորական միջավայրում, մախիզմի քարոզը մեծ վտանգ էին ներկայացնում, կարող էին անուղղելի վնաս հասցնել մասսաների քաղաքական դաստիարակման, պարտիայի անդամների գաղափարական կոփման գործին։ Մախիզմի փիլիսոփայությունը, մանավանդ աստվածաշինարարությունը, շաղկապվում էին ռեակցիոն քարոզի հետ։ Քաղաքականության բնագավառում ռևիզիոնիստ-փիլիսոփաների հայացքները հասցնում էին Ռուսաստանում գոյություն ունեցած կարգերի հետ հաշտվելուն, պայքարից հրաժարվելուն, «աստծու կամքին» ապավինելուն։ Այլ կերպ ասած՝ փիլիսոփայության հարցերում եղած ռևիզիոնիզմը մասսաներին քաղաքականապես դատապարտում էր հնազանդության ու անգործության։

Մարքսիստական փիլիսոփայությունը և նրա հետագա զարգացումը պաշտպանելու անհրաժեշտությունը թելադրվում էր նաև այն դրությամբ, որ տիրում էր միջազգային բանվորական շարժման մեջ։ Արևմտաեվրոպական օպորտունիստները պնդում էին, թե լիովին կարելի է մարքսիզմը քաղաքականության մեջ հաշտեցնել իդեալիզմի հետ՝ փիլիսոփայության մեջ։ II Ինտերնացիոնալի ականավոր տեսաբան Կաուցկին փիլիսոփայական վեճերը հայտարարեց «մասնավոր գործ», որի մեջ պարտիան չպետք է խառնվի։ Նշանակում է, Ռուսաստանում մարքսիզմի ուրացողության դեմ մղվող պայքարը նաև պայքար էր միջազգային սոցիալ-դեմոկրատիայի մեջ եղած ռևիզիոնիզմի դեմ։

Բանվոր դասակարգի պարտիան իր պարտքը համարեց վճռական հակահարված տալ մարքսիստական աշխարհայացքի հակառակորդներին, տալ բնագիտության հաջողությունների իսկական փիլիսոփայական ընդհանրացումը։ Այդ կարևոր ու պատասխանատու խնդրի կատարմանն էլ ձեռնամուխ եղավ Վ. Ի. Լենինը։

Լենինը միշտ էլ մեծ ուշադրություն էր հատկացնում մարքսիզմի փիլիսոփայության զարգացմանը։ Պայքարելով նարոդնիկների, «էկոնոմիստների», մենշևիկների դեմ՝ Լենինն իր «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և

ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Ի՞նչ անել» և ուրիշ շատ աշխատություններում հարստացրեց մարքսիստական փիլիսոփայությունը։ Ռեակցիայի տարիներին, երբ փիլիսոփայական պրոբլեմներն առանձնապես սուր նշանակություն ստացան, Լենինը գրում է աշխարհայացքի պրոբլեմներին նվիրված մի հատուկ աշխատություն՝ «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ»-ը, որը լույս տեսավ 1909 թվականին։ Այդ գիրքը մի ամբողջ դարաշրջան կազմեց մարքսիստական փիլիսոփայության զարգացման մեջ։

Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքի նշանակությունը հետևյալն է։

Լենինը ետ մղեց բուրժուական գաղափարախոսների և ռևիզիոնիստների բոլոր գրոհները փիլիսոփայական մատերիալիզմի դեմ։ Նա բացահայտեց իդեալիստական փիլիսոփայական բոլոր դպրոցների հակագիտական բնույթը և ապացուցեց դրանց տեսական սնանկությունը։ Բնագիտական ու պատմական հսկայական նյութի հիման վրա Լենինը համոզիչ կերպով ցույց տվեց, որ աշխարհի գիտական պատկերը տալիս է միայն մեկ փիլիսոփայություն՝ դիալեկտիկական մատերիալիզմը, որը բանվոր դասակարգին զինում է բնության, հասարակության, մտածողության առավել ընդհանուր օրենքների իմացությամբ։ Միայն մարքսիստական աշխարհայացքի հիման վրա կարելի է ճըշտորեն ճանաչել մեզ շրջապատող աշխարհը և վերափոխել այն։

Լենինը լուծեց մի խնդիր, որին ձեռք էին զարկել շատ մարքսիստներ,— տվեց բնագիտության նորագույն հայտնագործությունների մարքսիստական ընդհանրացումը։ Նա ջախջախեց մարքսիզմի թշնամիների կողմից այդ հայտնագործությունները սխալ կերպով, իդեալիստորեն, ռեակցիոն իդեոլոգիայի ամրապնդման օգտին մեկնաբանելու փորձերը։ Լենինը ցույց տվեց, որ բնագիտության մեջ տեղի ունեցած չեշտակի բեկումը ոչ թե ժխտում է աշխարհի նյութականությունն ու մատերիալիզմը, ինչպես պնդում էին մախիստները, այլ նշանակում է նյութի ու նրա հատկությունների վերաբերյալ պատկերացումների հետագա փոփոխում ու խորացում։ «Բնագիտության ճգնաժամ»-ից դուրս գալու ելքը միայն դիալեկտիկական մատերիալիզմի ուղին էր։ «Բնագիտության ճգնաժամի» էության և այդ ճգնաժամից դուրս գալու ուղիների լենինյան վերլուծությունը լիովին արդարացրեց իրեն։ Լենինի գիրքը մինչև այսօր էլ պահպանում է իր նշանակությունը՝ որպես բնական գիտությունների զարգացման մեթոդոլոգիական հիմք։

Լենինը պաշտպանեց և զարգացրեց մարքսիստական փիլիսոփայական մատերիալիզմը, որը պրոլետարիատին ցույց տվեց հոգևոր ստրկությունից դուրս գալու ելքը, և այդ տեսության համար նոր բնագիտական բազա ստեղծեց։ Բնագիտության նորագույն հայտնագործությունների օգտագործման հիման վրա նա զարգացրեց նյութի մարքսիստական ըմբռնումը և աշխարհի նյութականության հիմնավորումը։

Լենինը պաշտպանեց և զարգացրեց աշխարհի ճանաչելիության ուսմունքը, բացահայտեց ճանաչողության պրոցեսի բարդությունը, ցույց տվեց նրա զարգացումը։ Մարդկային իմացությունն աստիճանաբար, քայլ առ քայլ ստույգ և ճշտորեն է ճանաչում օբյեկտիվ նյութական աշխարհի երևույթներն ու օրենքները։ Այսպես, անգիտությունից զարգանում է գիտությունը, թերի, ոչ-ճշգրիտ գիտությունը դառնում է ավելի ու ավելի լրիվ և ավելի ու ավելի ճշգրիտ։ Իդեալիստական փիլիսոփայությունը վերջին հաշվով քարոզում էր գիտության կապիտուլյացիա բնության գաղտնիքների առջև։ Մարքսիստական փիլիսոփայությունը ազդարարեց՝ գիտությունը ամենազոր է, և՛ չկա սահման նրա զարգացման համար։

«Մարդկային միտքը,— գրում է Լենինը,— շատ արտասովոր բաներ է հայտնագործել բնության մեջ և է՛լ ավելի կհայտնագործի, դրանով իր իշխանությունը մեծացնելով նրա վերաբերմամբ...» (Երկեր, հատ. 14, էջ 375—376)։

Լենինը զարգացրեց և հիմնավորեց պրակտիկայի՝ որպես իմացության հիմքի և ճշմարտության չափանիշի վերաբերյալ մարքսիստական հայացքը։ Գիտությունը, գիտելիքը զարգանում և աճում են մարդկության պարկտիկայից, փորձից, մարդկանց արտադրական ու հասարակական գործունեությունից։ Միայն պրակտիկայում ստուգված գիտության եզրակացություններն են ստույգ գիտելիքներ, որոնք օբյեկտիվ ճշմարտությունների նշանակություն ունեն։ Պրակտիկան անընդհատ հարստացնում և առաջ է մղում գիտությունը։

Լենինը պաշտպանեց և զարգացրեց մարքսիստական մատերիալիստական դիալեկտիկան, որն առաջնահերթ նշանակություն ունի պրոլետարիատի և նրա պարտիայի ռևոլյուցիոն գործունեության համար։

Իր «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գրքում և մի շարք այլ երկերում Լենինը ցույց տվեց, որ մատերիալիստական դիալեկտիկան ամենաբազմակողմանի, բովանդակությամբ հարուստ և խոր ուսմունք է զարգացման մասին։ Մատերիալիստական դիալեկտիկան ապացուցեց, որ աշխարհն անշարժ ու անփոփոխ չէ։ Նա շարունակ զարգանում ու նորոգվում է։ Այդ զարգացման աղբյուրը ներքին հակասություններն են, որոնք հատուկ են ամեն մի իրի, ամեն մի պրոցեսի և երևույթի։ Այդ հակասությունները ծագում, հասնում են որոշ աստիճանի սրման և ապա լուծվում։ Այդ հակասությունները ժամանակին կռահելու և դրանք ժամանակին լուծելու կարողությունը դիալեկտիկայի այն մեծ վարպետությունն է, որ սովորեցնում էր Լենինը։

Զարգացման ամեն մի պրոցեսում եղած հակասության, հակադրությունների միասնության ու պայքարի վերաբերյալ մատերիալիստական դիալեկտիկայի կարևորագույն դրույթը կազմում է դիալեկտիկայի հիմնական օրենքը, կամ «միջուկը»։ «Համառոտակի դիալեկտիկան կարելի է բնորոշել որպես ուսմունք հակադրությունների միասնության մասին»,—ասում էր Լենինը («Փիլիսոփայական տետրակներ», 1947, էջ 194)։

Մատերիալիստական դիալեկտիկան տալիս է այն բանի ճիշտ ըմբռնումը, թե ինչպես բնական ու հասարակական պրոցեսներում տեղի ունեցող աստիճանական, անընդհատ փոփոխությունները հասցնում են զարգացման մեջ կտրուկ շրջադարձերի, արմատական փոփոխությունների, թռիչքների։

Լենինը պաշտպանեց ու զարգացրեց պատմական մատերիալիզմը՝ հասարակության զարգացման վերաբերյալ գիտությունը։ Նա ցույց տվեց, որ կեցության ու գիտակցության վերաբերյալ Բոգդանովի բառախաղի հետևում թաքնված է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների ժխտումը։ Լենինն ապացուցեց մախիստների այն պնդումների կատարյալ գիտական սնանկությունը, թե մարդկային հասարակությունը զարգանում է ֆիզիկայի կամ բիոլոգիական մի այլ գիտության օրենքներով, և ոչ թե իր սեփական, իրեն հատուկ օրենքներով։ Իմանալով այդ օրենքները, պարտիան

*վաղօրոք կանխատեսում է հասարակության զարգացման ընթացքը, գիտականորեն որոշում է ռևոլյուցիոն պայքարի հասունացող խնդիրները և մոբիլիզացնում ժողովրդական մասսաներին դրանք լուծելու համար։*

*Լենինը զարգացրեց և հիմնավորեց* փիլիսոփայության պարտիականության *սկզբունքը։ Բազմակողմանի քննադատության ենթարկելով մարքսիզմի փիլիսոփայությունը ռևիզիայի ենթարկելու բոլոր փորձերը՝ Լենինը բացահայտեց դրանց դասակարգային արմատները։ Նա ակնառու կերպով ցույց տվեց, որ փիլիսոփայական ուղղությունների պայքարում վերջին հաշվով իր արտահայտությունն է գտնում ժամանակակից հասարակության թշնամական դասակարգերի իդեոլոգիան։ Ինչ վերաբերում է մախիստներին, ինչպես և իդեալիզմի բոլոր կողմնակիցներին, ապա նրանց օբյեկտիվ դերը հանգում է տերտերականության ու ռեակցիայի հաճոյանալուն։*

*Լենինն ապացուցեց, որ պարտիայի աշխարհայացքի ու քաղաքականության միջև ուղղակի և անմիջական կապ գոյություն ունի։ «...մարքսիզմի քաղաքական գիծը,— գրում էր Լենինը,— ...անխզելիորեն կապված է իր փիլիսոփայական հիմունքների հետ»* (Երկեր, հատ. 15, էջ 504)։

*Նույնպիսի կապ էլ գոյություն ունի մարքսիզմի փիլիսոփայությունից հրաժարվելու և օպորտունիզմի միջև։ Մասնավորապես, դա երևում է փիլիսոփայության մեջ ռևիզիոնիստների՝ մենշևիկների օրինակից, որոնք լիկվիդատորներ էին քաղաքականության մեջ, և բոգդանովականների օրինակից, որոնք օտզովիստներ դարձան քաղաքականության մեջ և գլորվեցին մենշևիզմի գիրկը։*

*Լենինն իր գրքում հարստացրեց մարքսիզմի փիլիսոփայական ուսմունքը, գիտության նոր մակարդակին համապատասխան՝ այն հասցնելով մի նոր, ավելի բարձր աստիճանի, որով առաջ մղեց ամբողջ հասարակական միտքը։*

*Լենինի «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» գիրքն աչքի ընկնող դեր խաղաց բոլշևիկների պարտիայի գաղափարական զարգացման, նրա կադրերի տեսական կոփման գործում, մարքսիստական պարտիայի տեսական հիմքերի պաշտպանության ու զարգացման գործում։ Այդ երկով էին դաստիարակվում և դաստիարակվում են ռևոլյուցիոն մարտիկների կադրերը։*

*Բոլշևիկյան «Պրոլետարի» թերթի ընդլայնած խմբագրության 1909 թվականի խորհրդակցությունում մարքսիստական փիլիսոփայության բնագավառի ռևիզիոնիստները հակահարված ստացան։ Խորհրդակցությունը վճռականորեն դատապարտեց աստվածաշինարարությունը որպես հակամարքսիստական հոսանք։ Այդ որոշումը հսկայական սկզբունքային նշանակություն ունեցավ։ Բոլշևիկներն ուղղակի հայտարարեցին, որ պարտիան չի կարող չեզոք լինել փիլիսոփայության հարցերում և պետք է խնամքով պաշտպանի իր գաղափարական մեծ հարստությունը՝ մարքսիզմը։ Բոլշևիկները պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկն էին համարում մարքսիստական աշխարհայացքի անշեղ պաշտպանությունը բոլոր և ամեն տեսակի ոտնձգություններից։*

*Պարտիայի գաղափարական կյանքում վիթխարի նշանակություն ունեցան պարտիայի վերաբերյալ մարքսիստական ուսմունքի պաշտպանությունն ու հետագա մշակումը Լենինի կողմից։ Ռուսական առաջին ռևոլյուցիան անհերքելիորեն հաստատեց պարտիայի աչքի ընկնող նշանակությունը։ Պատմության մեջ առաջին անգամ մարքսիստական պարտիան հզոր կնիք դրեց ռևոլյուցիայի ընթացքի վրա, պայքարի առաջնորդեց միլիոնավոր բանվորների։ Այդ իսկ պատճառով էլ բուրժուազիան ու նրա լիկվիդատորական ձայնակիցները ամբողջ ուժով ջանում էին ոչնչացնել բանվոր դասակարգի պարտիան։*



*Ռեակցիայի ժամանակաշրջանի իր աշխատություններում Լենինը զարգացրեց մարքսիստական տեսակետը մասսաների պայքարում պարտիայի* ղեկավար դերի *մասին։ Փորձն ակնառու կերպով ցույց էր տալիս, որ մասսաները միանգամից չէ, որ ըմբռնում են պարտիայի և դասակարգային պայքարում նրա դերի անհրաժեշտությունը։ Որքան ավելի գիտակից են մասսաները, որքան ավելի պարզ է նրանց համար դասակարգային խմբավորումը հասարակության մեջ, այնքան ավելի խորն են նրանք հասկանում պարտիայի նշանակությունը, այնքան ավելի բարձր են գնահատում պարտիականությունը։ Բուրժուազիան, ձգտելով բթացնել մասսաների քաղաքական գիտակցությունը, ամեն կերպ քարոզում է բացասական վերաբերմունք դեպի պարտիականությունը, ամեն կերպ փառաբանում է անպարտիականությունը։ Անպարտիականության բուրժուական գաղափարին մարքսիստները հակադրում են պրոլետարական պարտիականության գաղափարը։*

> *«Քաղաքականությունը բառիս լուրջ իմաստով կարող են կերտել միայն* մասսաները,— *գրում էր Լենինը,— իսկ անպարտիական և ամբակուռ պարտիայի հետևից չգնացող մասսան փոշիացած, անգիտակից մասսա է, որն ընդունակ չէ տոկալու և խաղալիք է դառնում ճարպիկ պոլիտիկանների ձեռքին, որոնք մշտապես «ժամանակին» երևան են գալիս տիրապետող դասակարգերից՝ «պատեհ» առիթներն օգտագործելու համար»* (Երկեր, հատ. 19, էջ 542)։

*Լենինը պաշտպանում էր պարտիայի՝ որպես պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևի, նշանակության մարքսիստական ըմբռնումը։*

*Լենինը պարտիային սովորեցնում էր գնահատել կազմակերպության աչքի ընկնող նշանակությունը բանվորական շարժման համար։*

> *«Բանվոր դասակարգի ուժը՝ կազմակերպությունն է։ Առանց մասսաների կազմակերպության՝ պրոլետարիատը ոչինչ է։ Կազմակերպված՝ նա ամեն ինչ է»* (Երկեր, հատ. 11, էջ 395)։

*Ռևոլյուցիայի ժամանակ առաջացան պրոլետարիատի բազմազան կազմակերպություններ, որոնք ընդգրկում էին նրա տարբեր խավերը, հոգում էին բանվորների զանազան կարիքները։ Այդ կազմակերպությունների հետ պարտիայի ունենալիք փոխհարաբերությունների հարցը դարձավ Ռուսաստանի բանվորական շարժման կենսական հարցերից մեկը։*

*Բուրժուազիան ձգտում էր բանվորական կազմակերպությունները կտրել պարտիայից, նրանց հակադրել պարտիային։ Բանվորական շարժման մեջ եղած բուրժուական գործակալները քարոզում էին արհմիությունների և կոոպերատիվների «չեզոքություն», պաշտպանում էին պարտիական գրողի «իրավունքը»՝ հանդես գալու բուրժուական մամուլում ինչպես դա իրեն հարմար թվա, պահանջում էին, որ դումայի ֆրակցիան «անկախ» լինի և նույնիսկ իշխի պարտիայի վրա։ Այդ ուղիով գնալը նշանակում էր այդ կազմակերպություններից դուրս վանել դասակարգային գիտակցականությունը, որի բարձ-*

րագույն կրողը մարքսիստական պարտիան է։ Ոչ-գիտակցական կազմակերպվածությունը, սովորեցնում էր Լենինը, անմտություն է, եթե ոչ ավելի վատ բան, որովհետև դա խաղալիք է դառնում թշնամու ձեռքին։ Պարտիայից «անկախ լինելու» բուրժուական գաղափարին բոլշևիկները հակադրեցին բանվոր դասակարգի մնացած բոլոր կազմակերպությունների նկատմամբ պարտիայի գաղափարական-քաղաքական ղեկավարության մարքսիստական սկզբունքը։

Լենինը զարգացրեց օպորտունիզմի սոցիալական արմատների հարցի վերաբերյալ մարքսիստական հայացքները, բանվորական շարժման և պարտիայի ներսում տեղի ունեցող պայքարի բնույթի ու նշանակության վերաբերյալ հայացքները։ XX դարի սկզբներին և հատկապես 1905 — 1907 թվականների ռևոլյուցիայից հետո սրվեց ռևոլյուցիոն և օպորտունիստական տարրերի պայքարը Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման մեջ։ Այդ պայքարը դասակարգային խոր արմատներ ուներ։ Աշխատանքի և կապիտալի բախումների սրումը, բանվորական շարժման հաջողությունները ուժեղացրին բուրժուազիայի պայքարը պրոլետարիատի դեմ։ Բուրժուազիան բանվորական շարժման մեջ թափանցելու ուղիներ, այդ շարժումն իր ազդեցությանը ենթարկելու եղանակներ է որոնում։ Դասակարգային պայքարի և սոցիալիստական ռևոլյուցիայի գաղափարների դեմ նա հանդես է գալիս դասակարգերի համաձայնության և սոցիալական ռեֆորմների գաղափարներով։ Այդ բուրժուական գաղափարները բանվոր դասակարգի մեջ են բերում օպորտունիստները։

Պրոլետարիատը մեկուսացած չէ մյուս դասակարգերից։ Նա շփվում է մանր բուրժուազիայի հետ, անընդհատ համալրվում է ի հաշիվ խոշոր կապիտալի կողմից քայքայվող մանրբուրժուական խավերի։ Բուրժուազիան սիստեմատիկորեն կաշառում և այլասերում է բանվոր դասակարգի վերնախավին, որն իր ապրելակերպով մոտենում է մանր բուրժուազիային։ Բանվորական շարժման աճումը մանր բուրժուազիայից կողմնակիցներ է ներգրավում նրա շարքերը։ Այդ բոլոր մանրբուրժուական տարրերը բուրժուական ազդեցության հաղորդիչներն են բանվորական շարժման մեջ։ Այստեղից էլ պայքար է առաջանում ռևոլյուցիոներների և օպորտունիստների միջև։

Օպորտունիզմի դեմ մղվող պայքարը բանվորական շարժման օրինաչափություն է։ Այդ պայքարը սոցիալիստական ռևոլյուցիայի նախապատրաստման ու նրա հաղթանակի կարևորագույն պայմանն է։ Առանց օպորտունիստների դեմ ռևոլյուցիոն մարքսիստների վճռական պայքարի պրոլետարական պարտիայի զարգացումն անհնարին է։ Մեկ պարտիայի մեջ ռևոլյուցիոներների և օպորտունիստների խաղաղ «համակեցության» քաղաքականությունը փաստորեն տանում է դեպի օպորտունիզմի հաղթանակը։ Ուստի պարտիան անհաշտ պետք է լինի ոչ միայն օպորտունիստների նկատմամբ, այլև նրանց նկատմամբ, ովքեր, ինչպես ցենտրիստները, կոչ են անում հաշտվել նրանց հետ։ Պարտիան ամրապնդվում է նրանով, որ իրեն մաքրում է օպորտունիստական տարրերից։ Լենինը մատնանշում էր, որ «պրոլետարիատի սոցիալական ռևոլյուցիան չի էլ կարելի պատկերացնել առանց այդ պայքարի», առանց ռևոլյուցիոներների և օպորտունիստների «պարզ սկզբունքային սահմանազատման»՝ այդ ռևոլյուցիայի առաջ, «առանց նոր պատմական ուժի՝ օպորտունիստական, մանրբուրժուական և պրոլետարական, ռևոլյուցիոն տարրերի լիակատար խզման՝ այդ ռևոլյուցիայի ժամանակ» (Երկեր, հատ. 17, էջ 272)։



Նախառևոլյուցիոն և ռևոլյուցիոն տարիների բազմահարուստ փորձի հիման վրա Լենինը բացահայտեց պարտիայի գործունեության կարևորագույն նշանակությունը ռևոլյուցիայի նախապատրաստման համար։ Չպետք է վհատվել այն բանից, ասում էր Լենինը, որ պարտիան նորից ներկայացնում է ոչ-մեծ, անլեգալ կազմակերպություններ, որոնք աննշան, առաջին հայացքից մանր աշխատանք են կատարում մասսաների մեջ։ Այդ աշխատանքը երբեք չի կորչի։ Ռևոլյուցիան Ռուսաստանում ցույց տվեց, որ մասսաների կազմակերպման ու քաղաքական լուսավորման համար մղված համառ պայքարի տարիները լրջորեն նպաստել են ռևոլյուցիայի հասունացմանը։

Ընդհանրացնելով ռևոլյուցիայի փորձը, Լենինը գրում էր.

«Պրոլետարիատի ուժերի նախապատրաստության, նրա դաստիարակության և կազմակերպման երկարատև ժամանակաշրջանը նախորդել է հարյուր-հազարավոր բանվորների այն ելույթներին, որոնք մահացու հարվածներ հասցրին հին ինքնակալությանը Ռուսաստանում։ Պրոլետարիատի դասակարգային պայքարի բոլոր դրսևորումների ղեկավարման երկարատև, անտեսանելի աշխատանքը, ամուր, տոկուն պարտիայի ստեղծման աշխատանքը նախորդել է իսկապես մասսայական պայքարի պայթմանը և ապահովել այդ պայթյունը ռևոլյուցիայի վերածելու պայմանները։ Եվ այժմ պրոլետարիատը, իբրև ժողովրդի առաջավոր մարտնչող, պետք է ամրացնի իր կազմակերպությունը, քերի իր վրայից ինտելիգենտական օպորտունիզմի ամեն մի բորբոս, համախմբի իր ուժերը նույնպիսի տոկուն և համառ աշխատանքի համար» (Երկեր, հատ. 13, էջ 140)։

Լենինյան գաղափարները մեծ նպատակի պայծառ լույսով լուսավորում էին բոլշևիկների անձնվեր աշխատանքը ստոլիպինյան ռեակցիայի խուլ գիշերին։

## 4. ՊԱՐՏԻԱՅԻ ԿՈՂՄԻՑ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ՆՈՐ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ։

Պարտիան հասկանում էր, որ հետռևոլյուցիոն Ռուսաստանը կանգնած է զարգացման երկու հնարավոր ուղիների՝ երկրի լիակատար դեմոկրատական վերափոխման կամ նրա այնպիսի բուրժուական էվոլյուցիայի առջև, որի դեպքում պահպանվում էին միապետությունն ու կալվածատերերի տիրապետությունը։ Ցարիզմը, կալվածատերերն ու բուրժուազիան բոլոր միջոցներով փորձում էին կանխել նոր ռևոլյուցիան և այդ գործում նրանց ջանասիրաբար օգնում էին մենշևիկներն ու էսեռները։ Բոլշևիկները պաշտպանում էին երկրի զարգացման ռևոլյուցիոն ուղին, որը լիովին համապատասխանում էր ժողովրդի կենսական շահերին։ Եվ այդ հարցը լուծել կարող էր միայն ժողովուրդը։ Դա հասկանում էր նաև Ստոլիպինը, որը հայտարարում էր, թե իրեն հարկավոր է «20 տարվա հանգստություն», այսինքն՝ մասսաների հնազանդություն ու նրանց պայքարի բացակայություն՝ իր պլանը կենսագործելու համար։ Բայց ժողովուրդը, որ անցել էր ռևոլյուցիայի բովով, ցարական սևհարյուրյակային կառավարությանը չտվեց այդ «20 տարվա հանգստությունը»։

Բոլշևիկները միակ կազմակերպված ռևոլյուցիոն ուժն էին երկրում։ Մեն-

շևիկների ընդհատակյա կազմակերպությունները կազմալուծվել էին: Էսեռները գտնվում էին գաղափարական ու կազմակերպական քայքայման վիճակում: Ռևոլյուցիայի պարտությունը բոլշևիկներին չընկճեց: Մարքսիստական կոփվածքը, անհողդողդ համոզվածությունը ռևոլյուցիայի գալիք հաղթանակի նկատմամբ, խոր նվիրվածությունը պրոլետարիատի շահերին, անհաշտությունը օպորտունիզմի նկատմամբ բոլշևիկներին օգնեցին հաղթահարելու հսկայական դժվարությունները, նահանջելու կանոնավոր կերպով, պահպանելու մարտունակ կորիզը: Չնայած ժանդարմների ավազակային անընդհատ ասպատակություններին, պարտիական կազմակերպությունները գրեթե ամենուրեք անվնաս մնացին: Բոլոր խոշոր քաղաքներում և արդյունաբերական շրջաններում աշխատում էին պարտիական կոմիտեներ: Խոշոր ձեռնարկություններում պահպանվեցին պարտիական բջիջները կամ բանվորների հետ եղած կապերը: Շատ վայրերում լույս էին ընծայվում թռուցիկներ և անլեգալ պարտիական թերթեր: Մարզային պարտիական կոնֆերենցիաներ կայացան Կենտրոնական արդյունաբերական շրջանում, Պովոլժիեում և Ուրալում, ինչպես նաև տեղական պարտիական կազմակերպությունների՝ կոնֆերենցիաներ՝ Պետերբուրգում, Մոսկվայում, Իվանովո-Վոզնեսենսկում, Նիժնի-Նովգորոդում և այլ քաղաքներում:

Տատանվող մանրբուրժուական տարրերի փախուստը ՌՍԴԲՊ-ից՝ միևնույն ժամանակ նրա զտումն էր, նրա ազատվելը ամենաանկայուն տարրերից, ուղեկիցներից: Պարտիական կազմակերպությունները կոփվեցին ճգնաժամի բովում: Աճեցին առաջավոր բանվորների նոր կադրեր, որոնց ուսերին ընկավ տեղերում կատարվող պարտիական աշխատանքի ամբողջ ծանրությունը:

Հետապնդվելով ոստիկանության խուզարկու շների կողմից, բոլշևիկները չէին դադարեցնում պրոլետարիատի դաստիարակման, կազմակերպման ու համախմբման աշխատանքը: Նրանք անդուլ կերպով պարզաբանում էին գյուղացիներին, որ այլ ելք չկա կարիքից ու աղքատությունից, քան բանվոր դասակարգի հետ միասին և նրա ղեկավարությամբ ցարիզմի տապալման համար պայքարելը:

Պարտիայի կարևորագույն խնդիրն էր՝ պահպանել և ամրապնդել կապերը մասսաների հետ: Այս էր այն բանի հիմնական երաշխիքը, որ Ռուսաստանի զարգացումը կընթանա ոչ թե ստոլիպինյան ուղիով, այլ ռևոլյուցիոն ուղիով: Իսկ դրա համար հարկավոր էր օգտագործել մասսաների մեջ կատարվող աշխատանքի բոլոր հնարավորությունները, մասսաների հետ կապի ամեն մի լեգալ կռվան:

Պրոլետարիատի ռևոլյուցիոն-մարքսիստական դաստիարակության ու կազմակերպման և նրա կողմից գյուղացիության նվաճման գործում լուրջ նշանակություն ունեցավ այն, որ պարտիան օգտագործում էր դումայի ամբիոնը: III Պետական դումայի ընտրությունները ցույց տվին, որ պրոլետարիատը հավատարիմ է մնացել իր պարտիային: Չնայած ոստիկանական տեռորի իրադրությանը, բանվոր դասակարգը դումա ուղարկեց միայն սոցիալ-դեմոկրատներին:

Պառլամենտական տակտիկա մշակելու գործում բոլշևիկներն ստիպված էին ընթանալ սեփական ուղիներով: Արևմտաեվրոպական սոցիալիստների պառլամենտական փորձին պետք էր քննադատաբար մոտենալ: Նրանց պառ-



լամենտական ֆրակցիաների աշխատանքում գերակշռում էր օպորտունիզմը: Միայն մի քանի ամիս գոյություն ունեցած I և II դումաների փորձը մեծ չէր: III դումայում բոլշևիկների գործունեության համար իրադրությունը բացառիկ ծանր էր: Դումայի սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայում կար ընդամենը 19 մարդ, բացի այդ էլ նրա շարքերը զգալիորեն նոսրացել էին. բոլշևիկ Վ. Ե. Կոսորոտովին՝ Ուրալի բանվորների ներկայացուցչին, սևհարյուրյակային դուման հանձնեց ոստիկանությանը, և նրան բանտ նստեցրին: Հինգ դեպուտատներ փախան թշնամու լագերը: Բուն ֆրակցիայում գերակշռում էին մենշևիկները, որոնք դումա էին անցել գերազանցապես մանրբուրժուական ընտրողների ձայներով: Սկզբում ֆրակցիան թույլ տվեց մի շարք լուրջ սխալներ. չէր ընդգծում իր դասակարգային-սոցիալիստական բնույթը, հետևողականորեն չէր պաշտպանում դեմոկրատական պահանջները, չէր մերկացնում կադետների հակառևոլյուցիոն քաղաքականությունը: Պարտիայի, բանվորական կազմակերպությունների կողմից ֆրակցիայի սխալների քննադատությունը հետզհետե ունեցավ իր ներգործությունը, նրա գործունեությունը բարելավվեց:

Պարտիայի դումայական տակտիկայի հիմունքները մշակեց Լենինը: Նա դումայի ֆրակցիան դիտում էր որպես պարտիայի օրգաններից մեկը, որն անմիջականորեն ենթակա է Կենտրոնական Կոմիտեին: Քննադատելով մենշևիկներին, որոնք ֆրակցիային կոչ էին անում մասնակցել դումայի այսպես կոչված օրենսդրական աշխատանքին, Լենինը ձգտում էր հասնել այն բանին, որ դեպուտատները հետևողականորեն պաշտպանեն ժողովրդի շահերը և դումայի ամբիոնից բարձրացնեն մասսաներին հուզող հարցերը: Լենինը մատնանշում էր, որ դեպուտատները պարտավոր են ոչ թե սահմանափակվել դումայում ունեցած գործունեությամբ, այլ աշխատանք կատարել նաև դումայից դուրս, կապվել բանվորական մասսաների հետ, մասնակցել պարտիայի անլեգալ աշխատանքին:

Լենինյան ցուցումներով էլ ղեկավարվում էին բոլշևիկ դեպուտատները: Սևհարյուրյակային դումայի գարշահոտ մթնոլորտում բոլշևիկների ձայնը մարտականորեն էր հնչում: Ֆրակցիայում աչքի ընկնող դեր էր կատարում Պետերբուրգի բանվորների դեպուտատ բոլշևիկ Ն. Գ. Պոլետաևը: Բանվորական դեպուտատները քննադատում էին ցարիզմի արտաքին ու ներքին քաղաքականությունը, նրա մասնակցությունը Իրանում տեղի ունեցող ռևոլյուցիայի ջախջախմանը, սարկացուցիչ փոխառությունները, որոնք ծախսվում էին ոստիկանության ու բանակի վրա, ոստիկանական տեռորը, աշխատավորներին հարկերով ծանրաբեռնելը, ֆինն ժողովրդի ճնշումը: Բոլշևիկ դեպուտատները եռանդուն կերպով դիմադրում էին բանվորների կենսական շահերի դեմ ցարական կառավարության և սևհարյուրյակային դումայի հարձակմանը: Նրանք մշակեցին օրինագծեր ութժամյա աշխատանքային օրվա, արհմիությունների և գործադուլների ազատության մասին, հանդես էին գալիս ստոլիպինյան ագրարային քաղաքականության դեմ, կալվածատիրական հողը առանց հատուցման գյուղացիներին հանձնելու օգտին: Բոլշևիկները դումայի ամբիոնն օգտագործում էին ինքնակալության ռեակցիոն քաղաքականությունը և կադետների դավաճանական վարքագիծը մերկացնելու համար, ժողովրդին քաղաքականապես լուսավորելու և գյուղացիներին բանվոր դասակարգի կողմը գրավելու համար:

Ռեակցիայի իրադրության մեջ պակաս նշանակություն չունեին զանազան լեգալ համագումարները, որպիսիք ցարական կառավարությունն ստիպված էր թույլատրել: Համագումարների աշխատանքին մասնակցում էին բոլշևիկները՝ բանվորական կազմակերպությունների ներկայացուցիչները, որոնք շարադրում էին պարտիայի կարծիքը ժողովրդի կյանքի շատ կարևոր հարցերի վերաբերյալ: Ժողովրդական համալսարանների համագումարում բանվորական խումբը խոսում էր լուսավորությունը ոստիկանության խնամակալությունից ազատելու անհրաժեշտության մասին և ձգտում էր հասնել այն բանին, որ բանվորական կազմակերպություններն իրավունք ունենան իրենք որոշելու պարապմունքների ծրագիրը և դասախոսների կազմը: Խմբի առաջարկած բանաձևը մերժվեց միայն աննշան մեծամասնությամբ: Կանանց համագումարում բանվորուհի պատգամավորները հայտարարում էին, որ բանվորական շարժմանը մասնակցելով միայն կին-պրոլետարուհիները ազատագրման կհասնեն: Ֆաբրիկա-գործարանային բժիշկների համագումարում կար բանվորական խումբ, որը ներկայացնում էր Պետերբուրգի, Մոսկվայի, Կենտրոնական շրջանի, Ուկրաինայի և Անդրկովկասի արհմիությունները: Կոնկրետ փաստերի հիման վրա սոցիալ-դեմոկրատները բացահայտում էին պրոլետարիատի և կապիտալիստների շահերի անհաշտելիությունը: Ի նշան բողոքի ոստիկանության գործողությունների դեմ, բոլոր բանվորական պատգամավորները և բժիշկների մի մասը հեռացան համագումարից, իսկ այնուհետև համագումարի ղեկավարները հարկադրված եղան փակել այն: Այն հաստատուն դիրքը, որ հակաալկոհոլային համագումարում գրավել էր բանվորական խումբը, որը կարողացավ մի շարք բանաձևեր անցկացնել,— կատաղեցրեց ցարական կառավարությանը: Դա «ոչ թե հարբեցողության դեմ պայքարող համագումար է, այլ կառավարության դեմ պայքարող համագումար»,— աղաղակում էր ռեակցիոն մամուլը: Ցարական չինովնիկներն ու հոգևորականության ներկայացուցիչները շտապ հեռացան համագումարից: Գրեթե բոլոր բանվորական պատգամավորները ձերբակալվեցին: Այդ կապակցությամբ դումայի ֆրակցիան անհապաղ հարցապնդում մտցրեց, մերկացնելով ցարական իշխանությունների գործողությունները:

Պետական դուման, լեգալ կազմակերպություններն ու համագումարները լուրջ դեր էին խաղում պարտիայի քաղաքական աշխատանքում: Այդ ամբողջ աշխատանքի կենտրոնում էին գտնվում անլեգալ պարտիական կազմակերպությունները, նրանք էին ռևոլյուցիոն ուղղություն տալիս բոլշևիկների լեգալ գործունեությանը: Այն, ինչ որ պարտիայի ներկայացուցիչները լեգալ հիմնարկներում չէին կարողանում ուղղակի ասել, անլեգալ պարտիական կազմակերպությունները լրացնում էին իրենց թռուցիկներում, ընդհատակյա ժողովներում, բանվորների հետ ունեցած զրույցներում, նրանց հանգեցնելով այն հետևության, որ անհրաժեշտ է համախմբվել որպես կազմակերպված ուժ և ռևոլյուցիոն ճանապարհով տապալել ցարիզմը:

Պարտիական աշխատանքը հաջող էր ծավալվում Պետերբուրգում, Մոսկվայում, Բաքվում և երկրի արդյունաբերական այլ երկրներում: Այստեղ աշխատում էին շատ փորձված ռևոլյուցիոներներ, երբ նրանց հաջողվում էր դուրս պրծնել բանտից կամ աքսորից: Պետերբուրգի կազմակերպության աշխատանքին ակտիվ մասնակցություն էին ցույց տալիս Ի. Ֆ. Դուբրովինսկին, Մ. Ի. Կալինինը, Վ. Վ. Կույբիշևը, Մ. Ս. Օլմինսկին: Մոսկվայում էին աշխատում



Ա. Ս. Բուբնովը, Գ. Ի. Կուրսկին, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Ի. Սկվորցով-Ստեպանովը: Բաքվի կազմակերպության ղեկավարների մեջ էին այնպիսի ականավոր գործիչներ, ինչպես՝ Մեշադի Ազիզբեկովը, Պ. Ա. Ջափարիձեն, Ս. Գ. Շահումյանը, Ս. Ս. Սպանդարյանը, Ի. Վ. Ստալինը, Գ. Կ. Օրջոնիկիձեն: Պետերբուրգի ու Մոսկվայի բոլշևիկներն էին կրում աշխատանքի հիմնական ծանրությունը դումայի և լեգալ համագումարների կապակցությամբ: Նրանք ուժեղ դիրքեր էին գրավում արհմիությունում, որտեղ պարտիական ֆրակցիաներ ստեղծվեցին: Բաքվում բոլշևիկները ղեկավարում էին թե՛ նավթարդյունաբերական բանվորների միությունը, թե՛ արհմիութենական օրգան «Գուդոկ» թերթը, թե՛ բանվորների ինքնակրթության «Գիտությունն ուժ է» ընկերությունը, թե՛ ժողովրդական տունը: Պարտիան լուրջ հաջողություններ ուներ լեգալ հնարավորությունների ռևոլյուցիոն օգտագործման դժվարին գործում: Բոլշևիկներն աստիճանաբար դուրս էին մղում լիկվիդատորներին և լուրջ ուժ դառնում լեգալ կազմակերպություններում:

Պարտիայի աշխատանքում զգալի տեղ էր գրավում ռևոլյուցիայի փորձը մասսաների մեջ տարածելը: Կադետներն ու լիկվիդատորները ջանում էին ռևոլյուցիայի գաղափարը դուրս վանել ժողովրդի գիտակցությունից: Նրանք թուք ու մուր էին թափում ռուսական ռևոլյուցիայի տրադիցիաների վրա, ձգտում էին մասսաներին հեռու պահել պայքարի ռևոլյուցիոն եղանակներից և ամեն կերպ փառաբանում էին «կոնստիտուցիոն ուղին»: Լենինը գրում էր, որ եթե լիբերալների ու մենշևիկների համար ռևոլյուցիան այն բանի օրինակն է, թե ինչ չպետք է անել, ապա բանվոր դասակարգի պարտիայի համար դա այն բանի օրինակն է, թե ինչ պետք է անել: Պարտիան մարտիկների նոր սերունդներ էր դաստիարակում մասսաների պայքարի համաշխարհային-պատմական այն օրինակներով, որ տվել էր ռուսական ռևոլյուցիան:

Լենինը շատ աշխատություններ նվիրեց ռևոլյուցիայի փորձի ընդհանրացմանը և նրա դասերը մասսաների մեջ պրոպագանդելուն: «Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը 1905—1907 թվականների ռուսական առաջին ռևոլյուցիայի մեջ» գրքում Լենինը մշակեց ռևոլյուցիայի տեսության մի շարք պրոբլեմներ: Այդ գրքում զարգացված է պրոլետարիատի ղեկավարությամբ գյուղացիական ռևոլյուցիայի հասկացությունը, հիմնավորված են գյուղում ճորտատիրության մնացորդների ռևոլյուցիոն հեղաբեկման ծրագիրը և հողի ազգայնացման բոլշևիկյան լոզունգը, լուսաբանված են ռևոլյուցիոն պայքարում բանվորների ու գյուղացիների դաշինքի ամրապնդման ուղիներն ու միջոցները:

Լիկվիդատորները թաղված էին հայտարարում պրոլետարիատի հեգեմոնիան: Բայց կյանքն ասում էր, որ բանվոր դասակարգի ազդեցությունը լայն մասսաների մեջ ամրապնդվում է: Պարտիայի կողմից աշխատավորների շահերի հետևողական պաշտպանությունը և դեմոկրատիայի համար մղած աննկուն պայքարը նրա կողմն էին նվաճում մասսաներին: Մերկացնելով կադետներին և քննադատելով տրուդովիկների տատանումները, բոլշևիկներն օգնում էին գյուղացիներին վերացնելու իրենց մոլորությունները: Պարտիայի ազդեցության տակ տրուդովիկները դումայում հաճախ սահմանազատվում էին կադետներից և հանդես էին գալիս սոցիալ-դեմոկրատների հետ միասին: Քաղաքային երկրորդ կուրիայում (որի մեջ էին մտնում մանր բուրժուազիան, ինտելիգենցիան, գործակատարները, բնակարանատեր-բանվորները) 1909

*թվականին Պետերբուրգում կայացած դումայի լրացուցիչ ընտրություններին սոցիալ-դեմոկրատական թեկնածուն հավաքեց ձայների ավելի մեծ տոկոս, քան 1907 թվականի ընտրություններին։ Լեգալ համագումարներում սովորաբար բանվորական խմբերի շուրջն էին համախմբվում բոլոր դեմոկրատական տարրերը։ Ռուսաստանի բանվոր դասակարգի պարտիան ռեակցիայի չտեսնըված ծանր պայմաններում հաջողությամբ պայքարում էր պրոլետարիատի հեգեմոնիայի համար, նոր ռևոլյուցիոն վերելք նախապատրաստելով երկրում։ Այդ վերելքի նշանները որոշակի դրսևորվեցին 1910 թվականի վերջերին։*

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*Ռևոլյուցիայի պարտությամբ ծանր ժամանակներ սկսվեցին երկրի պատմության մեջ և ժողովրդի կյանքում։ Իրենց օպոզիցիոն և ռևոլյուցիոն անվանող բոլոր պարտիաներն էլ չդիմացան դաժան ստուգմանը. նրանք բոլորն էլ կապիտուլյացիայի ենթարկվեցին ռեակցիայի առջև, հրաժարվեցին ռևոլյուցիայից, դավաճանեցին ժողովրդին։ Միայն բոլշևիկների պարտիան չերերաց, չվհատվեց, հաստատակամորեն շարունակելով ամրապնդել իր շարքերը և համառորեն ուժեր հավաքելով ռևոլյուցիոն նոր ճակատամարտերի համար։ Բոլշևիկները գործով ապացուցեցին իրենց նվիրվածությունը ժողովրդին և հավատարմությունը ռևոլյուցիային։ Նրանք պրոլետարիատին տվեցին ռևոլյուցիոն հեռանկար և հաստատուն կերպով պաշտպանում էին աշխատավորների առօրյա կարիքներն ու շահերը։ Ծանր ժամանակներում բանվոր դասակարգն ավելի սերտորեն մերձեցավ բոլշևիկներին, ի դեմս նրանց տեսնելով հավատարիմ բարեկամների և հուսալի ղեկավարների։*

*Ռեակցիայի տարիներին բանվոր դասակարգի պարտիան ենթարկվեց ամեն տեսակ ռենեգատների և վերասերվածների կատաղի գրոհներին։ Լիկվիդատորները, օտզովիստները, տրոցկիստներն ու մյուս ֆրակցիոներ-օպորտունիստները փորձում էին խորտակել անլեգալ մարքսիստական պարտիան, պսակազերծ անել նրան բանվոր դասակարգի աչքում։ Մարքսիզմի թշնամիները առանձնապես կատաղորեն էին հարձակվում պարտիայի տեսական հիմքերի՝ նրա դիալեկտիկական-մատերիալիստական աշխարհայացքի վրա։ Բոլշևիկները դարձան միակ ուժը, որն ամեն գույնի օպորտունիստների դեմ մղած անհաշտ պայքարում պաշտպանեց պարտիան, նրա ռևոլյուցիոն տեսությունը, նրա ռևոլյուցիոն սկզբունքներն ու տրադիցիաները։ Այդ պայքարում բոլշևիզմը գաղափարապես ջախջախեց ռևոլյուցիայի դավաճաններին ու մարքսիզմի թշնամիներին, անվիճելի հեղինակություն և լիակատար գերակշռություն նվաճեց պարտիական կազմակերպություններում, որոնք համախմբվեցին Լենինի և լենինյանների շուրջը։*

*Ռեակցիայի ժամանակաշրջանի ռևոլյուցիոն պայքարը պարտիային հարստացրեց քաղաքական նոր փորձով, պայքարի նոր մեթոդներով և կազմակերպության նոր ձևերով։ Ռևոլյուցիայի ժամանակ բոլշևիկները սովորում էին հարձակվել, ռևոլյուցիայի պարտությունը նրանց սովորեցրեց կազմակերպված կերպով նահանջել, պահպանելով իրենց հիմնական ուժերը։ Պայքարի անմիջական ռևոլյուցիոն եղանակներից պարտիան անցավ պայքարի շրջանցիկ ուղիներին։ Բոլշևիկները հաստատակամորեն ու սիստեմատիկ կերպով տիրապետում էին սեհարյուրյակային ռեժիմի պայմաններում ռևոլյուցիոն ձևով լեգալ աշխատանք կատարելու հմտությանը։ Այդ փորձն անգնահատելի նշանակություն ունեցավ ռևոլյուցիայի գալիք հաղթանակի համար։ Ինչպես մատնանշում էր Լենինը, չի կարելի հաղթել՝ առանց կանոնավոր կերպով հարձակվել և կանոնավոր կերպով նահանջել սովորելու։ Բոլշևիկները միջազգային պրոլետարիատին ցույց տվեցին այն բանի օրինակը, թե մարքսիստական պարտիան ինչպես պետք է ռևոլյուցիոն ձևով օգտագործի բուրժուական լեգալությունը։*

*Ստոլիպինյան ռեակցիայի մռայլ տարիներին բոլշևիկները պահպանեցին անլեգալ մարքսիստական պարտիան՝ բանվոր դասակարգի հիմնական ռևոլյուցիոն ուժը։ Բոլշևիկները Լենինի գլխավորությամբ ամուր պահեցին ռևոլյուցիայի դրոշը, մասսաներին դաստիարակելով ու կազմակերպելով նոր պայքարի համար։*



---

# ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

*Մ. ԱԴՈՆՑ*

*Մեր երկրի սոցիալիստական գյուղատնտեսությունը բուռն վերելք է ապրում: Առաջիկայում այդ վերելքն ավելի հզոր է լինելու:*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումի, հետագա պլենումների և պարտիայի XX համագումարի պատմական որոշումների կենսագործումն ապահովեց մեր գյուղատնտեսության շեշտակի վերելքը: Օրերս ավարտված ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումը հանրագումարի բերելով վերջին հինգ տարիներում երկրի գյուղատնտեսության հոյակապ նվաճումները, նշեց և նրա հետագա զարգացման հրատապ խնդիրները: Պլենումը մի անգամ ևս ապացուցեց պարտիայի Կենտկոմի վարած գծի լենինյան ճշմարտացիությունը:*

*Սոցիալիստական գյուղի աշխատողները պարտիայի ղեկավարությամբ և Սովետական կառավարության ամենօրյա օգնությամբ, օգտագործելով առաջավոր տեխնիկան և գոյություն ունեցող հնարավորությունները, հսկայական հաջողությունների են հասել գյուղատնտեսական արտադրության ընդլայնման գործում: Նշանակալի չափերով բարձրացել է դաշտավարական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը:*

*1958 թվականը ռեկորդային բերքի տարի հանդիսացավ: Բավական է նշել, որ մինչև հոկտեմբերի 1-ը 1958 թվականի բերքից մթերվել է 3 միլիարդ 491 միլիոն փութ հացահատիկ, այսինքն՝ մեկ միլիարդ 329 միլիոն փթով ավելի, քան մթերվել է 1957 թվականին և 1 միլիարդ 592 միլիոն փթով ավելի, քան պետությունը մթերել է 1953 թվականին:*

*Խոշոր տեղաշարժեր են կատարվել գյուղի ներքին կյանքում, առաջին հերթին՝ նրա էկոնոմիկայում:*

***

*Կոլտնտեսային էկոնոմիկայի կարևորագույն հարցերից մեկը աշխատանքի կազմակերպման ու վարձատրության ձևերի բարելավումն ու կատարելագործումն է:*

*ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 6-ի որոշումն իրավունք է տալիս կոլտնտեսություններին, ելնելով գյուղատնտեսական արտադրության կոնկրետ պայմաններից, ինքնուրույն կերպով լուծել աշխատանքի նորմավորման, տարիֆների և աշխատանքի լրացուցիչ վարձատրման հարցերը: Վերևից սահմանված լրացուցիչ վարձատրության կանոնները և մշակված օրինակելի արտադրական նորմաները խոչընդոտում էին կոլտնտեսությունների նախաձեռնության ծավալմանը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրման ձևերի կատարելագործմանը:*



*1956 թվականի մարտի 6-ի որոշումից հետո կոլտնտեսություններում
արմատավորված աշխատանքի կազմակերպման և նյութական խրախուսանքի
բազմաթիվ ձևեր կարոտ են տնտեսագիտական վերլուծության, առանց որի
հնարավոր չէ պարզել այդ ձևերի արժանիքները և թերությունները: Տեղերում
աշխատանքի նորմաներ սահմանելիս հաշվի են առնվում յուրաքանչյուր առան-
ձին կոլտնտեսության հողա-կլիմայական պայմանները, աշխատանքի որակը,
աշխատանքի ծանրությունը, աշխատանքի սեզոնը, արտադրության ճյուղի
տնտեսական կարևորությունը և այլն: Այդ ձևով կազմված նորմաները խթա-
նում են կոլտնտեսային արտադրության արագ զարգացմանը:*

*Սակայն, բոլոր դեպքերում չէ, որ տեղերում սահմանված նորմաները
հաջող են լինում: Մեր որոշ կոլտնտեսություններում աշխատանքի նորմավոր-
ման հարցերի նկատմամբ լուրջ վերաբերմունք չեն ցուցաբերում. նորմաները
սահմանվում են մոտավորապես, աչքաչափով, առանց տեխնիկա-տնտեսա-
կան հիմնավորման: Այդ ձևով սահմանված արտադրական նորմաները չեն
կարող նպաստել աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:*

*Կոլտնտեսությունների կողմից սահմանված արտադրական նորմաների
թերություններից մեկը՝ դա դրանց խիստ խայտաբղետությունն է: Երբեմն
նույն տեսակի աշխատանքի համար սահմանված արտադրական նորմաները,
համարյա նույն հողակլիմայական պայմաններում գտնվող երկու հարևան
կոլտնտեսություններում, իրարից խիստ տարբերվում են: Երբ աշխատանքի
նույն ծավալը տարբեր կոլտնտեսություններում աշխօրերով տարբեր գնահա-
տական է ստանում, այդ դեպքում աշխօրն աշխատանքի չափի իր ֆունկցիան
հաջողությամբ կարողանում է կատարել միայն տվյալ կոլտնտեսության ներ-
սում, իսկ հասարակական մասշտաբով կատարված աշխատանքի քանակու-
թյունը ճիշտ արտահայտել չի կարողանում:*

*Սևանի շրջանում ուսումնասիրված ութ կոլտնտեսություններից չորսում
հացահատիկի ձեռքի ցանքի օրվա նորման սահմանված է՝*

| | | | |
|---|---|---|---|
| Ծաղկունքի կոլտնտեսությունում | 1 հեկտ., որը գնահատված է | . | 0,5 աշխօր |
| Գոմաձորի » | 2 » | » . | 2,0 » |
| Վարսերի » | 4 » | » . | 1,7 » |
| Լճաշենի » | 5 » | » . | 1,5 » |

*Ինչպես ցույց են տալիս բերված թվերը, հացահատիկի ցանք կատարելու
օրվա նորման Լճաշենի կոլտնտեսությունում հինգ անգամ բարձր է Ծաղկուն-
քի կոլտնտեսությունում գործող նորմայից, իսկ մեկ հեկտար ցանքի աշխա-
տանքը աշխօրերով Լճաշենի կոլտնտեսությունում՝ 3,3 անգամ ցածր է գնա-
հատված, քան Գոմաձորի կոլտնտեսությունում:*

*Ծխախոտի ցանքատարածությունների փխրեցման օրվա նորման Նոյեմ-
բերյանի շրջանի կոլտնտեսություններում հետևյալն է. Կողբի կոլտնտեսու-
թյունում՝ 800 քառակուսի մետր, Նոյեմբերյանի կոլտնտեսությունում՝ 500 քա-
ռակուսի մետր, իսկ Արճիսի կոլտնտեսությունում՝ 350 քառակուսի մետր: Եթե
աշխատանքի նույն տեսակի համար այդ երեք կոլտնտեսությունները սահ-
մանել են տարբեր նորմաներ, ապա աշխատանքի տարբեր ծավալներին
նրանք բոլորն էլ տվել են նույն գնահատումը՝ 1,25 աշխօր:*

*Ինչպես երևում է, նույնիսկ նույն շրջանի տարբեր կոլտնտեսություննե-
րում գործող աշխատանքի նորմաները չափազանց խայտաբղետ են. ավելի
խայտաբղետ է նույն տեսակի ու ծավալի աշխատանքի գնահատումը աշխ-*

օրերով։ Գործի այդպիսի վիճակը վկայում է այն մասին, որ մեր կոլտնտեսություններում միշտ չէ, որ սահմանվում են տեխնիկապես ու տնտեսագիտորեն հիմնավորված նորմաներ։

Իհարկե, ճիշտ չէր լինի, եթե հաշվի չառնեինք յուրաքանչյուր կոլտնտեսության կոնկրետ պայմանները և ամբողջ երկրի մասշտաբով սահմանեինք աշխատանքի միասնական նորմաներ։ Նույնիսկ նույն հողակլիմայական պայմաններն ունեցող կոլտնտեսություններում գործող աշխատանքի նորմաները ևս կարող են տարբեր լինել, սակայն այդ տարբերությունները չպետք է չափազանց մեծ լինեն։

Աշխատանքի նորմաների մեծ խայտաբղետություն գոյություն ունի նաև յուրաքանչյուր առանձին կոլտնտեսության արտադրության տարբեր ճյուղերում։ Առանձնապես մեծ են դաշտավարության և անասնաբուծության աշխատողների աշխատանքի վարձատրման մակարդակների տարբերությունները։ Այսպես, օրինակ, Շամշադինի շրջանի Ծաղկավան գյուղի կոլտնտեսությունում դաշտավարության մեջ 1957 թվականին զբաղված են եղել աշխատող կոլտնտեսականների 70 տոկոսը, որոնք վաստակել են կոլտնտեսության բոլոր աշխօրերի 49,2 տոկոսը, իսկ անասնաբուծության բնագավառում զբաղված են եղել աշխատող կոլտնտեսականների 16 տոկոսը, որոնք վաստակել են բոլոր աշխօրերի 26 տոկոսը։ Նոյեմբերյանի շրջկենտրոնի կոլտնտեսությունում դաշտավարության մեջ զբաղված են եղել աշխատողների 49,2 տոկոսը, որոնք ստացել են բոլոր աշխօրերի միայն 28 տոկոսը, իսկ անասնաբուծության մեջ զբաղված են եղել աշխատողների 18 տոկոսը, որոնք ստացել են բոլոր աշխօրերի 28,5 տոկոսը։

Սակայն, անվիճելի է նաև այն, որ անասնաբուծության բնագավառի աշխատանքն ավելի ծանր է, նրա աշխատողներն աշխատանքի մեջ են լինում համարյա թե ամբողջ տարվա ընթացքում և երբեմն էլ իրենց ընտանիքից հեռու վայրերում։ Այդ ամենի պատճառով էլ անասնաբուծության աշխատողների եկամուտները որոշ չափով պետք է բարձր լինեն դաշտավարության գծով աշխատողների տարվա եկամուտներից։

Այսպիսով, կոլտնտեսային աշխատանքի նորմավորման և տարիֆիկացման կարևոր խնդիրներից մեկն էլ պրոպորցիաների սահմանումն է տնտեսության տարբեր ճյուղերի աշխատողների աշխատանքի վճարման մակարդակների միջև։

Հաճախ մեծ քանակությամբ աշխօրեր են ծախսվում օժանդակ, ոչ արտադրողական և թեթև աշխատանքի համար։ Քիչ չէ այն կոլտնտեսությունների թիվը, որտեղ մեծ քանակի աշխօր են վաստակում պահեստապետները, նամակատարները, հաշվետարները, պահակները, մարդատար մեքենաների վարորդները և այլն։ Այդ պատճառով էլ հեշտ աշխատանքի սիրահարները ամեն կերպ ձգտում են հաշվետարի կամ պահեստապետի պաշտոն ստանալ։

Աշխատանքի նորմավորումն ու տարիֆիկացումը կոլտնտեսություններում այնպես պետք է կազմակերպել, որ նյութական շահագրգռվածություն ստեղծվի կոլտնտեսականների մեջ, առաջին հերթին, աշխատելու նյութական բարիքների արտադրության ոլորտում։ Կոլտնտեսության հանրային տնտեսությունից յուրաքանչյուր կոլտնտեսականի ստացած եկամուտը պետք է համապատասխանի նրա կատարած աշխատանքի արդյունքին։ Այդ սկզբունքը պետք է տարածվի նաև կոլտնտեսության ղեկավար կազմի վրա։



Հայտնի է, որ մեր կոլտնտեսությունների նախագահների և մնացած ղեկավար աշխատողների դերը փոքր չէ կոլտնտեսային արտադրության զարգացման և կոլտնտեսությունների տնտեսական ամրապնդման գործում։ Սակայն այդ չի նշանակում, որ կոլտնտեսության ղեկավարների աշխատանքի վճարումը չպետք է կատարել նրանց տնտեսական գործունեության արդյունքներին համապատասխան։

Կոլտնտեսությունների ղեկավար կազմի աշխատանքի վարձատրության սիստեմի թերություններից մեկն էլ նրա բարդությունն է. վճարումը կատարվում է բազմաթիվ ցուցանիշների հաշվարկման հիման վրա։ Կոլտնտեսության նախագահի վաստակած աշխօրերի քանակը սահմանվում է՝ ելնելով գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունից, անասունների գլխաքանակից, դաշտավարության ու անասնաբուծության ցուցանիշներից։ Լրացուցիչ վարձատրությունը ևս կատարվում է տնտեսության տարբեր ճյուղերի բազմաթիվ ցուցանիշների գծով։ Երբեմն պատահում է, որ կոլտնտեսությունն ամբողջությամբ վերցրած իր պլանները չի կատարում, բայց գերակատարում է տնտեսության որևէ երկրորդական ճյուղի պետական առաջադրանքը, որի համար կոլտնտեսության ղեկավար աշխատողները լրացուցիչ վարձատրման կարգով ստանում են մեծ եկամուտներ։

Աշխատանքի վճարման գործող սիստեմների թերություններից մեկն էլ այն է, որ որոշ դեպքերում լրացուցիչ վճարումների զգալի մասը ստանում են ղեկավար աշխատողները, իսկ համեմատաբար փոքր մասը՝ արտադրության մեջ աշխատող կոլտնտեսականները։ Օրինակ. 1957 թվականին Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի կոլտնտեսությունը բրդի արտադրության տարեկան պլանը մոտ 2 տոննայով գերակատարելու համար լրացուցիչ վարձատրման կարգով բաշխել է 97 ոչխար։ Կոլտնտեսության նախագահն ստացել է 10 ոչխար, ֆերմայի վարիչը՝ 15 ոչխար, հաշվապահը՝ 5, զոոտեխնիկը՝ 5 և անասնաբույժը՝ 4 ոչխար։ Այսպիսով, լրացուցիչ կարգով բաշխված 97 ոչխարներից Աչաջրի կոլտնտեսության 5 ղեկավար աշխատողները ստացել են 42 ոչխար, իսկ ֆերմայի 32 շարքային աշխատողները միասին վերցրած՝ 55 ոչխար. այսինքն՝ լրացուցիչ վարձատրման կարգով մեկ ղեկավար աշխատողը միջին հաշվով ստացել է 8 ոչխար, իսկ ֆերմայում աշխատող շարքային կոլտնտեսականը՝ 1 — 2 ոչխար։

Մարտունու շրջանի Վարդենիկ գյուղի կոլտնտեսությունը 1957 թվականի ծխախոտի մթերման պլանը գերակատարելու կապակցությամբ ստացել է 80 հազար ռուբլի՝ պարգևատրման համար։ Այդ գումարից 43 հազար ռուբլին, այսինքն՝ կեսից ավելին ստացել են կոլտնտեսության նախագահը և նրա տեղակալը, հաշվապահը, գյուղատնտեսը և բրիգադավարը, իսկ մնացած 37 հազար ռուբլին ստացել են կոլտնտեսության 200 ծխախոտագործները միասին վերցրած։

Կոլտնտեսականը, որպես կանոն, իր եկամտի գերակշռող մասը պետք է ստանա կոլտնտեսության հանրային տնտեսությունից, ուղղակի գործավարձի կարգով։ Մինչդեռ երբեմն պատահում է, որ կոլտնտեսականի ընդհանուր եկամտի մեջ գերակշռում է լրացուցիչ վարձատրության կարգով ստացվող եկամուտը։ Այդ առթիվ բերենք միայն մեկ օրինակ. Կրասնոսելսկի շրջանի Բաշքենդ գյուղի կոլտնտեսությունն այս տարի 210 հեկտար կարտոֆիլի ցանքն ամրացրել է կոլտնտեսականներին՝ անհատական կարգով մշակելու.

յուրաքանչյուր կոլտնտեսականի ամրացված է մեկ քառորդ հեկտար (2500 ք. մետր) հողամաս և պլանային առաջադրանք է սահմանված այդ տարածությունից ստանալ 1700 կիլոգրամ կարտոֆիլ: Այդ առաջադրանքը գերակատարելու դեպքում կոլտնտեսականը որպես լրացուցիչ վարձատրություն ստանում է գերակատարածի 50 տոկոսը: Բերված տվյալներից երևում է, որ կոլտնտեսությունը կարտոֆիլի մեկ հեկտարի բերքատվության պլան է սահմանել 6,8 տոննայի չափով, որը շատ ցածր է և հեշտությամբ կարելի է գերակատարել: Եվ, պատահական չէ, որ այդ կոլտնտեսությունում կարտոֆիլի կուլտուրայի մշակմամբ զբաղվող համարյա թե բոլոր կոլտնտեսականները գերակատարել են սահմանված պլանային առաջադրանքը և լրացուցիչ վարձատրման կարգով ստացել շատ կարտոֆիլ: Այսպես, կոլտնտեսության անդամ Հայկուշ Քեշիշյանը 2500 ք. մետր տարածությունից պետք է ստանար 1750 կգ. կարտոֆիլ, բայց փաստորեն հավաքել է 7110 կգ. և որպես լրացուցիչ վարձ ստացել 2660 կգ. կարտոֆիլ: Նույն կոլտնտեսության անդամ Վարսենիկ Գալստյանը 2900 ք. մետր տարածությունից պետք է կոլտնտեսության պահեստին հանձներ 2030 կգ. կարտոֆիլ, փաստորեն հանձնել է 6120 կգ. և որպես լրացուցիչ վարձատրություն ստացել է 2040 կգ. կարտոֆիլ: Թվարկված կոլտնտեսականները լրացուցիչ վարձատրության կարգով ավելի շատ եկամուտ են ստացել, քան թե ուղղակի գործավարձից:

Աշխատանքի նորմավորման և վարձատրության այդպիսի կարգն ավելի է մեծացնում կոլտնտեսականների ստացած եկամուտների քանակային տարբերությունները: Նույն կոլտնտեսության մեջ բարեխղճորեն աշխատող երկու կոլտնտեսականներից մեկի եկամուտը մյուսից 1,5 — 2 անգամ բարձր է լինում: Այդ հակասում է բաշխման սոցիալիստական սկզբունքին:

Որոշ կոլտնտեսություններում չափազանց մեծ են կոլտնտեսության նախագահի, ղեկավար մյուս աշխատողների և շարքային կոլտնտեսականների եկամուտների տարբերությունները: Օրինակ. 1957 թվականին Էջմիածնի շրջանի Լենինի անվան կոլտնտեսության նախագահը ստացել է, դրամով և մթերքներով միասին վերցրած, 86300 ռուբլու եկամուտ, որը շարքային կոլտնտեսականների միջին եկամտից ավելի է 7,4 անգամ:

Սևանի շրջանի Լճաշեն գյուղի կոլտնտեսության նախագահի 1957 թվականի եկամուտը 18,3 անգամ գերազանցել է շարքային կոլտնտեսականի միջին եկամտից: Այդ կոլտնտեսության նախագահի 1957 թվականի եկամուտները կազմված են հետևյալ բաղադրամասերից.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Դրամական եկամուտ | — 13836 ռուբլի | | | | |
| Հացահատիկ | — 59 | ցենտներ, | 11630 | ռուբլու | արժեքով |
| Կարտոֆիլ | — 41 | » | 3280 | » | » |
| Բանջարեղեն | — 8 | » | 600 | » | » |
| Խոտ | — 35 | » | 1050 | » | » |
| Ծղոտ | — 17 | » | 306 | » | » |
| Յուղ | — 78 | կիլոգրամ | 1872 | » | » |
| Պանիր | — 350 | » | 3500 | » | » |
| Ընդամենը դրամով | | | 36074 | ռուբլի | |

Թվարկված մթերքները գնահատված են, այսպես կոչված, կոլտնտեսային գներով. շուկայական գներով գնահատելու դեպքում տարվա եկամտի ընդհանուր գումարն ավելի կմեծանար: Ակնհայտ է, որ Լճաշենի կոլտնտեսության նախագահի ընտանիքն ինչքան էլ որ բազմանդամ լինի, մեկ տարում չի կարող սպառել 59 ցենտներ հացահատիկ, 41 ցենտներ կարտոֆիլ, 350 կիլոգրամ պանիր և այլն: Պարզ է, որ մթերքների ավելցուկը կոլտնտեսության նախագահը պետք է վաճառի կոլտնտեսային շուկայում, այսինքն՝ անձնապես կապվի անկազմակերպ շուկայի հետ:



Որոշ կոլտնտեսությունների ղեկավար աշխատողներ ստանալով խոշոր եկամուտներ, իրենց ընտանիքի անդամներին մասնակից չեն դարձնում կոլտնտեսության արտադրական աշխատանքներին, որով և լավ օրինակ չեն տալիս շարքային կոլտնտեսականներին: Ճիշտ է վարվել Շամշադինի պարտշրջկոմը, որ հատուկ աշխատանք է տարել գյուղի ղեկավար աշխատողների ընտանիքների աշխատունակ անդամներին կոլտնտեսային աշխատանքի մեջ ընդգրկելու ուղղությամբ: Շամշադինի պարտշրջկոմը գործն այնպես է կազմակերպել, որ կոլտնտեսությունները գյուղի, ինչպես նաև շրջկենտրոնի ծառայողների ընտանիքներին տրամադրել են որոշ հողամասեր, գլխավորապես եգիպտացորենի ցանք, որպեսզի նրանք մշակեն և բերքը հանձնեն կոլտնտեսությանը: Այդ փորձը տվել է իր դրական արդյունքները:

Նորմալ երևույթ չէ, երբ կոլտնտեսության նախագահը շարքային կոլտնտեսականի համեմատությամբ 6—10 անգամ ավելի եկամուտ է ստանում: Մեր կարծիքով լավ կլիներ, որ կոլտնտեսությունները սահմանեին կոլտնտեսության նախագահի տարեկան եկամտի առավելագույն չափը, իհարկե, հաշվի առնելով նրա աշխատանքի ծավալը և բարդությունը:

Մարքսիզմ-լենինիզմն ուսուցանում է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում աստիճանաբար վերանում են մտավոր ու ֆիզիկական, ինդուստրիալ և գյուղատնտեսական աշխատանքի միջև եղած տարբերությունները, դրա հետ միասին քանի գնում փոքրանում է աշխատանքի վարձատրության մակարդակների տարբերությունը:

Կոլտնտեսականների եկամուտների ծավալը որոշելիս պետք է հաշվի առնել նաև օժանդակ տնտեսությունից ստացվող եկամուտների քանակը: Կոլտնտեսությունների հասարակական տնտեսության զարգացման հետ միասին գնալով նվազելու է օժանդակ տնամերձ տնտեսությունների դերն ու նշանակությունը:

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959 — 1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում ասված է. «Կոլտնտեսային արտադրության զարգացման համեմատ, այն պայմաններում, երբ կոլտնտեսությունները դարձել են առաջավոր տեխնիկայով զինված խոշոր տնտեսություններ և ունեն որակյալ կադրեր, կոլտնտեսականների նյութական ու կենցաղային պահանջմունքներն ավելի ու ավելի մեծ չափով կբավարարվեն հանրային տնտեսության հաշվին, ուստի կոլտնտեսությունների անհատական օժանդակ տնտեսությունը հետզհետե կկորցնի իր նշանակությունը»:

Հենց այժմ էլ կոլտնտեսականների եկամուտների գլխավոր աղբյուրը ոչ թե օժանդակ տնտեսությունն է, այլ կոլտնտեսության հանրային տնտեսությունը: Սակայն մեր կոլտնտեսություններում որոշ կոլտնտեսականներ չարաշահելով իրենց իրավունքները և օգտվելով կոլտնտեսությունների ղեկավարների թողտվությունից, իրենց օժանդակ տնտեսությունն այնքան են մեծացրել, որ այն դարձրել են եկամտի գլխավոր աղբյուր. ընտանիքի աշ-

խատող ձեռքերը հազիվ կարողանում են սպասարկել իրենց օժանդակ տնտեսությունը և այլևս հնարավորություն չեն ունենում աշխատել կոլտնտեսության հանրային տնտեսության մեջ։

Ալավերդու շրջանի Թումանյան գյուղի կոլտնտեսության անդամ Շարբաթ Աղաբեկյանի ընտանիքի չորս աշխատունակ անդամներն այս տարի վաստակել են միայն 4 աշխօր, այսինքն՝ յուրաքանչյուրը մեկական աշխօր։ Շ. Աղաբեկյանի օժանդակ տնտեսությունում կա 4 խոշոր եղջերավոր անասուն, որոնցից՝ 3 կով, 6 մանր եղջերավոր անասուն, 10 խոզ, մեկ ձի։ Նույն շրջանի Լորուտ գյուղի կոլտնտեսության անդամ Աղալո Սարգսյանի օժանդակ տնտեսությունն ունի 5 խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 3 կով, 7 մանր եղջերավոր անասուն, 2 ձի և 8 մեղվի փեթակ։ Աղալո Սարգսյանի ընտանիքը կազմված է 6 շնչից, որոնցից 2-ը աշխատող են և տարվա ընթացքում ոչ մի աշխօր չեն վաստակել։ Իրականում, թվարկված անձինք մենատնտեսներ են, որոնք անօրինական կերպով օգտվում են կոլտնտեսականի բոլոր արտոնություններից։

Մեր կոլտնտեսությունները պետք է ճշտեն կոլտնտեսականների օժանդակ տնտեսության չափը և խստորեն հետևեն, որ իրենց ընդունած որոշումը ոչ ոք չխախտի։ Այդ հարցում կոլտնտեսություններին պահանջվող օգնություն պետք է ցույց տան շրջանային կազմակերպությունները։ Վերջիններս սիստեմատիկորեն պետք է զբաղվեն կոլտնտեսային շինարարության հարցերով։ Աշխատավորների դեպուտատների շրջսովետների գործադիր կոմիտեները պետք է քննարկեն կոլտնտեսությունների ընդհանուր ժողովների որոշումները կոլտնտեսային ներքին տնտեսական կյանքի կարևոր հարցերի մասին, և եթե այդ որոշումներում սխալներ կան, օգնեն կոլտնտեսություններին դրանք ուղղելու։ Օրինակ, եթե կոլտնտեսության ընդհանուր ժողովի որոշմամբ կոլտնտեսության նախագահի և մնացած ղեկավար աշխատողների համար սահմանված է չհիմնավորված բարձր վարձատրություն, շրջանային գործադիր կոմիտեն այդպիսի որոշումը կարող է չհաստատել և պետք է խորհուրդ տա կոլտնտեսությանը՝ այդ սխալն ուղղելու։

Կոլտնտեսությունների եկամուտների աճման ու տնտեսական ամրապնդման հիմքի վրա առաջացել են աշխատանքի վճարման մի շարք նոր ձևեր, որոնք տարեցտարի կատարելագործվում են և տարածվում շատ կոլտնտեսություններում։

Աշխատանքի վճարման նոր ձևերից առանձնապես ուշադրության արժանի են երեքը. վաստակած աշխօրերի ամսական ավանսավորումը, աշխօրերի եկամտի ամսական լրիվ վճարումը նախօրոք երաշխավորված չափով և աշխատանքի լրիվ դրամական վճարումն առանց աշխօրերի։

Ներկա էտապում, երբ նշանակալի չափով ավելացել է կոլտնտեսային արտադրության ապրանքային ելույթը, սահմանվել է գյուղատնտեսական մթերքների մթերումների մեկ միասնական ձև՝ կոլտնտեսությունների և պետության համար ձեռնտու գներով, երբ կոլտնտեսությունները մինչև բերքահավաքը ամեն ամիս խոշոր դրամական եկամուտներ են ունենում անասնաբուծական և մի շարք այլ մթերքների վաճառքից և, բացի այդ, մթերող կազմակերպություններից կանխավճարներ են ստանում կոնտրակտացիայի կարգով հանձնվելիք մթերքների դիմաց, հնարավոր է դարձել ամեն ամիս կա-



նոնավոր ձևով կոլտնտեսականների վաստակած աշխօրերի դիմաց դրամական ավանս տալը։

1956 թվականին մեր երկրի կոլտնտեսությունների մոտ 40 տոկոսը կոլտնտեսականների վաստակած աշխօրերի ավանսավորում են կատարել։ Ուզբեկստանում վաստակած աշխօրերի ամսական ավանսավորում են կատարել կոլտնտեսությունների 71 տոկոսը, Թուրքմենստանում՝ 81 տոկոսը։

1957 թվականին Հայկական ՍՍՌ-ում վաստակած աշխօրերի ամսական դրամական ավանսավորում են կատարել միայն չորս կոլտնտեսություն։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 96,4 տոկոսը կոլտնտեսականների վաստակած աշխօրերի ավանսավորում են կատարել միայն ըստ եռամսյակների, կամ լավագույն դեպքում՝ երկու ամիսը մեկ անգամ։ Իսկ 25 կոլտնտեսություններում տարվա ընթացքում ոչ մի ավանսավորում չեն կատարել։

Ինչպես երևում է, կոլտնտեսականների վաստակած աշխօրերի ավանսավորման գործը մեր ռեսպուբլիկայում այնքան էլ լավ վիճակում չէ։

Ավանսավորման դեպքում կոլտնտեսականը նախօրոք, մինչև բերքի բաշխումը, ստանում է իր վաստակած աշխօրի արժեքի մի մասը, իսկ վերջնական հաշվարկը կատարվում է տարեվերջին։

Այժմ շատ կոլտնտեսություններ, որոնք տնտեսապես բավականին ամրապնդվել են, վաստակած աշխօրերի ավանսավորումից անցել են վաստակած աշխօրերի եկամտի երաշխավորված լրիվ ամսական վճարմանը։ Վերջին դեպքում կոլտնտեսականը յուրաքանչյուր ամիս ստանում է իր վաստակած աշխօրերի արժեքի ոչ թե մի մասը, այլ պլանով նախատեսված լրիվ արժեքը։ Այս դեպքում ևս աշխօրի պլանային եկամուտը սահմանելիս ապահովագրման նպատակով որոշ ռեզերվ են թողնում և այդ մնացորդը բաշխում են տարեվերջին։

Կոլտնտեսականների վաստակած աշխօրերի եկամտի երաշխավորված լրիվ ամսական վճարման պրակտիկան ամբողջովին ժխտում է սովետական որոշ տնտեսագետների այն սխալ կարծիքը, որ իբր թե աշխատանքի նախօրոք երաշխավորված վճարում կարելի է կատարել միայն պետական ձեռնարկություններում։ Սոցիալիստական սեփականության երկու ձևերի, ավելի ճիշտ՝ պետական և կոլտնտեսային ձեռնարկությունների տարբերիչ գծերից մեկն այն է, որ առաջինում կատարվում է աշխատանքի նախօրոք երաշխավորված չափով վճարում դրամով, իսկ երկրորդում վճարման չափը նախօրոք չի երաշխավորվում և վճարումը կատարվում է ո՛չ միայն դրամով, այլև նատուրայով։ Կոմունիստական հասարակարգի կառուցման ներկա էտապում սոցիալիստական սեփականության երկու ձևերի այդ տարբերիչ գիծն աստիճանաբար վերանում է։

Աշխօրերի եկամտի ամսական լրիվ վճարումը կատարվում է երկու ձևով. առաջինը՝ դրամով ու մթերքներով, երկրորդը՝ միայն դրամով։

Այնտեղ, որտեղ աշխօրերի վճարումը կատարվում է միայն դրամով, աշխօրը վեր է ածվում միջանկյալ օղակի, այսինքն՝ կոլտնտեսականի կատարած աշխատանքն սկզբում չափում են աշխօրով և ապա վաստակած աշխօրերի քանակին համապատասխան հաշվարկում են ստանալիք դրամի գումարը։ Այդպիսի դեպքերում աշխօրը կորցնում է իր նախկին դերն ու նշանակությունը և այդ պատճառով էլ շատ կոլտնտեսություններ, որոնք ունեն դրա-

մական խոշոր եկամուտներ, գերադասում են հրաժարվել աշխօրերի օգտագործումից և անցնում են կատարված աշխատանքի քանակի դրամական գնահատմանն այնպես, ինչպես որ այն կատարվում է սովետական տնտեսություններում կամ արդյունաբերական ձեռնարկություններում։

Այն կոլտնտեսությունները, որոնք անցել են աշխատանքի դրամական վճարմանը, իրենց արտադրանքի որոշ մասը, սահմանված նորմաներով, վաճառում են կոլտնտեսականներին կոմիսիոն կամ պետական մանրածախ գներով և երբեմն էլ՝ ինքնարժեքով։

Կոլտնտեսություններում աշխատանքի դրամական վարձատրության սիստեմին անցնելու համար նախօրոք պետք է վերանայվեն ու ճշտվեն բոլոր տեսակի աշխատանքների նորմաները և սահմանվեն դրամական վարձագներ։ Այդ աշխատանքը պետք է հանձնարարել նորմավորման գործին տիրապետող փորձված մարդկանց։ Վատ չէր լինի, եթե յուրաքանչյուր խոշոր կոլտնտեսություն ունենար իր նորմավորողը։ Ընդհանրապես նորմավորման գործը կարճատև կամպանիա չէ, սիստեմատիկաբար պետք է ճշտվեն գործող նորմաները, իսկ նոր աշխատանքների համար սահմանվեն նոր նորմաներ։ Տրակտորները, կոմբայնները և այլ մեքենաներ կոլտնտեսություններին վաճառելուց հետո և ընդհանրապես գյուղատնտեսության տեխնիկական պրոգրեսի հետ միաժամանակ անընդհատ պետք է վերանայվեն ու ճշտվեն աշխատանքի նորմաները։

Աշխատանքի դրամական վճարմանն անցնելու գործում կոլտնտեսություններին գործուն օգնություն պետք է ցույց տան նաև ռեսպուբլիկայի համապատասխան գիտահետազոտական հիմնարկությունները։

Հայկական ՍՍՌ-ում աշխօրերով դրամական երաշխավորված ամսական վճարման սիստեմին են անցել երեք կոլտնտեսություն. Սպիտակի շրջանի Արտագյուղի, Ախտայի շրջանի Ֆանտան գյուղի և Բայազետի շրջանի Նորադուզ գյուղի կոլտնտեսությունները։ Երեք կոլտնտեսություններ էլ անցել են առանց աշխօրերի դրամական վճարման սիստեմին՝ Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունը և Իջևանի շրջանի Սարիգյուղի ու Ենոքավանի կոլտնտեսությունները։

Այս տարվանից այդ կոլտնտեսություններում ստեղծվում են բաշխման փոխանցիկ խոշոր ֆոնդեր, որոնք հնարավորություն կտան խուսափելու ամեն տեսակ պատահականություններից և նույնիսկ բնական աղետների դեպքում նախատեսված չափերով կապահովեն կոլտնտեսականների աշխատանքի վճարումը։

Դրամական վարձատրության անցած կոլտնտեսություններում նշանակալի չափերով բարձրացել է կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը. բոլորն ակտիվ կերպով մասնակցում են գյուղատնտեսական արտադրության աշխատանքներին, նույնիսկ քաղաք գնացած որոշ կոլտնտեսականներ նորից վերադարձել են գյուղ։

Ռեսպուբլիկայի և գյուղական շրջանների համապատասխան կազմակերպությունները պետք է մտածեն մեր կոլտնտեսություններում և, առաջին հերթին, տնտեսապես ամրապնդված կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպման ու վարձատրման նոր ձևերը լայնորեն արմատավորելու մասին։



Սոցիալիստական գյուղատնտեսության ընդլայնված վերարտադրության ապահովումը և ժողովրդական տնտեսության կոլտնտեսային սեկտորի նյութական-արտադրական բազայի հետագա զարգացումը պահանջում են անընդհատ ավելացնել ու բազմապատկել կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի մեջ են մտնում՝ արտադրական շենքերը և կառուցվածքները, մթերատու և բանող անասունները, տրանսպորտային միջոցները, գյուղատնտեսական մեքենաները և գործիքները, արհեստանոցներն ու օժանդակ ձեռնարկությունները, այգիները, կամ, ավելի ճիշտ արտահայտած, բազմամյա տնկիները, կուլտուր-կենցաղային նպատակներին ծառայող շենքերը և դրամական ու նյութական այն միջոցները, որոնք նախատեսված են հասարակական արտադրության ընդլայնման համար։

Սոցիալիստական կուտակումը կոլտնտեսություններում հիմնականում կատարվում է անբաժանելի ֆոնդերի աճման ձևով։ Անբաժանելի ֆոնդերը հանդիսանում են կոլտնտեսային սեփականության այն մասը, որը ենթակա չէ վաճառքի ու բաշխման։

Տարեցտարի աճում են մեր երկրի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը։ Նրանց գումարը 1932 թվականին կազմել է 4,7 միլիարդ ռուբլի, իսկ 1958 թվականի հունվարի 1-ին հասել է 102 միլիարդ ռուբլու։

Անբաժանելի ֆոնդերի քանակային աճման հետ փոխվել է նաև նրանց բնույթն ու սոցիալական էությունը։ Եթե 30-ական թվականներին անբաժանելի ֆոնդերը հիմնականում կազմված էին բանող ու մթերատու անասուններից և գյուղատնտեսական պրիմիտիվ գործիքներից, որոնք կոլտնտեսություն էր բերել նախկին մենատնտես գյուղացին, ապա արդի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը, բանվորների ու սոցիալիստական պետության օժանդակությամբ, ստեղծել են իրենք՝ կոլտնտեսականները։ Այժմ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի զգալի մասը կազմում են գյուղատնտեսական մեքենաները, որոնք բանվորների ձեռքով պատրաստվել են սոցիալիստական արդյունաբերության մեջ։ Այդ մեքենաների մեծ մասը կոլտնտեսությունները գնել են սովետական պետությունից ստացած վարկով։

Անբաժանելի ֆոնդերի հետ կատարված որակական փոփոխությունները դրանով չեն սպառվում։ Սոցիալիստական գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման ներկա էտապում անբաժանելի ֆոնդերն արդեն սկսում են գերաճել մեկ կոլտնտեսության շրջանակները և առաջանում են միջկոլտնտեսային բազմաթիվ ձեռնարկություններ։

Հետագայում միջկոլտնտեսային ձեռնարկությունների թիվը քանի գնա, աճելու է. պարտիայի XXI համագումարին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում ասված է. «Գյուղատնտեսության հետագա զարգացման նախատեսվող ծրագիրը կուղեկցվի սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործմամբ, սոցիալիստական սեփականության երկու ձևերի՝ կոլտնտեսային և համաժողովրդական սեփականության մերձեցմամբ։ Դա կդրսևորվի կոլտնտեսային կարգի հետագա զարգացման, արտադրական ֆոնդերի աճի, կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի ավելացման ու դրանց ճիշտ օգտագործման մեջ, արդյունաբերական, շինարարական և տնտեսական այլ ձեռնարկությունների համատեղ կազմակերպման, էլեկտրակայանների, ճանապարհների, ոռոգիչ ու չորացման սիստեմների, գյուղատնտեսական մթերքների վերամշակման ու պահպանման ձեռնարկությունների, դպրոցնե-

րի, հատկապես գիշերօթիկ դպրոցների, զառամյալների տների, հիվանդանոցների, ակումբների համատեղ շինարարության ասպարեզում միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնման մեջ»։

Կոլտնտեսային սեփականության մեջ անբաժանելի ֆոնդերն իրենց բնույթով ավելի մոտ են համաժողովրդական սեփականությանը, քան բաշխման ենթակա միջոցները (մթերքները և այլն), իսկ միջկոլտնտեսային ձեռնարկությունները կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակին հասցնելու անցողիկ օղակներից մեկն են։ Կոլտնտեսային սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակին է հասնելու ոչ թե ապրանքաշրջանառությունը մթերափոխանակությամբ փոխարինելու միջոցով, այլ արտադրական անբաժանելի ֆոնդերի աճման, միջկոլտնտեսային ձեռնարկությունների կառուցման և արտադրական կապերի ընդլայնման, կոլտնտեսային արտադրության զարգացման ու կատարելագործման միջոցով։

Սոցիալիստական կուտակման աղբյուրը կոլտնտեսություններում՝ դրամական եկամուտներից կատարվող հատկացումներն են անբաժանելի ֆոնդերին։

Տարեցտարի աճում են կոլտնտեսությունների դրամական եկամուտները, որի հետ միաժամանակ աճում է անբաժանելի ֆոնդերի կատարած հատկացումների բացարձակ մեծությունը։

1953 թվականից մինչև 1957 թվականը Հայկական ՍՍՌ-ում կոլտնտեսությունների դրամական եկամուտներն աճել են 54,8 տոկոսով։ 1957 թվականի անբաժանելի ֆոնդերին կատարած հատկացումների ընդհանուր գումարը կազմել է 126,1 միլիոն ռուբլի։ Անբաժանելի ֆոնդերին կատարած հատկացումները 1953 թվականին կազմել են կոլտնտեսությունների դրամական եկամուտների 18,4 տոկոսը, 1954 թվականին՝ 17,1 տոկոսը, 1955 թվականին՝ 16,5 տոկոսը, 1956 թվականին՝ 15,3 տոկոսը և 1957 թվականին՝ 15,3 տոկոսը։ Անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումների այդպիսի իջեցումը բոլորովին էլ դրական երևույթ չէ։

1957 թվականին մեր ռեսպուբլիկայի որոշ շրջաններում անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումների տոկոսը անհիմն կերպով չափազանց իջեցրել են։ Օրինակ, անբաժանելի ֆոնդերին կատարած հատկացումները Արտաշատի շրջանում կազմել են կոլտնտեսությունների դրամական եկամուտների միայն 11,9 տոկոսը, Շահումյանի շրջանում՝ 12,7 տոկոսը, Մեղրու շրջանում՝ 11,8 տոկոսը, Սիսիանի շրջանում՝ 12 տոկոսը, Ալավերդու շրջանում՝ 13,3 տոկոսը։

Որոշ կոլտնտեսությունների ղեկավարներ աշխօրերին բաշխվող դրամի գումարն ավելացնելու նպատակով դիտմամբ իջեցրել են անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումների տոկոսը։ Արտաշատի շրջանի Նորաշեն գյուղի կոլտնտեսությունում անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումները 1957 թվականին կազմել են դրամական եկամուտների միայն 3 տոկոսը, այն դեպքում, երբ կոլտնտեսությունում աշխօրին տվել են 38 ռուբլի 43 կոպ. մթերքներ և դրամ, որից միայն դրամ՝ 32 ռ. 34 կոպ.։ Նույն շրջանի Վ. Արտաշատ գյուղի կոլտնտեսությունը անբաժանելի ֆոնդերի հատկացումներ է կատարել դրամական եկամուտների 10 տոկոսի չափով, իսկ աշխօրի արժեքը կազմել է 41 ռ. 32 կոպ.։ Շահումյանի շրջանի Շահումյանի ան-



վան կոլտնտեսությունում անբաժանելի ֆոնդերի հատկացումները կազմել են 10 տոկոս, իսկ աշխօրի արժեքը 63 ռ. 34 կոպ.։ Բոլորովին էլ արդարացի չեն այն ընկերները, որոնք պնդում են, որ իբր թե Արարատյան դաշտավայրում կոլտնտեսությունները ամեն ինչ արդեն կառուցել են և այլևս մեծ կապիտալ ներդրումների կարիք չունեն։ Այսուհետև այդ շրջաններում մեծ ծավալում պետք է ստանա միջկոլտնտեսային ձեռնարկությունների կառուցումը։ Հարյուրավոր միլիոնի գումարներ են հարկավոր այդ շրջաններում ջերմոցներ, ձանապարհներ, ոռոգման սիստեմներ, գյուղատնտեսական մթերքների նախնական վերամշակման ձեռնարկություններ, կուլտ-կենցաղային հիմնարկների շենքեր կառուցելու համար։

Մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու և տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու կապակցությամբ կոլտնտեսություններում խոշոր չափով ավելացել է կապիտալ ներդրումների պահանջը։ Ամեն տարի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները մի քանի տասնյակ միլիոն ռուբլի պետք է տրամադրեն միայն տրակտորներ, կոմբայններ և այլ մեքենաներ գնելու համար։ Հաշվի առնելով այդ, բոլոր կոլտնտեսությունները ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումից հետո վերանայել են գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը և որոշել անբաժանելի ֆոնդերի հատկացումները բարձրացնել և ռեսպուբլիկայի մասշտաբով ու միջին հաշվով հասցնել դրամական եկամուտների 19—20 տոկոսին։

Իհարկե, ճիշտ չէր լինի, եթե բոլոր կոլտնտեսությունները անբաժանելի ֆոնդերի հատկացումները սահմանեին նույն չափով։ Անբաժանելի ֆոնդերի հատկացումների չափը կապված է տվյալ տարում պահանջվող կապիտալ ներդրումների ծավալից, կոլտնտեսության ընդհանուր և դրամական եկամուտների գումարից ու շատ այլ հանգամանքներից։ Տեխնիկական առաջընթացի և ագրոնոմիական գիտության զարգացման զուգընթաց անհրաժեշտ է սիստեմատիկաբար նորացնել գյուղատնտեսության մեջ օգտագործվող տեխնիկան և ավելացնել հողի մեջ կատարվող ներդրումները, որոնց համար պահանջվում է այսուհետև ավելացնել անբաժանելի ֆոնդերի հատկացումները։ Սակայն տարեցտարի մեծանալու են նաև կոլտնտեսությունների դրամական եկամուտները։ Այդ պատճառով էլ նշանակալի չափերով ավելանալու է անբաժանելի ֆոնդերին կատարվող հատկացումների բացարձակ մեծությունը, իսկ նրանց հարաբերական մեծությունը աճելու է ավելի նվազ չափերով։

Ներկայումս, երբ տեխնիկան հանձնված է կոլտնտեսություններին, սահմանված են գյուղատնտեսական մթերքների տնտեսագիտորեն հիմնավորված գներ, լուծված են կոլտնտեսային շինարարության արմատական հարցերը, հոյակապ պայմաններ են ստեղծված սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությամբ 7-ամյա պլանով նախատեսված պատմական խնդիրների կենսագործման համար։

Այժմ կոլտնտեսային արտադրության բոլոր ճյուղերի հետագա արագ զարգացման գլխավոր պայմաններն են՝ անբաժանելի ֆոնդերի ավելացումը և ճիշտ օգտագործումը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության ձևերի կատարելագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը և արտադրանքի ինքնարժեքի իջեցումը։

# ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

*Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ*

*ՍՍՌՄ ժողովրդատնտեսական կյանքին ուղղություն է տալիս պետական միասնական պլանը՝ հանուն հանրային հարստության աճման, աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացման, մեր Հայրենիքի հզորության ամրապնդման։ Սոցիալիստական հասարակության մեջ բոլոր հարստություններից ամենաարժեքավորը մարդն է, ուստի և նրա պահանջմունքների բավարարումը սոցիալիստական արտադրության նպատակն է ու զարգացման հիմնական շարժառիթը։ Այստեղ մարդը ոչ միայն հասարակության ամենագլխավոր արտադրողական ուժն է, այլև նյութական բարիքների գլխավոր սպառողը։ Հասարակության բոլոր անդամների պահանջմունքների հաշվառումը, այդ պահանջմունքների և արտադրության ծավալի միջև համապատասխանություն ապահովելը՝ սոցիալիստական պլանավորման կարևորագույն խնդիրներից մեկն է։*

*Հասկանալի է, որ հիշյալ խնդրի լուծման համար առաջին և կարևոր պայմաններից մեկը պետք է հանդիսանա բնակչության հաշվառումը և այդ հաշվառման միջոցով պարզելու բնակչության քանակը, կազմը։ Ժողովրդատնտեսական պլանավորումը չի կարող լուծել իր առջև դրված խնդիրները, եթե հայտնի չէ երկրի բնակչության ընդհանուր քանակը և կազմը։ Առանց իմանալու աշխատունակ բնակչության թվաքանակը, նրա սեռական և տարիքային, պրոֆեսիոնալ կազմը, նրա բաշխումը քաղաքի և գյուղի, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև՝ հնարավոր չէ ճիշտ տեղաբաշխել նոր ձեռնարկությունները, երկաթուղիները, առավել լրիվ չափով բավարարել բնակչության կուլտուր-կենցաղային պահանջմունքները։*

*Պետք է նշել, որ ժողովրդատնտեսական միասնական պլանի տարբեր բաժինները կազմելու համար անհրաժեշտ են բնակչության կազմի մասին տարբեր տվյալներ։ Այսպես, աշխատուժը պլանավորելու և աշխատանքային ռեսուրսները բաշխելու համար անհրաժեշտ է ունենալ ստույգ տվյալներ աշխատունակ բնակչության քանակության, նրա սեռային կազմի վերաբերյալ, նրա բաշխումը քաղաքի և գյուղի ու տարբեր շրջանների միջև։*

*Ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը պլանավորելու համար անհրաժեշտ է լավ գիտենալ բնակչության սեռատարիքային կազմը, առանց որի հնարավոր չէ որոշել արտադրվելիք լայն սպառման առարկաների ասորտիմենտը։ Դպրոցական գործի զարգացումը, մանկական հիմնարկների ցանցի պլանավորումը պահանջում են գիտենալ համապատասխան տարիքի բնակչության քանակը։*



*Բնակչության քանակի և կազմի մասին մի շարք ցուցանիշներ անհրաժեշտ են ժողովրդական տնտեսության պլանի այլ բաժինները կազմելու համար նույնպես։*

*Բնակչության ընթացիկ վիճակագրությունը կամ հաշվառումը ավելի կամ պակաս ճշտությամբ որոշում է բնակչության քանակը, նրա կազմը ցույց տվող մի քանի ցուցանիշներ։ Այդ տվյալները համեմատելով նախորդ տարիների նույնանման տվյալների հետ, հնարավոր է դառնում պարզել բնակչության քանակի և կազմի հետ կատարված փոփոխությունները անցած շրջանում։*

*Բնակչության քանակի և կազմի մասին առավել ստույգ ու լրիվ տեղեկություններ հնարավոր է ստանալ միայն մարդահամարի միջոցով։*

*Մարդահամարից ստացած ստույգ տվյալները կարող են հիմք ծառայել հաշվարկելու նաև հեռանկարային պլանի ժամանակաշրջանի համար բնակչության քանակությունը և նրա կազմը այն բոլոր ցուցանիշներով, որոնք անհրաժեշտ են հեռանկարային պլանի տարբեր բաժինները մշակելու համար։ Քանի որ այդպիսի հաշվարկումը մեզ տալիս է բնակչության քանակությունը տեսականորեն, ուստի, բացի տվյալ մարդահամարի կոնկրետ տվյալներից, անհրաժեշտ է նաև ունենալ բնակչության քանակի և կազմի վերաբերյալ անցյալ մարդահամարի տվյալները, ընթացիկ վիճակագրությունից ստացված որոշ ցուցանիշներ, որոնց համեմատությունը հնարավորություն պետք է տա բացահայտելու բնակչության աճի օրինաչափությունները, առանց որոնց կատարած հաշվարկումները գիտական և գործնական արժեք չեն կարող ունենալ։*

## ՍՍՌՄ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԱՃԻ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Մարդահամարը անհրաժեշտ նյութ է բնակչության վերարտադրության պրոցեսը բնութագրելու և երկրի տնտեսական-կուլտուրական զարգացման հեռանկարները մշակելու համար։ ՍՍՌՄ-ում վերջին մարդահամարը եղել է 1939 թվականի հունվարին։ Դրան նախորդել էր 1926 թվականի մարդահամարը։ Երկու մարդահամարների միջև ընկած 12 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում տեղի էին ունեցել համաշխարհային պատմական նշանակություն ունեցող քաղաքական, տնտեսական ու կուլտուրական տեղաշարժեր։ Այդ ժամանակահատվածում ՍՍՌՄ-ի էկոնոմիկան անցման շրջանին հատուկ բազմատնտեսական կացութաձևերից վերափոխվել էր մոնոլիտ սոցիալիստական էկոնոմիկայի։ Արմատական փոփոխության էր ենթարկվել ՍՍՌՄ բնակչության դասակարգային կառուցվածքը. լիկվիդացվել էին շահագործող դասակարգերը և մարդու կողմից մարդուն շահագործելու տնտեսական հիմքերը։ Սոցիալիստական արտադրության աճի հիման վրա մեկընդմիշտ լիկվիդացվել էր գործազրկությունը քաղաքում և աղքատությունը գյուղում։ Երկու մարդահամարների միջև ընկած ժամանակամիջոցում երկրում կատարվել էր իսկական կուլտուրական ռևոլյուցիա, պատմության գիրկն էր անցել անցյալից ժառանգած կուլտուրական հետամնացությունը, ՍՍՌՄ-ը դարձել էր համատարած գրագիտության երկիր։ Այդ ամենի հիման վրա անհետացել էր բնակչության աճի կապիտալիստական օրենքը և արդեն գործում էր բնակչության աճի սոցիալիստական օրենքը։*

*1939 թվականի մարդահամարի նյութերը ցույց տվին, որ նախորդ մարդահամարից հետո անցած 12 տարում ՍՍՌՄ-ի բնակչությունը 147 մի-*

լիոնից աճելով, հասել էր մինչև 170,5 միլիոնի, կամ աճել էր 15,9 տոկոսով։ Բնակչության նման աճը հետևանք էր նրա, որ սոցիալիստական շինարարության տարիներին աշխատավորների բարեկեցության բարձրացման հիման վրա բարձրացել էր նաև բնակչության աճի տոկոսը։

Բնակչության բնական աճը կարող է տեղի ունենալ երկու կերպ՝ սերնդի արագ փոխարինմամբ, երբ ծննդի բարձր տոկոսին համապատասխանում է նաև մահացության համեմատաբար բարձր տոկոս (ծննդից ավելի պակաս), հետևապես և կյանքի կարճ տևողության և երկրորդ ծննդի նման տեմպերի կամ նույնիսկ մի քիչ ավելի ցածր տեմպերի պայմաններում խիստ կերպով կրճատվում է մահացությունների տոկոսը։

Այսպես, ցարական Ռուսաստանում բնակչության յուրաքանչյուր 1000 շնչին ծնունդ էր հասնում 47, իսկ մահացություն՝ 30,2։ Մահացության բարձր տոկոսի հետևանքով կյանքի միջին տևողությունը կազմում էր ընդամենը 32 տարի։ Այլ կերպ ասած, բնակչության աճը, նրա վերարտադրությունը տեղի էր ունենում սերնդի արագ փոխարինմամբ։ Բնակչության աճի և վերարտադրության այդ էքստենսիվ տիպը բնութագրում էր միաժամանակ երկրի տնտեսական ու կուլտուրական զարգացման ցածր մակարդակը։

ՍՍՌՄ-ում սոցիալիստական արտադրաեղանակի հաղթանակով փոխվեց նաև բնակչության վերարտադրության հին օրինաչափությունը, բնակչության աճման էքստենսիվ տիպը տեղի տվեց բնակչության աճման առավել պրոգրեսիվ տիպին։ Բնակչության աճի այդ պրոգրեսիվ տիպը առավել լայն ասպարեզ ստացավ ՍՍՌՄ-ում մասնավորապես հետպատերազմյան ժամանակաշրջանում։

Բնակչության բնական աճի տեմպերով ՍՍՌՄ-ը այժմ գերազանցում է կապիտալիստական առավել զարգացած երկրներին, որը երևում է հետևյալ տվյալներից։

Ծնունդը, մահացությունը և բնակչության բնական աճը ՍՍՌՄ-ում և կապիտալըստական երկրներում 1956 թվականին.

| Երկրներ | Բնակչության 1000 շնչին ընկնում է ծնունդ | Բնակչության 1000 շնչին ընկնում է մահացություն | Բնակչության 1000 շնչին ընկնող բնական աճը |
|---|---|---|---|
| ՍՍՌՄ . . . . | 25 | 7,5 | 17,5 |
| ԱՄՆ . . . . | 24,9 | 9,4 | 15,5 |
| Ֆրանսիա . . . | 18,3 | 12,4 | 5,9 |
| Արևմտյան Գերմանիա . | 16,3 | 11 | 5,3 |
| Անգլիա . . . | 16,1 | 11,7 | 4,4 |

Բնակչության աճի նոր, սոցիալիստական օրինաչափությունները առավել ցայտուն են դրսևորվում, երբ մենք համեմատում ենք ՍՍՌՄ բնակչության յուրաքանչյուր 1000 շնչին ընկնող մահացությունների քանակը, մի կողմից ցարական Ռուսաստանի նույնանման ցուցանիշների, իսկ մյուս կողմից, ներկայիս առավել զարգացած կապիտալիստական երկրներին վերաբերող նույնանման ցուցանիշների հետ։ Այդ համեմատությունից պարզվում է հետևյալը՝ 1956 թվականին ՍՍՌՄ-ում բնակչության յուրաքանչյուր 1000 շնչին ընկնող մահացությունների քանակը, համեմատած 1913 թվականի հետ, պակասել է ավելի քան չորս անգամ։ Մինչդեռ ԱՄՆ-ում նույն ժամանակամիջոցում այն



պակասել է ընդամենը 1,5 անգամ, Ֆրանսիայում՝ 1,42 անգամ, Արևմտյան Գերմանիայում՝ 1,36 անգամ, Անգլիայում՝ 1,2 անգամ։

Ահա համապատասխան հաշվարկումները։

Բնակչության 1000 շնչին ընկնող մահացությունը ՍՍՌՄ-ում և կապիտալիստական երկրներում.

| Երկրներ | 1913 թ. | 1956 թ. | 1956 թ. քանի անգամ է պակաս 1913 թ. |
|---|---|---|---|
| ՍՍՌՄ . . . . | — | 7,5 | 4 |
| Ցարական Ռուսաստան . | 30.2 | — | — |
| ԱՄՆ . . . . | 14.1 | 9.4 | 1,5 |
| Ֆրանսիա . . . | 17,7 | 12,4 | 1.42 |
| Արևմտյան Գերմանիա . | 15 | 11 | 1,36 |
| Անգլիա . . . | 13,8 | 11,7 | 1,2 |

Այս աղյուսակից նախ երևում է, որ 1956 թվականին ՍՍՌՄ-ում մահացության տոկոսը, համեմատած գլխավոր կապիտալիստական երկրների հետ, ամենից ցածրն է, մինչդեռ մահացությունների տոկոսը 1913 թվականին ցարական Ռուսաստանում, համեմատած նույն կապիտալիստական երկրների հետ, ամենաբարձրն էր։

Դժվար չէ նկատել, որ բնակչության մահացության չափերի խիստ կրճատվելը ՍՍՌՄ-ում և աննշան չափով միայն պակասելը կապիտալիստական երկրներում, հետևանք է ո՛չ աշխարհագրական պայմանների, ո՛չ բիոլոգիական օրենքների և ոչ էլ բնակչության ռասսայական առանձնահատկություններին։ 1956 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ-ի և կապիտալիստական երկրների բնակչության յուրաքանչյուր 1000 շնչին ընկնող մահացությունները պակասելու չափերի միջև գոյություն ունեցող տարբերությունների գլխավոր ու հիմնական պատճառը սոցիալիստական և կապիտալիստական արտադրաեղանակների միջև եղած արմատական տարբերություններն են։ Ի հակադրություն կապիտալիզմի, սոցիալիզմն ստեղծում է բնակչության վերարտադրության առավել բարենպաստ պայմաններ, այստեղ մահացության տոկոսի խիստ կրճատվելը հետևանք է աշխատանքի պայմանների արմատական բարելավման, հիվանդությունների շատ տեսակների իսպառ վերացման, բնակչության ֆիզիկական զարգացման, մոր և մանկան նկատմամբ հատուկ հոգատարության և այլ գործոնների, որոնց ներգործության տակ էլ հենց ՍՍՌՄ-ում բարձրացել է բնակչության բնական աճի տոկոսը։

## ԱՌԱՋԻԿԱ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականի հեռանկարային պլանը մշակելու և իրականացնելու, ինչպես նաև 15-ամյա հեռանկարային պլանը մշակելու գործում բացառիկ նշանակություն կունենա 1959 թվականի հունվարին կատարվելիք մարդահամարը։ Այդ մարդահամարը ստույգ տվյալներ կտա բնակչության քանակի մասին և մանրամասն տեղեկություններ՝ բնակչության կազմի մասին։

ՍՍՌՄ-ում կատարված վերջին մարդահամարից անցել է արդեն 20 տա-

րի։ Այդ 20 տարիների ընթացքում էական փոփոխության է ենթարկվել ՍՍՌՄ-ի էկոնոմիկան, էապես փոխվել են բնակչության վերարտադրության պայմանները։ 1939 թվականի մարդահամարից հետո լուրջ փոփոխություններ են կրել ՍՍՌՄ-ի տերիտորիան և բնակչությունը։ ՍՍՌՄ-ի մեջ են միավորվել մերձբալթյան երկրները, Արևմտյան Ուկրաինան և այլ երկրամասեր իրենց բնակչությամբ հանդերձ։ Նույն մարդահամարից հետո ընկած ժամանակաշրջանում տեղի ունեցավ Հայրենական Մեծ պատերազմը, որը լուրջ փոփոխություններ առաջացրեց ՍՍՌՄ բնակչության կազմի և աճման պայմանների մեջ։

Այդ ամենը շատ չափով արժեզրկեցին 1939 թվականի մարդահամարի տվյալների նշանակությունը ժողովրդական տնտեսության պլանավորման համար հետպատերազմյան շրջանում։ Ի դեպ մատնանշենք, որ հիշյալ մարդահամարի տվյալների վիճակագրական մշակումը լրիվ չափով չէր էլ ավարտված, երբ սկսվեց ՍՍՌՄ-ի Հայրենական Մեծ պատերազմը։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հետպատերազմյան հնգամյա պլանները մշակելիս 1939 թվականի մարդահամարի տվյալներն անբավարար էին. ուստի և հնգամյա պլանները մշակելիս ավելի շատ օգտագործվում էին ընթացիկ վիճակագրության տվյալները և ավելի քիչ՝ 1939 թվականի մարդահամարի տվյալները։ Այդ հանգամանքը իր բացասական ազդեցությունն էր ունենում պլանավորման գործի վրա, քանի որ բնակչության հաշվարկման բազան մոտավոր էր։

Որպես օրինակ վերցնենք Հայկական ՍՍՌ-ի բնակչության աճի վերաբերյալ հաշվարկումները հետպատերազմյան շրջանում։

Պլանավորման և հետազոտական աշխատանքների համար բնակչության քանակը և կազմը որոշելիս՝ պլանային, վիճակագրական մարմինները և գիտահետազոտական հիմնարկությունները իբրև կանոն, օգտագործում էին բնակչության ընթացիկ վիճակագրության տվյալները և դրանց հիման վրա՝ հաշվարկում բնակչության հեռանկարային քանակությունը և կազմը, որն իհարկե, մոտավոր էր և ոչ ստույգ։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Տնտեսագիտական ինստիտուտի աշխատակիցների հաշվարկումներով, ռեսպուբլիկայի բնակչության քանակը 1970 թվականի համար սահմանվել է 2,400 հազար, որը որոշ չափով տարբերվում է Հայաստանի Պետպլանի հաշվարկած տվյալներից։ Նույն 1970 թվականի համար բնակչության քանակը Հայաստանում մեր հաշվարկումներով կազմում է 2,214 հազար։ Ուրիշ հաշվարկողներ էլ մի այլ թիվ են ստացել։ Բերված հաշվարկումներից դժվար է ասել, թե որն է ստույգը, իսկ ավելի ճիշտ կլինի ասել, որ ոչ մեկն էլ ստույգ չէ, որովհետև հաշվարկման բազան մոտավոր է։ Հաշվարկումներ կան նաև բնակչության քանակի վերաբերյալ առանձին տարիների համար։ Այսպես, մեր հաշվարկումներով առ 1-ը հունվարի 1959 թվականի Հայաստանի բնակչության ընդհանուր քանակը կազմելու է 1,730 հազար, որն, իհարկե, նույնպես ստույգ չէ։

Բնակչության քանակի մասին ստույգ տվյալներ կարելի է միայն մարդահամարից ստանալ։ 1959 թվականի հունվարին կատարվելիք մարդահամարի նշանակությունն ամենից առաջ այն է, որ ստանալով ստույգ տվյալներ բնակչության առկա քանակի մասին, լիակատար հնարավորություն է ստեղծվում հաշվարկել նաև բնակչության քանակությունը հեռանկարային ժամանակամիջոցի համար։



Այս բոլորից հետո հասկանալի է, թե ինչու պարտիան ու կառավարությունն առանձնահատուկ ուշադրություն են դարձնում առաջիկա մարդահամարը բազմակողմանիորեն նախապատրաստելու և բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու վրա։

## ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ՊԼԱՆԱՎՈՐՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

ՍՍՌՄ-ում վաղուց արդեն վերացված է գործազրկությունը և աշխատունակ յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովված է աշխատանքի իրավունք։ Երկրի աշխատանքային ռեսուրսներն առավել ռացիոնալ օգտագործելու համար խիստ անհրաժեշտ է ստույգ տեղեկություններ ունենալ նախ և առաջ երկրի աշխատանքային ռեսուրսների թվաքանակի մասին, նրա բաշխման մասին քաղաքի և գյուղի միջև, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի միջև, նյութական արտադրության ճյուղերի և սպասարկող ճյուղերի միջև։ 1959 թվականի հունվարյան մարդահամարը լիովին ապահովում է այդպիսի տվյալների ստացումը։ Սոցիալիստական շինարարության բուռն վերելքը հասցրեց նրան, որ էապես փոխվեց քաղաքային և գյուղական բնակչության միջև եղած քանակական համամասնությունը։ Խիստ կերպով բարձրացավ քաղաքային բնակչության տեսակարար կշիռը՝ հետևապես և ինդուստրիալ բնակչության տեսակարար կշիռը բնակչության ընդհանուր թվաքանակի մեջ։

ՀՍՍՌ-ի բնակչության բաշխումը քաղաքի և գյուղի միջև (%-ով)

| | 1926 թ. | 1940 թ. | 19[illegible]6 թ. |
|---|---|---|---|
| Ամբողջ բնակչությունը այդ թվում՝ | 100 | 100 | 100 |
| Քաղաքային բնակչությունը | 19 | 30 | 44.4 |
| Գյուղական բնակչությունը | 81 | 70 | 55.6 |

Այսպիսով, սոցիալիստական շինարարության տարիներին Հայկական ՍՍՌ-ի քաղաքային բնակչության տեսակարար կշիռը ողջ բնակչության մեջ (30 տարվա ընթացքում), 19 տոկոսից բարձրացել է մինչև 44,4 տոկոսի, հետևապես համապատասխանորեն իջել է գյուղական բնակչության տեսակարար կշիռը։

Հիշյալ փոփոխությունները տեղի են ունեցել բազմաթիվ գործոնների ներգործությամբ, որոնցից սակայն ամենաէականը պետք համարել նախկինում գյուղական վայրերը քաղաքների, բանվորական ավանների, քաղաքատիպ վայրերի վերածվելը։ Դրա հետ միասին գյուղական բնակչության մի մասը քաղաք է փոխադրվել, որի հետևանքով քաղաքների բնակչության թվաքանակը աճել է ոչ միայն քաղաքային բնակչության բնական աճի, այլ նշանակալից չափով՝ մեխանիկական աճի հաշվին։

Մարդահամարը ճշգրտելով առկա բնակչության բաշխվածությունը քաղաքի և գյուղի միջև 1959 թվի հունվարի դրությամբ, հուսալի հիմք կծառայի՝ ճշգրիտ կերպով որոշելու քաղաքային և գյուղական բնակչության քանակությունը հեռանկարային ժամանակաշրջանի համար։

Ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացումը պլանավորելու գործում բնակչության ճշգրիտ և պրոֆեսիոնալ բաշխումը (քաղաքի և գյուղի միջև), բացառիկ նշանակություն ունի արդյունաբերությունը, շինարարությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը և մյուս ճյուղերը անհրաժեշտ աշխատուժով ապահովելու խնդիրը լուծելու գործում: Ժողովրդական տնտեսությունը և, առաջին հերթին, արդյունաբերությունն ու շինարարությունը աշխատուժով ապահովելու հարցը լուծելիս անխուսափելիորեն առաջ կգա քաղաքային և գյուղական բնակչության քանակական հարաբերակցությունները փոփոխելու հարցը, որը առաջ կբերի քաղաքային բնակչության տեսակարար կշռի հետագա բարձրացում: Իհարկե, այդ փոփոխությունները ևս չեն կարող լինել կամայական: Այդ համամասնությունը մեծապես կախում կունենա այն բանից, թե գյուղն ինչ չափով կարող է օգտագործել բնակչության վերարտադրության հետևանքով աճած աշխատանքային իր ռեսուրսները:

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացումը, որ ուղեկցվում է գյուղատնտեսական աշխատանքների հետագա մեքենայացմամբ, էլեկտրիֆիկացման մակարդակի բարձրացմամբ, աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ (մասնավորապես մեքենա-տրակտորային կայանները վերակազմելուց և գյուղատնտեսական մեքենաները կոլտնտեսությունների տնօրինությանը հանձնելուց հետո), այդ ամենը կարող են գյուղի աշխատանքային ռեսուրսների որոշ մասը ազատել և տրամադրել արդյունաբերությանը, շինարարությանը և տրանսպորտին:

Այդպես կլինի ինչպես ողջ ՍՍՌՄ-ի, այնպես էլ առանձին ռեսպուբլիկաների մասշտաբով: Այսպես, եթե վերցնենք Հայկական ՍՍՌ-ի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարներն առաջիկա 7—10 տարիներին, դժվար չէ նկատել, որ, մի կողմից՝ գյուղատնտեսական աշխատանքների հետագա մեքենայացման և էլեկտրիֆիկացման շնորհիվ, մյուս կողմից՝ ռեսպուբլիկայում արդյունաբերական մի շարք նոր ճյուղերի, այդ թվում, մասնավորապես, աշխատատար ճյուղերի ստեղծման, գոյություն ունեցող ճյուղերի ընդլայնման, արդյունաբերական ու բնակարանային շինարարության մասշտաբների խիստ ընդարձակման, գյուղական բնակչության մի մասը կվերածվի քաղաքային բնակչության, որի հետևանքով նորից կբարձրանա քաղաքային բնակչության տեսակարար կշիռը ռեսպուբլիկայի ողջ բնակչության թվաքանակի մեջ:

Հարց է առաջանում, հեռանկարային պլանի ժամկետի վերջում քանի՞ տոկոս պետք է կազմի քաղաքային բնակչությունը և քանի՞ տոկոս գյուղական բնակչությունը: Չունենալով առկա բնակչության ստույգ քանակությունը և նրա բաշխվածությունը քաղաքի և գյուղի միջև, քաղաքային և գյուղական բնակչության տեսակարար կշիռները հեռանկարային ժամկետների համար, իհարկե, հնարավոր էր որոշել մոտավոր կերպով միայն:

Այդպիսի փորձ էին կատարել Հայկ. ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Տնտեսագիտական ինստիտուտի աշխատակիցները մի շատ արժեքավոր հոդվածում, որը նվիրել էին Հայաստանի գյուղատնտեսության զարգացման հեռանկարներին: Հիշյալ հոդվածի հեղինակները օգտագործելով քաղաքի և գյուղի աշխատունակ բնակչության մասին ընթացիկ վիճակագրության տվյալները և հաշվի առնելով էկոնոմիկայում կատարվելիք փոփոխությունները, եկել են այն եզրակացության, որ 1970 թվականին Հայաստանի գյուղական



բնակչության տեսակարար կշիռն իջնելով, կհասնի 40 տոկոսի: Դժվար է վիճարկել հիշյալ կանխատեսումների դեմ, եթե նկատի ունենանք, որ զարգացման տենդենցն ընդհանուր առմամբ ճիշտ է կանխատեսված: Դրա հետ միասին, սակայն, չի կարելի չառարկել այն պատճառաբանության դեմ, որով հեղինակները հիմնավորում են այդ կոնկրետ հարաբերակցությունը՝ 60—40 տոկոսը:

Ահա նրանց պատճառաբանությունը. «Ռեսպուբլիկայի բնակչության բնական աճը հաշվարկային ժամկետում ոչ միայն լիովին կբավարարի աշխատանքային ռեսուրսների ասպարեզում գյուղատնտեսության հարաճուն պահանջմունքները, այլև գյուղատնտեսությունը հաշվարկային ժամանակաշրջանում գյուղատնտեսական արտադրող բնակչության թվի գրեթե ամբողջ աճը կարող է տրամադրել արդյունաբերությանը և ժողովրդական տնտեսության մյուս բնագավառներին»[1]: Պետք է նկատել, որ հեղինակների բերած այս պատճառաբանությունը չի խարսխված ռեսպուբլիկայի էկոնոմիկայի հետագա զարգացման պրոցեսների բազմակողմանի վերլուծության վրա և միակողմանիորեն հաշվի է առնված լոկ գյուղատնտեսության աշխատանքների մեքենայացումը, էլեկտրիֆիկացիան և որպես դրանց հետևանք՝ աշխատանքի արտադրողականության բարձրացումը գյուղատնտեսության մեջ: Մինչդեռ անհրաժեշտ էր նաև հաշվի առնել արդյունաբերության մեջ նախատեսվող տեխնիկական առաջադիմությունը, արտադրության պրոցեսների ավտոմատացումը և էլի ուրիշ գործոններ, որոնք բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, չեն կարող չիջեցնել գյուղական բնակչությունը քաղաքային բնակչության վերածվելու նախկին տեմպերը: Այլ խոսքով՝ քաղաքային բնակչության տեսակարար կշիռը, որ 1956 թվականին կազմում էր 44,4 տոկոս, անշուշտ կբարձրանա, սակայն ավելի դանդաղ տեմպերով, քան անցյալում:

Բացի դրանից, մենք կարծում ենք, որ այդ բարձրացումը կկատարվի ոչ այնքան գյուղական աշխատունակ բնակչությունը գյուղատնտեսությունից դուրս ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերին տրամադրելու ճանապարհով, որքան ներկայիս գյուղական որոշ վայրերը քաղաքային վայրերի վերածելու ճանապարհով: Այդ պրոցեսն այժմ արդեն կատարվում է մեր աչքի առաջ և այն կշարունակվի նաև հեռանկարային 7-ամյա պլանի ողջ ժամանակամիջոցում:

Պետք է աչքի առաջ ունենալ մի ուրիշ հանգամանք էլ, այն, որ թեպետ քաղաքային բնակչության բնական վերարտադրության տեմպերը ետ են մնում բանվոր ծառայողների աճման տեմպերից (որի հետևանքով և ի հաշիվ քաղաքային ռեսուրսների հնարավոր չէ ծածկել աշխատուժի պահանջը ոչ գյուղատնտեսական ճյուղերում), սակայն աշխատանքի արտադրողականության հետագա բարձր աճը, որ տեղի կունենա նյութական արտադրության ճյուղերում և, առաջին հերթին, արդյունաբերության մեջ, տեխնիկական առաջադիմության հզոր ներգործության տակ, հնարավորություն կտա դանդաղեցնելու գյուղական բնակչության պլանային հոսքը դեպի ոչ գյուղատնտեսական ճյուղերը: Եթե մենք խիկապես հեռանկարային պլանի ժամանակամիջոցում, գյուղատնտեսական արտադրող բնակչության թվի գրեթե ամբողջ աճը տրամա-

[1] Ա. Մարուխյան, Ս. Խրիմլյան, Ա. Երիցյան, Օ. Կարճիկյան, «Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին»: Տե՛ս «Լենինյան ուղիով» № 9, 1957 թ., էջ 34:

դրենք ոչ գյուղատնտեսական ճյուղերին, ինչպես այդ առաջարկում են վերևում հիշատակված հոդվածի հեղինակները, նախ արմատապես կփոխվի գյուղական բնակչության ստրուկտուրան, կստեղծվի գյուղական բնակչության տարիքային ու ռացիոնալ ստրուկտուրա, խիստ կերպով կիջնի արտադրող բնակչության տեսակարար կշիռը գյուղական բնակչության ընդհանուր քանակի մեջ։

Ասածներից երևում է, որ մեր առարկությունը գլխավորապես այն մասին չէ, որ հեռանկարային ժամկետի վերջում ռեսպուբլիկայի քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կարող է հասնել 60%-ի, իսկ գյուղականինը՝ 40-ի։ Թեպետ մենք գտնում ենք, որ քաղաքային բնակչության տեսակարար կշիռը այդչափ չի բարձրանա, գյուղականինն էլ այդչափ չի ընկնի (մեր կարծիքով քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կհասնի մինչև 51—52%-ի)։ Սակայն մենք առարկում ենք քաղաքային բնակչության տեսակարար կշռի բարձրացման այն ուղիների դեմ, որ նախատեսվում է քննարկվող հոդվածի հեղինակների կողմից։

Մենք գտնում ենք, որ քաղաքային բնակչության տեսակարար կշիռը կբարձրանա ոչ թե գյուղական արտադրող բնակչության գյուղատնտեսությունից ոչ գյուղատնտեսական ճյուղերն անցնելու, գյուղից քաղաք անցնելու հետևանքով, այլ գյուղական որոշ վայրերի քաղաքայինի վերափոխվելու, արդյունաբերական նոր կենտրոնների առաջացման, որոշ քաղաքամերձ շրջաններ քաղաքներին միացնելու, ինչպես նաև առանձին գյուղեր քաղաքներին միացնելու ճանապարհով։

Հեռանկարային պլանի ժամանակաշրջանում հատկապես տեղի կունենա մեկ ուրիշ պրոցես ևս, որոշ չափով կփոխվի կոլտնտեսականների մի մասի պրոֆեսիոնալ կազմը, որպես հետևանք այն բանի, որ կոլտնտեսությունները, դառնալով գյուղատնտեսական տեխնիկայի հիմնական մասի սեփականատերը, դրանց գործադրության համար իրենց անդամների մի մասի զբաղմունքը կդառնա այդ տեխնիկան շարժման մեջ դնելը։ Բացառված չէ, որ որոշ կոլտնտեսություններ իրենց մեխանիզատորական կադրերը համալրեն նաև քաղաքային բնակչությունից։ Վերջինս մասսայական ծավալ չստանալով հանդերձ, մի տեսակ հակազդող գործոն կհանդիսանա գյուղական բնակչության տեսակարար կշիռը իջեցնելու տենդենցին և կթուլացնի այդ տենդենցը։ Այդ են ապացուցում մեքենա-տրակտորային կայանները վերակազմելուց հետո անցած ժամանակաշրջանում այդ ուղղությամբ կատարված տեղաշարժերը։

1956 թվականի սկզբին Հայաստանի աշխատանքային ռեսուրսների բաշխվածությունը քաղաքի և գյուղի միջև մոտավորապես այսպիսի պատկեր ուներ (%-ով).

| | Քաղաք | գյուղ | ընդամենը |
|---|---|---|---|
| Ամբողջ բնակչությունը . . . . . | 44,4 | 55,6 | 100 |
| Աշխատանքային ռեսուրս . . . . . | 48 | 52 | 100 |

Ռեսպուբլիկայի աշխատանքային ռեսուրսների ըստ գործունեության տարբեր ասպարեզների բաշխվածության տվյալներից երևում է, որ կոլտնտեսային արտադրության մեջ զբաղվածների տեսակարար կշիռը շատ մեծ չէ և հազիվ թե հարկ լինի հեռանկարային ժամանակամիջոցում այդ տեսակա-



րար կշիռը խիստ փոփոխության ենթարկել և նվազեցնել, ինչպես կռահում են վերևում հիշատակված հոդվածի հեղինակները։

Հայաստանի բնակչության ընդհանուր քանակի և կազմի վերաբերյալ մի քանի տվյալների քննությունը, որ մենք կատարեցինք, ցույց տվեց նախ այն, որ իսկապես չի կարելի պատկերացնել շատ թե քիչ ճիշտ կերպով կազմված ժողովրդատնտեսական պլան առանց բնակչության ընդհանուր քանակի և կազմի մասին անհրաժեշտ տվյալների։ Այդ քննությունն այնուհետև ցույց տվեց, որ առանց մարդահամարի տվյալների, որպես հեռանկարային հաշվարկման բազայի, դժվար է հետևել բնակչության աճի, նրա կազմի, հեռանկարային քանակի և այլ ցուցանիշների փոփոխությունը, քանի որ ընթացիկ վիճակագրության տվյալներով կատարված ամեն մի հաշվարկում մոտավոր է։

Ահա թե ինչու այն պահին, երբ մշակվում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թթ. հեռանկարային պլանը, այդ պլանը առավել հիմնավորված, առավել ճիշտ լինելու նպատակով, պարտիան և կառավարությունն անհրաժեշտ համարեցին 1959 թվականի հունվարին անցկացնել ՍՍՌՄ բնակչության մարդահամար։ Մարդահամարի օրը նշանակված է հունվարի 15-ը։ Մարդահամար նշանակված է հունվար ամսին, նկատի առնելով, որ, նախ՝ այն տարվա սկիզբն է և երկրորդ, որ ձմռան ամիսներին բնակչության շարժումը մեկ վայրից մեկ ուրիշ վայր ավելի նվազ է։ Այդ ամենից բացի մարդահամարը նշանակված է հունվար ամսին, նաև այն պատճառով, որ նրա տվյալների օգնությամբ պարզվի նաև ընթացիկ վիճակագրության տվյալների մոտավորության աստիճանը, ինչպես նաև հնարավոր լինի համեմատել նախորդ մարդահամարի տվյալների հետ, որը նույնպես տեղի է ունեցել հունվար ամսին։ Մարդահամարի թերթիկի 15 հարցերի հիման վրա հնարավոր կլինի ստույգ տեղեկություններ ստանալ ՍՍՌՄ բնակչության առկա քանակի, նրա սեռատարիքային կազմի, ազգային, կուլտուրական, պրոֆեսիոնալ-արտադրական կազմի մասին։ Այդ տվյալների մշակումը և օգտագործումը հեռանկարային պլաններ կազմելու և իրականացնելու գործում կունենա բացառիկ կարևոր նշանակություն։

Առաջիկա մարդահամարը պետական խոշոր նշանակություն ունեցող գործ է։ Պարտիական, սովետական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է ուժեղացնեն այդ ուղղությամբ կատարվող աշխատանքը և բոլոր միջոցները գործի դնեն՝ մարդահամարը բարձր կազմակերպվածությամբ անցկացնելու համար։

---

# ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Վ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

*Սոցիալիստական ռեալիզմը, որպես իրականության պատկերման մեթոդ, որպես գրականության և արվեստի նոր ուղղություն, յուրաքանչյուր ժողովրդի հոգևոր կյանքում ծագման ու զարգացման ուրույն ճանապարհ է անցել, ունեցել է աճման իր դժվարություններն ու պակասությունները։ Գրականությունը որպես կոնկրետ իրականության ծնունդ, չի կարող առաջ գալ հասարակական օրինաչափություններից դուրս, չկրել դարաշրջանի կնիքը, միաժամանակ իր կնիքը չթողնել ժամանակի վրա։*

*Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիստական ռեալիզմի շուրջը ծայր առած տաք բանավեճերը վկայում են, որ գրողների ու գրականագետների մի զգալի մասը չի հասկանում կամ չի ուզում հասկանալ, որ համաշխարհային գրականության մեջ այդ նոր մեթոդի արմատավորումը նախ և առաջ պայմանավորված է պատմական այն խոշոր տեղաշարժերով, որ կատարվում են բոլոր երկրների ժողովուրդների կյանքում ու գիտակցության մեջ, որ այդ մեթոդը (սոցիալիստական ռեալիզմը) ոչ թե Սովետական Միությունից է ներմուծվել, ասենք՝ Չինաստան, Լեհաստան, Հունգարիա, Ֆրանսիա, կամ Չիլի, այլ ծնվել կամ ծնվում է երկար ու համառ պայքար մղելով բուրժուական մեռնող արվեստի դեմ։ Եվ, եթե մեր սովետական գրականությունն այսօր կարողացել է իր դրոշի տակ համախմբել ազնիվ սրտի ու գրչի տեր բոլոր պրոգրեսիվ մարդկանց, լայն հեղինակություն է վայելում իր արտահայտած ու պաշտպանած ճշմարտությամբ, ապա դա վկայում է նրա կենսունակության ու մարտականության մասին, նրա գաղափարական ու գեղարվեստական անվիճելի առավելությունների մասին։ Այդ իրողությունը հատկապես հարվածում է ժամանակակից ռևիզիոնիզմին։ Սոցիալիզմի երկրի տնտեսական ու գաղափարական հզորության դեմ իրենց հին ու նոր սրերն ապարդյուն ճոճելուց հետո ռևիզիոնիստներն այս անգամ գլուխ են բարձրացրել նաև արվեստի բնագավառում։ Միամիտ մարդիկ կարծում են, թե սոցիալիստական ռեալիզմի դեմ հարձակումները գրական նեղ նպատակներ են հետապնդում։ Մինչդեռ իրողությունն այն է, որ խայտառակ պարտություն կրելով սոցիալիստական իրականությունը ժխտելու փորձերի մեջ, բուրժուական նեխող արվեստի տեսաբանները ճգնում են այդ նույնը կատարել զարտուղի ճանապարհով, կենսազուրկ, հետադիմական համարելով այդ իրականությունից սնվող և նրան ծառայող գրականությունը։ Այդ պայքարի լույսի*



*տակ մի առանձին սրություն են ստացել կյանքի ճշմարտության, ստեղծագործական ազատության հարցերը։*

*Սովետական գրողի համար գերագույն ճշմարտությունը հարազատ ժողովրդին ու հայրենիքին ազնվորեն և անձնվիրաբար ծառայելն է։ Սրանից է բխում նրա ստեղծագործական ազատությունը, դրանով է պայմանավորված նրա տաղանդի աճն ու զարգացումը։*

*Մի ոմն Անջեյ Բրաունի համար (լեհական ռեակցիոն գրող) մարդը վեր է հայրենիք հասկացողությունից։ Հանդես գալով մարդու երջանկության «ուրույն» փիլիսոփայությամբ, Բրաունը գտնում է, որ սոցիալիստական ռեալիզմի գրականությունը ոտնահարել է անհատի իրավունքները, դարձնելով նրան «հակամարդկային շինանյութ»։ Ինչո՞վ է հիմնավորում իր այդ պնդումը դեղնակտուց «մարդասերը»։ Բանից պարզվում է, որ Բրաունին դուր չի գալիս, երբ անհատն իր կյանքը զոհաբերում է հայրենիքին, երբ սովետական գրողների շատ երկերում հերոսները մահանում են, որպեսզի անմահ մնա ժողովուրդը։ Պետք չ հայրենիքը զոհաբերել անհատի երջանկությանը, ահա հրեշավոր այն փիլիսոփայությունը, որի տեսանկյունից շատերն են նիզակներ ճոճում սովետական գրականության և նրա հայրենիքի դեմ։*

*Այդ նեխող փիլիսոփայության մեջ խորամուխ լինելու դեպքում կտեսնեք, որ դրա արմատները գալիս են շատ հեռվից։ Կար ժամանակ, երբ վեր ելնող բուրժուազիան ժողովուրդը չէր անջատում հայրենիք հասկացողությունից, կարողանում էր իր շահերը ներկայացնել որպես ժողովրդի շահեր, նույնիսկ հանդես էր գալիս անհատի իրավունքների պաշտպանությամբ, և այդ ամենը հետապնդում էր մի նպատակ՝ հաստատել իր տիրապետությունը։ Անցան տասնամյակներ, փոխվեցին ժամանակները, և որոշ երկրների ժողովուրդներ հասկացան, որ անհարիր են հայրենիք ու շահագործում ըմբռնումները, որ չի կարելի հայրենիքի տեր լինել և միաժամանակ ծնկաչոք ապրել սեփական երկրի վրա։*

*Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան պատմության մեջ առաջինը հայրենիքի տեր դարձրեց տասնյակ ժողովուրդների։ Ազատության այդ մարդկային ուղին բռնեցին նաև Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներ։ Այլևս չկարողանալով ժողովրդի հայրենասիրությունը, նրա ազգային զգացմունքները ծառայեցնել իր շահերին, բուրժուազիան է՛լ ավելի խորացրեց կոսմոպոլիտիզմի գաղափարը, որը ոչ այլ ինչ է, եթե ոչ հայրենիքը անհատին զոհաբերելու գաղափարախոսություն։ Այսպիսով ստեղծվեց անհայրենիք մարդու և արվեստի պաշտամունքը։*

*Մենք անհրաժեշտ համարեցինք կանգ առնել այս հարցերի վրա, որովհետև սովետահայ գրողները ևս եղել են գաղափարական պայքարի առաջավոր գծում, իրենց լավագույն ստեղծագործություններում երգել են հայրենիքը և նրա շինարար մարդուն, ստեղծել են մարդասիրական գրականություն, որի մեջ անհատը մարմնավորում է ժողովուրդը, իսկ ժողովուրդը վստահում է անհատին։ Ժողովրդի ու անհատի շահերի, նրանց իդեալների ու ձգտումների ներդաշնակությունն է այն ակունքը, որից առատորեն սնվում է գրականու-*

*թյունը։ Սա է այն ճշմարտությունը, որին ծառայում է սովետական գրողը խղճի թելադրանքով, սա է այն պարտիականությունը, որ Լենինը կտակել է սոցիալիստական արվեստին։*

## ԿՅԱՆՔԻ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ

*Ի՞նչ ասել է կյանքի ճշմարտություն. ոմանց համար դա սոսկ փաստ է, երևույթ։ Իսկական արվեստի երկ ստեղծելու համար այդքանը շատ քիչ է։ Գլխավորը ո՛չ միայն երևույթն է, այլև դրա կարևորությունը։ Բայց մի երևույթ այսօր կարող է կարևոր լինել, իսկ վաղը դառնալ երկրորդական։ Ուրեմն պետք է ունենալ նաև ժամանակի զգացողությունը, որն իր հերթին պահանջում է ակտիվ վերաբերմունք, որոշակի դիրքավորում տվյալ երևույթի նկատմամբ։ Այսքանն էլ դեռ բավական չէ։ Մեկի համար կարող է կարևոր լինել մեռնողը, իր դարն ապրածը, մյուսի համար՝ ապրողը, հաղթանակողը։ Նշանակում է, անհրաժեշտ է իմանալ նաև, թե գրողը կյանքի զարգացման ինչ տենդենցների տեսանկյունից է որոշում երևույթի կարևորությունը։ Հենց այդ է նկատի ունեցել Դոբրոլյուբովը, ասելով, որ ծառի տերևի հոյակապ պատկերումը երբեք չի կարող այնքան կարևոր լինել, ինչքան, ասենք, մարդու բնավորության հիանալի պատկերումը։ Նա, ով իր տաղանդը վատնում է տերևների ու իրերի օրինակելի նկարագրության վրա, իր նշանակությամբ երբեք չի կարող հավասարվել այն գրողին, որը կարողանում է արտացոլել հասարակական կյանքի խոշոր երևույթները, ապրում է դարաշրջանի հուզող խնդիրներով։*

*Սովետահայ պոեզիան զարգացման նոր վերելք է ապրում։ Անհաշտ պայքար մղելով մերկապարանոց հռետորականության ու կյանքի ճշմարտության գունազարդման կամ սևացման տենդենցի դեմ, պոեզիան ավելի է մոտեցել մարդուն, պատկերում է նրա աշխատանքի վեհությունն ու պատմական կարևորությունը, արտահայտում նրա ներքնաշխարհը իր զգացումների ալեկոծումներով։*

*Վերջին տարիներին նոր գրքերով ու բանաստեղծական շարքերով հանդես են եկել Գ. Սարյանը, Ն. Զարյանը, Սարմենը, Վ. Ալազանը, Վ. Նորենցը, Ս. Տարոնցին, Գ. Մահարին, Հռ. Պողոսյանը, Վեսպերը, Ա. Գրաշին, Ս. Կապուտիկյանը, Հ. Սահյանը, Հր. Հովհաննիսյանը, Վ. Դավթյանը, Գ. Էմինը, Մ. Մարգարյանը, Ա. Դարբնին, Պ. Սևակը, Հ. Շիրազը, Ս. Հարությունյանը, Ար. Մարգարյանը, Ա. Սարոյանը, Վ. Կարենցը, Հ. Թումանյանը. իրենց առաջին գրքերը հրատարակեցին նաև մի շարք շնորհալի երիտասարդ գրողներ։ Իրոք մեծ է բանաստեղծների բանակը, որը, հակառակ նիհիլիստական որոշ նվոցների, քիչ դժվարություններ չի հաղթահարել, ստեղծելով պարտիականության ոգով հագեցած, առողջ ու մարտական պոեզիա։ Եվ եթե մենք դարձյալ դժգոհ ենք պոեզիայի այսօրվա մակարդակից, ապա դա ոչ թե կատարածը ժխտելու կամ անտեսելու զգացում է, այլ գրողներին տված ստեղծագործական ազատության հնարավորությունների ավելի նպատակասլաց օգտագործման, կյանքի հետ սերտորեն կապվելու, նրա ռևոլյուցիոն զարգացմանն ավելի կրքոտությամբ նպաստելու պահանջ։*

*Յուրաքանչյուր դարաշրջան մեծ է նաև իր ստեղծած գրականությամբ, ինչպես ամեն գրականություն մեծ է իր դարաշրջանի ռեալիստական նկարագրով։ Հենց այդ փոխադարձ կապվածության աստիճանն է որոշում գե-*



*ղարվեստական երկի մնայուն կամ ժամանակավրեպ լինելը, նրա մեջ արտահայտված ճշմարտության խորությունն ու կարևորությունը։ Ըստ որում, դարաշրջան ասելով չպետք է հասկանալ միայն այն, ինչ կատարվում է այսօր։ Դա օրացուցային ըմբռնում չէ այն իմաստով, որ մարդ չի կարող անտարբեր լինել ոչ իր երեկվա, ոչ էլ ապագայի նկատմամբ։ Յուրաքանչյուր արվեստագետի մեծությունն առաջին հերթին չափվում է իր հայրենիքի նկատմամբ ունեցած նրա վերաբերմունքով և այն ճշմարտությամբ, որի արտացոլումով նա ծառայում է ժողովրդին, դառնում նրա նվիրական խոհերի արտահայտիչը։ Բնավ էլ պատահականություն չէ, որ սովետական գրականության ու նրա խոշոր ներկայացուցիչների դեմ ուղղված բոլոր զրպարտությունները թունավոր ճանճի նման պտտվում են հայրենասիրության, ժողովրդայնության ու պարտիականության հասկացողությունների շուրջը։*

*Պարտիան մեզ սովորեցնում է, որ ժամանակակից աշխարհում կատաղի պայքար է գնում սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև, և որ այդ պայքարում չեն կարող չեզոքներ լինել։ Հայտնի է, որ արվեստի մեջ գաղափարական չեզոքության ու պասսիվության քարոզը նույնպես զենք է, որով մեռնող գրականության ապրող տեսաբանները պայքարում են սոցիալիստական գրականության դեմ։ Սովետահայ բանաստեղծները, հավատարիմ մնալով արվեստի լենինյան պարտիականության սկզբունքներին, ստեղծել են այնպիսի երկեր, որոնց մեջ մարդը օժտված է խոր մտքերով ու ապրումներով, գիտակցում է ժամանակի ու աշխարհի ժողովուրդների հանդեպ ունեցած իր կոչման մեծությունը, արժանավայել հպարտությամբ է նայում իր նվաճումներին և գլուխ չի կորցնում անհաջողությունների դեպքում։ Հենց այդ ճշմարտությունն է արտահայտել Համո Սահյանը «Խոսք պարտիային» բանաստեղծության մեջ, որը միաժամանակ նաև խոսք է ժողովրդին ու նրա յուրաքանչյուր ազնիվ զավակին։*

> Ինչ էլ որ պատահի ճամփին, ամենուր զորանալ գիտենք,
> Երազով տաքանալ ցրտում, հրդեհում զովանալ գիտենք,
> Մենք գիտենք հաց քամել հողից և բախտի լույս գտնել հանքում,
> Գիտենք, որ այս կյանքի համար մենք քեզ ենք պարտական կյանքում:
>
> Մենք գիտենք մարտնչել կյանքում, մենք գիտենք հառաչել ու լալ,
> Ծովի պես շառաչել գիտենք և կանչել առվի պես զուլալ,
> Ամպի պես գիտենք որոտալ, սոսափել սոսու պես մի պերճ,
> Հողմի պես ոլորել գիտենք, հովի պես օրորել անվերջ:

*Եթե գրական քննադատությունն այս կամ այն գրողի ստեղծագործական ուղին ուսումնասիրելուց բացի զբաղվեր նաև այն հարցով, թե կոմունիստի կերպարը ինչպես է պատկերված սովետահայ պոեզիայում, բնավորության ինչպիսի գծերով է ներկայացված վերջին հարյուրամյակի այդ ամենաառաջավոր ու խիզախ մարդը, այս դեպքում ավելի պարզ կլիներ, թե ով է քայլում գրականության մայրուղիով և ով՝ ոլոր-մոլոր արահետներով։ Դա առավել ևս անհրաժեշտ է, որովհետև պատմության մեջ առաջին անգամ կոմունիստը կարողացավ բացեիբաց աշխարհին ասել իր նպատակների մասին, առաջինը խորապես հասկացավ աշխատավոր մասսաների կարիքները, ընթացք տվեց նրա սոցիալական ընդվզումներին և հերոսական ճակատամարտերից հետո ստեղծեց մի հայրենիք, որտեղ պարտիայի խոսքը նաև ժողովրդի խոսքն է։ Այդ հոգեհարազատությունը նվաճվել է պատմական մեծ*

փորձությունների մեջ, հաստատվել է հին աշխարհի դեմ մղված երկարատև ու կատաղի կռիվներում, ձեռք է բերվել անթիվ զոհերով։ Պայքարի ու հաղթանակի այդ ուղին է ոգեշնչել Վ. Դավթյանին՝ գրելու «Կոմունիստները» փայլուն բանաստեղծությունը։

Կոմունիստը նա է, ով իր կյանքի գերագույն իմաստը գտնում է ժողովրդին ազնվորեն ծառայելու մեջ, անհրաժեշտության դեպքում պատրաստ է զոհաբերել իր կյանքը հանուն ժողովրդի երջանկության։ Դավթյանը կարողացել է մարմնավորել այդ նոր մարդու բնավորության հերոսական գծերը, տեսնել նրա կատարած գործի վեհությունը նույնիսկ պարտության պահերին, ընդգծելով պայքարի ու ազատության կոմունիստական հիմնի ուղին։

Հիմնն այդ գնդեր է ճանում գրոհի ու տանում է մարտ,
Բարիկադներում կռվի են ելել ստրուկն ու տերը..
Կոմունան ընկավ... ու Պեր–Լա Շեզում մեռնում են ճպարտ
Աշխարհի մի բուռ կոմունիստները:

Մեռնում են, սակայն, մեռնում են. ինչպես անտառն է մեռնում,
Մեռնում են, ինչպես մեռնում են հողում ոսկե սերմերը.
Ամեն գարնան հետ առավել խիտ է անտառը ճառնում,
Հառնում են անմահ կոմունիստները:

Քայլում է դարը...։ Ու շղթաներն են ընկնում ոճրապարտ,
Որ շղթայել են մարդու պատիվը, երազն ու սերը,
Եվ ճողազնդի լայնություններով քայլում են ճպարտ
Աշխարհի միլիոն կոմունիստները:

Ինչպես Վ. Դավթյանի, այնպես էլ մյուս պոետների՝ պարտիայի մասին գրած լավագույն բանաստեղծությունների հաջողության առաջին նախապայմանը գաղափարական հստակությունն է, պարտիայի կատարած գործի վեհության խոր գիտակցումը։ Մեր օրերում, երբ արդեն մասսաների հոգևոր սեփականությունն է դարձել մարքսիզմ-լենինիզմը, որը գրողին ցույց է տալիս, թե ուր է գնում կյանքը, ինչ ճանապարհներով են լուծվում իրականության հակասությունները, արդեն անհնար է քիչ թե շատ հաջողված երկ գրել առանց հստակ աշխարհայացքի ու որոշակի համոզմունքների։ Նրանք, ովքեր անցյալի մի շարք գրողների օրինակը փորձում են հնարավոր համարել նաև այսօր, փաստորեն որդեգրում են նրանց ստեղծագործության ոչ թե առողջ կողմերը, այլ պատմականորեն պատճառաբանվող մտքի այն սահմանափակումը, որն զգալի չափով հաղթահարվել է կյանքի թելադրանքով ու տաղանդի հզորւսա կենսափորձով։ Ահա թե ինչու մենք առաջին հերթին շեշտը դնում ենք գեղարվեստական երկի գաղափարայնության վրա։ Ինքնին հասկանալի է, որ արվեստի մեջ գաղափարը, որքան էլ այն մեծ ու կարևոր լինի, եթե չի մատուցված արվեստի կենսական միջոցներով, զրկվում է իր ներգործող ուժից, և ընդհակառակը, արվեստը հյուծվում, դառնում է անկենդան, եթե չի սնվում մեծ գաղափարներով։

## ՊԱՅՔԱՐԸ ԱՊՈԼԻՏԻԿՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Սովետահայ պոետները, պատկերելով աշխատանքի մարդուն, ցույց տալով նրա հասարակական բարձր գիտակցությունն ու մտքերի հարստությունը, միաժամանակ պայքարել են ապոլիտիկության ռեցիդիվների դեմ, պաշտպա-



նել սոցիալիստական ռեալիզմի սկզբունքները։ Այդ փաստը նույնպես արժանի է լուրջ ուշադրության, որովհետև մարքսիստական էսթետիկայի սկզբունքների պաշտպանությունն ու զարգացումը կատարվում է ո՛չ միայն գրականագիտական հոդվածներում, այլև գեղարվեստական երկերում։ Ով ծանոթ է սովետահայ պոեզիայի պատմությանը, նա չի կարող նկատած չլինել, որ տասնամյակներ շարունակ սուր պայքար է մղվում ապոլիտիկության ու անկումայնության ամեն գույնի արտահայտությունների դեմ հանուն արվեստի պատասխանատվության մարդու նկատմամբ, հանուն կյանքի ու գրականության սերտ կապի. երբ Հր. Հովհաննիսյանը ատելով մենակությունը գրում է, թե.

Այն ո՞ր պոետն է տենչում լինել
Մարդկանցից հեռու և միայնակ —
Թե
Կա երազ ու երգ, հույզ ու մտորում,
Ձնչին ու մանր, սառն ու մածուցիկ...

և ապա հաստատում գրողի իր դավանանքը, ասելով.

Երջանիկ է նա, ով գիտի խռով
Մեր դարի լեզուն, մեր դարի ոգին,
Ով մտքի, գործի բյուր ոլորտներով
Կապվում է մարդուն, կապվում հողին:

Մի՞թե չենք զգում, թե պոետը կյանք ասելով ինչ է հասկանում, ի՞նչ հույզեր ու ապրումներ է համարում ընդունելի կամ մերժելի, ինչի մեջ է տեսնում իր քնարի կոչումը։ Երբ Համո Սահյանը դիմելով իր երգին, ասում է.

Երբ քո շնչից չի ջերմանալու
Վշտի պաղ հողմից մրսած մի սիրտ,
Երբ քեզ վրա չի զայրանալու
Քո ծաղկած հողի ոսոխը բիրտ,
Իզուր ես կյանքում բախտ ունենալու,
Լավ է նավիտյան լռես, իմ երգ:

Մի՞թե չենք զգում, որ բանաստեղծը կրքոտությամբ պաշտպանում է հարձակողական պոեզիայի սկզբունքները, մի պոեզիայի, որն ստեղծվել է մարդուն թևավորելու և ոչ թե տխրության մեջ խեղդելու համար, թշնամուն խոցելու և ոչ թե ուրախություն պատճառելու համար։

Ինչո՞վ բացատրել ծրագրային բանաստեղծությունների առատությունը։ Ոմանք հակված են այդ փաստի մեջ տեսնելու Եղիշե Չարենցի պոեզիայի մարտական տենդենցների մեխանիկական կրկնությունն ու ընդօրինակումը։ Մեր կարծիքով դա ոչ ճիշտ մոտեցում է։

Բանն այն է, որ «անհատի պաշտամունքի» պարտիական քննադատությունից հետո սոցիալիստական ռեալիզմի գրականության թշնամիները նորից սկսեցին բարբաջել «ստեղծագործական ազատության», կյանքի ճշմարտության և այլ խնդիրների մասին, փորձելով ապացուցել, որ այդ ամենից զուրկ են սովետական գրողները։ Իսկ մեզ մոտ որոշ ընկերներ չկարողանալով ճիշտ հասկանալ պարտիական քննադատության ոգին, չկարողացան պահպանել գրողին այնքան անհրաժեշտ գաղափարական հստակությունը և

*ընկան ցավալի ծայրահեղությունների մեջ, որոնք մի դեպքում հնչում էին որպես զրպարտություն, մյուս դեպքում՝ մոլորություն։ Արդյունքն այն եղավ, որ հրապարակ եկան մի շարք ոտանավորներ, որոնց մեջ անձնական նեղ ու չնչին ապրումները հրամցվում էին որպես կարևոր ճշմարտություն, որպես մարդու ներքնաշխարհի հարստություն։ Ահա այդ տիպի երգերի հեղինակներին է դիմել ռուս պոետ Միխայիլ Սվետլովը, ասելով. «Ընկե՛ր, բանաստեղծության լիարժեք ուրլին տասը կոպեկանոց մի՛ դարձրու, պարտքդ հայրենիքին մանրունքով մի՛ վճարիր»։ Եվ եթե այսօր նույնպես «մանրունքների» տենդենցների դեմ պայքարը մնում է ռեալիստական պոեզիայի կարևոր խնդիրներից մեկը և շատ կողմերով հիշեցնում է Չարենցի պոեզիայի տրադիցիաները, ապա դա մի անգամ ևս վկայում է մեծ պոետի արվեստի մասին ունեցած համոզմունքների ճշմարիտ լինելը։*

*Այդ պայքարը առանձնապես սուր բնույթ է կրում սիրո, բնության, ընտանիքի մասին գրված երգերում։ Գրականության հարուստ փաստերը ցույց են տալիս, որ իսկական արվեստագետը, նույնիսկ բնության երևույթներին դիմելիս կարողացել է արտահայտել մարդկային խոր ապրումներ։ Նայած թե գրողը կյանքի զարգացման ինչ տենդենցների է հավատացել, ինչի հետ է կապել իր հույսը, և ինչպես է սիրել կյանքը, այդ տեսանկյունից էլ իմաստավորել, շնչավորել է այս կամ այն երևույթը։ Եթե մայրամուտի արևը հուսալքված, կյանքի բոլոր հեռանկարները կորցրած մարդու հոգում արթնացնում է մահվան ապրումներ, ապա Սարմենի մոտ («Մեռնող արփին») այն ծնում է կենսասիրություն ու լավատեսություն։*

— Մեռնելիս անգամ
Աշխարհին բող ես
Վերջին ցոլքս տամ:

*Ինչպես Սարմենի, այնպես էլ Ալազանի, Տարոնցու, Հովհաննիսյանի, Կապուտիկյանի, Սահյանի, Սարոյանի, Նորենցի, Կարենցի և շատ ու շատ ուրիշների բանաստեղծություններում մենք հաճախ ենք հանդիպում խորհրդածությունների՝ անձրևի, ամպի, փշատենու, առվակի և բնության այլ երևույթների շուրջը։ Այս կարգի երգերում նույնպես զգացվում են պատմականորեն կոնկրետ մարդու խոհերն ու մտորումները։ Երբեմն տրտունջներ են լսվում այն մասին, թե սխալ է ամեն ինչի մեջ գաղափար որոնելը, թե դա վուլգար սոցիոլոգիզմ է, և այլ նման որակումներ։ Մեր կարծիքով այդ տրտունջների հիմքը գաղափարայնության մասին սխալ պատկերացումն է, ինչպես նաև արվեստի առանձնահատկության թյուր ըմբռնումը։ Դիմենք կոնկրետ օրինակի։*

*Ահա Մարո Մարգարյանի «Ձյուն է գալիս» բանաստեղծությունը։ Այստեղ խոսվում է այն մասին, թե ինչպես է ձյունը դանդաղ իջնում, ճերմակ ներկելով ողջ աշխարհը։ Բայց ինչպե՞ս է իջնում. անձայն ու անշշուկ։*

Ու չի ճանի
Նա ոչ մի ձայն,
Նա ոչ մի ձայն,
Ոչ մի շշուկ,
Միշտ այդպես է,
Այդպես է նա,
Տով բարիճներ



Կտա ճողին,
Լուռ կճալչի
Ու կգնա:

*Այսպիսով, կենսական հույզը, որով համակվում է ընթերցողը այս տողերը կարդալիս, առաջացնում է նաև խոհեր այն մարդկանց համեստության մասին, որոնք իսկապես ծով բարիքներ են տալիս աշխարհին, բայց երբեք կուրծք չեն ծեծում, չեն թմբկահարում իրենց «ես»-ը։*

*Արվեստի մեջ հույզի ու գաղափարի փոխադարձ կապի անտեսումը որոշ գրականագետների հանգեցրեց այն բանին, որ փորձեցին սոցիալիստական ռեալիզմի գրականությունից դուրս համարել ռուսական բնության ու ռուս մարդու խոշորագույն երգիչ Մ. Պրիշվինի ստեղծագործությունը։ Ո՞րն է այդ սխալի հիմքը. այն, որ բնությունը միշտ էլ վշտի կամ ուրախության տրամադրություններ է առաջացրել բոլոր դարերի մարդկանց հոգում, և որպես հավերժական թեմա՝ չի կարող կրել արդիականության կնիքը։ Այդ ամենը կարող էր ճշմարիտ լինել միայն այն դեպքում, երբ զգացմունքը կտրում ես կոնկրետ մարդուց, իսկ մարդուն՝ իր ժամանակից։ Բայց քանի որ դրանք սերտորեն կապված են իրար, փոխվում ու զարգանում են, անհեթեթություն կլիներ քարացած հոգեվիճակներ որոնել։*

*Գորկու հերոսներից մեկը, սիրո ողբերգություն ապրելուց հետո, խորհրդածում է. ինչ լավ կ լինել այնպիսի մարդ, որ կարողանար հասկանալ այս ամենը. երեկո, երկինք, աստղեր, նիրհող քաղաք և քո խոհերը, որ կարողանար իմանալ թե ինչի են պետք դրանք, ի՞նչ միտք ու խոհ են թաքնված այդ ամենի մեջ, որ իմանար, թե ինքն ինչի՞ է պետք և որն է իր տեղն աշխարհում. Թերևս այն ժամ այդ մարդը կարողանար ամբողջ կյանքը դարձնել այս երեկոյի պես ջերմ ու քնքուշ և մարդկանց հարազատացնել այն աստիճան, որ յուրաքանչյուրն ուրիշի մեջ տեսներ իրեն ու չվախենար նրանից։*

*Այդ տեսանկյունից մոտենալով վերջին տարիների լիրիկային, չենք կարող չնշել, որ ստեղծվել են ոչ քիչ թվով երգեր, որտեղ իշխողը կյանքի սերն է և սիրո մեջ կյանքի հաստատումը։ Այսօրվա լիրիկայի հերոսը իրականությանը նայում է տիրոջ աչքերով, օժտված է բարոյական վեհ գծերով, անտարբեր չի շրջապատի և իր ճակատագրի նկատմամբ։ Մարո Մարգարյանը «Քարը» բանաստեղծության մեջ խոսում է այն մասին, թե ինչպիսի քնքշանք ու գեղեցկություն է ստանում քարը, երբ դնում են ելնող տան ճակատին։ Սակայն, սոսկալի է քարը, երբ լինում է մարդու պաղ կրծքի տակ։*

Այստեղ միայն
Միայն այստեղ
Քեզ ոչ մի երգ,
Քեզ ոչ մի ձեռք,
Քեզ չի օգնի ոչ մի բարիք,
Քեզ ոչ մի ջուր,
Ոչ մի աղբյուր,
Ոչ մի ծաղիկ չի զարդարի:

*Համո Սահյանի մոտ առավոտը («Առավոտ») չի բացվում հենց այնպես, բացվելու համար։ Թեկուզ գիշերն անցել է, և լույսն է բեկվել մարդկանց բիբերում, բայց ժայռերի մռայլ խոռոչներում դեռ համառում է մշուշը։*

Մեր հոգին արդեն չի համբերում,
Ոչ մի ծվենին մութ մշուշի:

Արտաքուստ թվում է, թե բնության մի շատ սովորական պահի նկարագիր է, սակայն աննկատելիորեն ընթերցողին ստիպում է խորհել մարդկային կյանքի երևույթների մասին, այն մասին, որ դեռ համառում է սոցիալական խավարը և չի ուզում հեշտությամբ վերանալ աշխարհից: Իսկ բոլորովին երիտասարդ բանաստեղծ Արամայիս Սահակյանը դիմելով ծաղկունքին, կարողացել է արտահայտել հայրենասիրական խոր զգացում, որի կարևոր գծերից է համեստությունը:

Ձեր անուշ բույրը թե ես մոռանամ,
Ինձ փուշ կոչեցեք, ծաղկունք հայրենի,
Բայց թե ձեզ համար չանել կյանքս տամ,
Դուք լուռ մնացեք, ծաղկունք հայրենի:

Օրինակները շատ են, որոնք վկայում են, որ սովետահայ լիրիկայի մտահոգության առարկան մարդն է, նրա բարոյական գեղեցիկ գծերի մարմնավորումը, ինչպես նաև վատառողջ զգացմունքների դատապարտումը: Մեզ կարող են ասել, որ վերը հիշատակված տրամադրությունների արտահայտությունը կարող ենք գտնել նաև անցյալի գրողների առանձին երկերում: Գտնել, իհարկե, կարող ենք և կան: Սակայն մեր խոսքը ոչ թե առանձին երկերի մասին է, այլ մի ամբողջ պոեզիայի ուղղության, նրա գաղափարական ու գեղարվեստական տենդենցների ու սոցիալական նշանակալիության մասին: Ջրի երկու կաթիլը միշտ էլ նման են իրար և անհնար է որոշել, թե որն է վերցված ավազակից, որը՝ փրփրաբաշ գետից: Այնպես որ գրական օրինակներին դիմելիս անհրաժեշտ է հստակ պատկերացում ունենալ նաև այն հոսանքի մասին, որտեղից վերցված է տվյալ փաստը, այլապես կարող ենք ընկնել շատ ցավալի թյուրիմացությունների ու մոլորությունների մեջ:

Այս ամենը մենք հարկ համարեցինք հիշեցնել, որովհետև դեռ կան պոետներ, որոնք ոչ միշտ են կարողանում խոհը, զգացմունքը գնահատել ժամանակի տեսանկյունից: Արդյունքը լինում է այն, որ մեկն առանց հուզվելու խոսում է սիրուց «ավար մնացած» «կախվելու պարանի» մասին, երկրորդը «սիրուց դառնացած» մենակ արագիլի նման տանջվում է, արցունք է թափում աշխարհի վրա, միամտորեն կարծելով, թե «աշխարհը բանաստեղծների հենց այդպիսի տանջանքն է սիրում», երրորդը սիրուց տանջվում է վանդակի մեջ: Այսօրինակ թախիծը գալիս է ոչ թե կյանքից, այլ գրական չմարսված ազդեցությունների հետևանք է: Պատմությունից հայտնի է, որ այն գրողն է կարողանում ազդեցություններ կրելով հանդերձ պահպանել ու խորացնել իր տաղանդի ինքնուրույնությունը, ով սերտորեն կապված է իր դարաշրջանին, արձագանքում է իր ժողովրդի այսօրվա պահանջներին: Ուրիշի գեղեցիկ խոսքի տաղանդավոր կրկնությունն անգամ (իսկ նման դեպքեր էլ են լինում) չի կարող գրողին փրկել էպիգոնությունից:

## ՏԱՂԱՆԴԻ ՈՒՂՂՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Գրական քննադատությանը հաճախ են կշտամբում, որ անբավարար է կատարում կյանքի ուսուցչի իր դերը, ոչ միշտ է կարողանում ժամանակին ու ճիշտ գնահատել գրական երևույթները, իսկ երբեմն էլ այս կամ այն երկին տված սխալ գնահատականով ապակողմնորոշում է գրողին ու ընթերցողին: Մեր կարծիքով քննադատության բացերից մեկն էլ այն է, որ նա քիչ է զբաղվում գրողի ճակատագրով, չի հետևում, թե ինչ ուղղությամբ է նա զարգանում, ինչպիսի փոխհարաբերության մեջ է արդիականության հետ: Մինչդեռ դա շատ կարևոր է: Տաղանդը հոգևոր այնպիսի մի ուժ է, որին պետք է կարենալ տիրել և ճիշտ ուղղություն տալ: Ինքնահոսի մատնելու դեպքում այն շատ շուտ կարող է հյուծվել իր անիմաստ շռայլությունների ու շռայլ վերացականությունների մեջ:



Պարտիայի XX համագումարից հետո ծավալված գաղափարական պայքարն անհատի պաշտամունքի բացասական հետևանքների վերացման համար, օգնեց գրողներին ավելի մոտ կանգնել կյանքին, ավելի պատասխանատու լինել իրենց տաղանդի նկատմամբ: Դրանում համոզվելու համար բավական է ծանոթանալ բանաստեղծների վերջին տարիներս լույս տեսած գրքերին, որոնց մեջ պատկերված են սովետական մարդու հայրենասիրական ապրումները:

Մարդկային բնավորությունները կերտելու այն հարուստ տրադիցիաները, որոնց զարգացմանն ու խորացմանն զգալի վնաս էր հասցրել «անկոնֆլիկտայնության» ու «ինքնաարտահայտման» տեսությունը, հաջողությամբ շարունակվում են, միաժամանակ սրելով պայքարը ապոլիտիկության, զգացմունքների գորշության, աշնան տերևաթափը հիշեցնող անպտուղ երազանքների դեմ:

Սխալված չենք լինի, եթե ասենք, որ այսօրվա պոեզիան դարձել է ավելի համարձակ կյանքի ինչպես դրական, այնպես էլ բացասական երևույթների պատկերման մեջ: Կան տաղանդներ, որոնք չեն կարող հանգիստ խղճով անցնել այս կամ այն թերության կողքով, որովհետև սիրում են կյանքը, գիտեն, թե ինչպիսի դժվարությամբ են ձեռք բերվել լավն ու գեղեցիկը: Միայն գաղափարական առողջ հենակետ ունենալու դեպքում գրողը կարող է ճիշտ մերկացնել բացասականը, նույնիսկ այն դեպքում, եթե տվյալ երկում ոչ մի խոսք չի ասված դրականի մասին:

Սիլվա Կապուտիկյանը գրել է «Գաղտնի քվեարկություն» խորագրով մի բանաստեղծություն: Առաջին հայացքից թվում է, թե անհնար է որևէ լուրջ բան գրել այդ սովորական երևույթի մասին: Տաղանդի ուժն էլ այն է, որ կարողանում է սովորական, արտաքուստ ոչ մի հրապույր չունեցող արարքի մեջ տեսնել մարդկային փոխհարաբերությունների հանգույցներ: Բանաստեղծության հերոսը քվեարկելուց հետո վերադառնում է տուն, դեռ ճանապարհին խիղճը սկսում է նրան տանջել այն բանի համար, որ ինքը քիչ առաջ ջնջել է մի ազնիվ ու շիտակ մարդու անուն, որը հենց նույն ժողովում քննադատական անաչառ խոսք է ասել նաև իր մասին: Այսքանը, ինչպես ասում են, դեռևս հանցանքի կեսն է: Ջնջելով այդ ազնիվ մարդու անունը, նա իր ձայնը տվել է մի քծնողի, ստորաքարշի, որը բոլորին հավասարապես ժպտում է ու ատում: Հիվանդագին եսասիրությունից ծնված հերոսի այդ արարքի մեջ Կապուտիկյանը իրավացիորեն տեսնում է այնպիսի մի չարիք, որը վնաս է բերում ընդհանուր գործին: Գաղտնի քվեարկությունը հասարակական ակտ է, որին պետք է մոտենալ ոչ թե անձնական նեղ տեսանկյունից, այլ մաքուր խղճով, ժողովրդի շահերին ծառայելու ազնիվ մղումով: Ահա գաղափարական այն եզրակացությունը, որին հանգում է ընթերցողը:

Կարելի է բազմաթիվ օրինակներ բերել նաև մյուս պոետների վերջին շրջանի երկերից, համոզվելու համար, թե ինչպիսի հաջող որոնումներ են կատարվում թեմատիկայի ընդլայնման ուղղությամբ։ Սակայն սխալ կլիներ կարծել, թե ամեն ինչ ընթանում է հարթ ու խաղաղ, թե այլևս աշխուժություն չեն ցուցաբերում գաղափարազուրկ պոեզիայի ռեցիդիվները, փորձեր չեն արվում ազգային սահմանափակությունն ու պատմական հնությունների առջև ծնրադրությունից աչք չփակելը ներկայացնել որպես հայրենասիրության արտահայտություն։ Ինչպես տեսանք, Կապուտիկյանը, քննադատելով բացասական մի կոնկրետ արարք, ընթերցողին վարակում է ազնիվ խոհերով ու կենսահաստատ մտքերով, օգնում նրան հասկանալու տվյալ արարքի վնասակարությունը։ Արտառոց տրամադրություններ ենք նկատում Գ. Էմինի «Դանթեական ափեր» պոեմում։ Հերոսի պոետ ընկերը զոհվում է Կերչի կռիվներում։ Հերոսը ծանր ապրումներ է ունենում—ինչպե՞ս պատասխանել զոհվածի մոր նամակին։ Եվ ահա չկարողանալով որոշել իր անելիքը մայրական մեծ վշտի հանդեպ, հերոսը հանգիստ խղճով բացականչում է.

Եվ ես, որբս, որ ողջ կյանքում
Երազել եմ զգվանք ու մայր,
Թեթևացած եմ ինձ զգում,
Որ չի ապրում մայրս հիմա։

Այսպիսով, փոխանակ հնարավորին չափ թեթևացնելու զոհված ընկերոջ մոր վիշտը, հերոսն ինքն է թեթևացած զգում, որ իր մայրը զոհվել է գաղթի ճանապարհին, չի ապրել և չի տեսել մայրերի վիշտը Հայրենական պատերազմի տարիներին։ Ինչպես տեսնում ենք, այստեղ ևս տիրում է նույն շրջված տրամաբանությունը։ Երբ Ավետիք Իսահակյանն ասում է, թե «սիրտս գայլերի թող բաժին դառնա, միայն թե մայրս մահս չիմանա», ապա ընթերցողը դրա մեջ տեսնում է որդիական անսահման կարոտ մոր նկատմամբ, որն սպասում է իր պանդուխտ ու թշվառ որդու վերադարձին։ Էմինի մոտ ճիշտ հակառակն է։ Լավ է, որ մայրը սրի է քաշվել գաղթի ճանապարհին, թե չէ նա էլ կարող էր վշտանալ իր ժողովրդի ծանր օրերին։ Այսպիսով, ինչ մերժելի է, Էմինի մոտ ներկայացվում է որպես առաքինություն։

Պարույր Սևակը կատարում է ճիշտ հակառակը. սա էլ առաքինությունն է համարում մերժելի։ «Մի պահ զղջում եմ» բանաստեղծության մեջ հեղինակը թվարկում է այն ամեն լավն ու բարին, որ ինքը կատարել է մարդկանց համար, իսկ վերջում հայտարարում.

Ու զղջում եմ ես մի պահ. սեր ու բարիք եմ ցանել,
Մինչդեռ պետք էր սեր ճայցել, իսկ բարիքը՝ վաճառել։

Ահա մի բարոյախոսություն, որն անհարիր է սովետական մարդուն և կսազեր միայն զգացմունքների մանրավաճառին։ Նման իմաստակությունները քիչ չեն Էմինի ու Սևակի բանաստեղծություններում։ Ինչո՞վ բացատրել այդ երկու շնորհալի պոետների վերջին տարիների հաճախակի սայթաքումները. կյանքի մակերեսային ճանաչողությամբ ու կենսական նյութի պակասով։ Նման դեպքերում երգը զրկվում է հուզականությունից, դռները լայն բացելով մտքի խաղերի ու վերացական դատողությունների առջև։ Ինչ խոսք, որ այդ տիպի բանաստեղծությունը չի կարող «երկաթե խոփի նման փորել կարծր հողը, ճամփա հարթելով կյանքում» բարձրին ու նորին։



Վեր է ամեն կասկածից, որ առաջիկա տարիներին սովետահայ պոեզիան կհաղթահարի այս կարգի թերությունները և բարձր վարպետությամբ կպատկերի սովետական ժողովրդի կոմունիզմի կառուցման պայծառ հերոսիկան։

## ՉՀԱՂԹԱՀԱՐՎԱԾ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Մենք ասացինք, որ սովետահայ պոեզիան լուրջ հաջողություններ է ձեռք բերել, դարձել է ավելի հուզական ու անմիջական։ Սակայն այդ ուժեղ պոեզիան ունի նաև լուրջ թերություններ, որոնք դեռևս չեն հաղթահարվել։ Առաջին բանը, որ անհանգստություն է պատճառում ընթերցողին, դա սիրային լիրիկայում նկատվող աղքատիկ զգացմունքների, անձնական նեղ ապրումների առատությունն է։ Համարյա բոլոր բանաստեղծական ժողովածուներում գերակշռողը անհաջող սիրուց առաջացած մտորումներն են, առաջին (դարձյալ չիրականացած) սիրո պաշտամունքը։ Բոլորի լիրիկական հերոսներն էլ սիրո երջանկությունը կամ տխրությունը գտնում են երեկվա մեջ։ Ամենուրեք ախ ու վախ է, տխրության ուխտավորի հառաչանքներ։ Մեկի հերոսը բախտավոր է դժբախտ սիրով (Հր. Հովհաննիսյան), մյուսը հնարավոր չի համարում երկու սրտերի բաժանումը, որովհետև՝ «թե սիրով էլ չեն շղթայված (սրտերը), գեթ կապված են տանջանքով» (Պ. Սևակ), երրորդի մոտ սերը «սիրածի պաղ ոտքերի տակ փռված կռնչացող արծիվ է» (Ն. Զարյան)։ Ս. Կապուտիկյանի հերոսուհին համառ կերպով տանջվում է մի մարդու համար, որի սիրտը բաց հյուրանոց է՝ «հեշտ գալիս են, հեշտ էլ գնում»։ Այսպես կարելի է անվերջ օրինակներ բերել, ցույց տալու համար, թե հաճախ ինչպիսի անտարբերությամբ են պոետները խոսում սիրո մասին, խուսափելով որոշակի դիրքորոշումից նաև այդ կարևոր զգացմունքի արտահայտությունները պատկերելիս։ Երկրորդ բացը՝ կեղծ, խաբուսիկ հուզականությունն է, որ որոշ գրողներ ձեռք են բերում պատմական խոշոր դեպքերի, բնության գեղեցկությունների ու արվեստի կոթողների թվարկումների միջոցով։ Այդօրինակ բանաստեղծություններ ունեն գրած Մարո Մարգարյանը, Հ. Շիրազը, Համո Սահյանը, Պ. Սևակը, Ա. Գրաշին և ուրիշներ։ Այդ տիպի բանաստեղծություններում հայրենիքը ներկայացվում է ինչ-որ ստատիկ վիճակում, թվարկվում են նրա անցյալի և ներկայի բարեմասնությունները առանց խոր ընդհանրացումների ու իմաստալից պատկերների։ Ըստ որում այդ թվարկումների մեջ գերակշռողը Անին է, Զվարթնոցը, Մասիսը, Ավարայրի ճակատամարտը, Սասնա ծուռը, մագաղաթյա մատյանը, մամռապատ խաչքարը, ապա մրգերի շտեմարանը, գինու մառանը, դեղձը, փրփուր հացը և այլն։

Մենք բնավ դեմ չենք, որ երգվի նաև Զվարթնոցը, մի կոթող, որով իրավունք ունի պարծենալու յուրաքանչյուր շինարար ժողովուրդ։ Խնդիրը սակայն այն է, թե պոետը ինչպես է կարողանում պահպանել ժամանակի շունչը նույնիսկ այն դեպքում, երբ իր ներշնչանքը քաղում է դարերի խորքից։

Պոեզիայում նկատվող երրորդ թերությունը, նույն մոտիվների կրկնությունններն են։ Եթե փորձենք հավաքել խարույկի ու անձրևի մասին գրած բոլոր բանաստեղծությունները, կգտնենք շատ ու շատ տարբերակներ, հղացումների ու պատկերների նմանություններ։ Նույնը կարելի է ասել նաև մանկության թեման շոշափող մի շարք բանաստեղծությունների մասին։ Իրար կրկնելու այս ուղին վտանգավոր է այն իմաստով, որ տանում է դեպի բա-

նաստեղծական խառնվածքների համահարթեցում, որին անխուսափելիորեն հետևում է ինքնատիպության կորուստը։

Նախահամագումարյան ելույթներում որոշ ընկերներ այն կարծիքն են արտահայտել, թե այսօրվա պոեզիայում բացակայում է քաղաքական պաթոսը, չկա շիկացած խոսք միջազգային կարևոր իրադարձությունների մասին։ Այս կատեգորիկ պնդումը միակողմանի լինելով հանդերձ, որոշ ճշմարտություն է պարունակում։ Անվիճելի է, որ հաջող պայքար մղելով պարագայնության, կյանքի գունազարդման տենդենցների դեմ, բանաստեղծները վերականգնեցին սովետահայ պոեզիայի մի շարք տրադիցիաները, ստեղծեցին առողջ խոհերի ու ապրումների երկեր։ Այդ պայքարից ոմանք սխալ եզրակացության եկան, առհասարակ պոեզիայից դուրս մղեցին իսկական հրապարակախոսությունը, քաղաքական սուր ու դիպուկ խոսքը, տարվելով լալկան ուռենիների ու ստվերների գովքով։ Իսկական պոեզիան միշտ էլ աչքի է ընկել իր քաղաքական սրությամբ, ժամանակի կարևոր խնդիրներին արձագանքելու կրքով։ Չկա և չի կարող լինել իսկական արվեստ առանց քաղաքական սրության։

## ԳՐԱԿԱՆ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԸ

Վերջերս գրաքննադատներից մեկը հետևյալ կարծիքն է հայտնել գրական նոր սերնդի առաջին քայլերի մասին. «Սովորաբար գրականության բնագավառում տիրապետող տենդենցները ցայտուն կերպով արտահայտվում են սկսնակների գրական փորձերում, որովհետև, բնական է, ասպարեզ իջնելով նրանք ժառանգում են տիրապետող ուղղությունը։ Այս իմաստով մեր սկսնակ բանաստեղծների ամբողջ մատենաշարը շատ լավ հայելի է արդի պոեզիայի գլխավոր գծի բնորոշման տեսակետից։ Պատահակա՞ն է արդյոք, որ սկսնակների ամբողջ մատենաշարին յուրահատուկ են մոտիվների և սենտիմենտալ զգացումների միօրինակությունը»։ Այս պնդումը պարունակում է երկու կոպիտ սխալ։ Նախ, գրականության պատմությանը դեռևս հայտնի չէ, որ տիրապետող տենդենցները ցայտուն կերպով արտահայտվեն սկսնակների գրական փորձերում։ Հայտնի է հակառակը։ Պուշկինը սկսնակ էր (լիցեում եղած ժամանակ), երբ դեմ գնաց տիրող տենդենցներին և սկիզբ դրեց նոր ժողովրդական պոեզիային։ Գորկին սկսնակ էր, երբ Չեխովը նկատեց, որ այդ պատանին գեղարվեստական խոսքի նոր տենդենցներ է բերում իր հետ, դրանք բնավ էլ նման չեն տիրապետող տենդենցներին։ Նույնը կարելի է ասել Շիրվանզադեի ու Թումանյանի մասին։ Ինչ վերաբերում է այսօրվա մեր սկսնակներին, ապա չի կարելի պնդել, թե նրանց միայն յուրահատուկ է մոտիվների ու սենտիմենտալ զգացումների միօրինակությունը, որն, իր հերթին, իբր արտացոլումն է սովետական պոեզիայի գլխավոր գծի։

Վերը մենք նշեցինք, թե սովետահայ պոեզիան գաղափարական ու գեղարվեստական ինչպիսի վերելք է ապրել գրողների երրորդ և չորրորդ համագումարների միջև ընկած ժամանակահատվածում, միաժամանակ ցույց տալով այն լուրջ թերությունները, որոնք դեռ չեն հաղթահարվել։ Առանց վարանումի կարելի է ասել, որ հրապարակ են եկել մի շարք շնորհալի երիտասարդներ, որոնց պետք է օգնել ո՛չ միայն թերությունների նշումով, այլև ընդգծումով այն լավի, գրականի, որ կա նրանց գրքերում։ Ա. Սահակյանի, Վ. Պետրոսյանի, Ս. Խարազյանի, Ն. Միքայելյանի, Լ. Դուրյանի, Լ. Միրիջանյանի, Ռ. Տոնյանի, Հ. Արթենյանի գրքերում կան բազմաթիվ գորշ բանաստեղծություններ, չնչին ապրումների գովք, կան սիրային նվոցներ ու անհաջող խորհրդածություններ կյանքի, «մահվան» ու բնության մասին։ Այդ տրամադրությունները գալիս են ոչ թե ավագների պոեզիայից, այլ կենսափորձի աղքատության արդյունք են, կյանքում կարևորը երկրորդականից զատելու վարպետության պակասի հետևանք։ Քանակի տեսակետից թերևս միջակությունը գերակշռող լինի։ Սակայն, երբ խոսք է բացվում ոչ թե այս կամ այն գրքի մասին, այլ մի ամբողջ գրական սերնդի ստեղծագործության մասին, չի կարելի միայն քանակով առաջնորդվել։ Վերը հիշատակված երիտասարդների առաջին ժողովածուներում կան նաև բանաստեղծություններ, որոնք նոր ու թարմ լինելուց բացի դեպի իսկական արվեստը տանող առողջ տենդենցների արտահայտություն են։ Ա. Սահակյանի «Մայրիկիս», Ս. Խարազյանի «Ռուս ընկերոջս», Վ. Պետրոսյանի «Դռնապահը», Լ. Միրիջանյանի «Խոսք՝ աշխարհի երիտասարդությանը» և ուրիշ բանաստեղծություններ կարդալիս չես կարող չզգալ, որ դրանք են հաղթելու վաղը, թեև այսօր սակավաթիվ են։ Այդ երգերում կան լիրիկական ինքնուրույն խոհեր, քաղաքական կրակոտ խոսք և անմիջականություն, սեփական հայացքով կյանքի երևույթները տեսնելու ու գնահատելու կարողություն։ Սրանք գրողի հատկություններ են, որոնք դժվարությամբ են ձեռք բերվել։ Բայց քանի որ դրանք քիչ են զարգացած, դժվար է նաև նկատելը և վեր հանելը։ Քննադատությունը իրավունք չունի շրջանցելու այդ դժվարությունը, ավելին, այն (քննադատությունը) առաջին հերթին պետք է օգնի հենց այդպիսի դժվարությունների հաղթահարմանը։

Գրականության մեջ էլ կան նորի ծիլեր, որի տեսնելը հմտություն և հարուստ փորձ է պահանջում նաև քննադատից։ Երիտասարդներին հաճախ են կշտամբում բնության ու սիրո երգեր գրելու համար։ Մեզ թվում է, որ այստեղ մեղքը ոչ բնությանն է, ոչ էլ սիրունը։ Մեկը կարող է իր ամբողջ կյանքում սեր երգել և լինել ժամանակի ամենաբարդ հարցերին արձագանքող գրողը։ Օրինակները հայտնի են։ Ուրեմն, խնդիրը սերը չէ, այլ այդ մեծ զգացումի արտահայտումը արվեստի նոր միջոցներով։

Գրական նոր սերնդի սիրային երգերը հիմնականում թույլ են, արտահայտում են անցողիկ, ոչ մնայուն ապրումներ։ Կոմունիզմ կառուցող մարդու սերը նույնքան մեծ է ու նշանակալից, որքան նրա գործը։ Ահա այս ճշմարտությունն է պակասում սիրային երգերին։ Սերը Աբովյանով թափառող երիտասարդի բարակ բեղերով կիսաերիզված ժպտի մեջ չպետք է որոնել, ոչ էլ սիրածի պատուհանի տակ անվերջ ետ ու առաջ քայլելու մեջ, այլ աշխատանքում, բառիս ամենալայն առումով, այն խոհերի ու ապրումների մեջ, որոնցով նա կյանք է մտել բարի գործ կատարելու համար։ Շրջմոլիկն ու անբանն էլ կարող են սիրել, սակայն դա չէ, որ պետք է դառնա պոեզիայի մտահոգության առարկան։ Ցավոք սրտի, շատ ու շատ սիրային երգերում (նաև ավագների մոտ) գերակշռում են շրջմոլիկի ապրումները ու «լոթի» դատողությունները։ Կասկած չկա, որ Հայաստանի գրողների միության համագումարը կարևոր ուշադրություն կդարձնի նաև գրական նոր սերնդին, որը եկել է նոր խոսք ասելու հաստատ հավատով։

Սովետահայ պոեզիան նոր վերելք է ապրում։ Զտեսնել այդ, կնշանակի սխալ պատկերացում ունենալ նաև թերությունների մասին։ Սովետահայ գրողների չորրորդ համագումարը անշուշտ լինելու է սրտաբաց ու անաչառ զրույցի այն ամբիոնը, որտեղից հնչելու է ճշմարտության խոսքը գրականության արդի վիճակի և նրա զարգացման հեռանկարների մասին։ Կոմունիստական պարտիան մեզ սովորեցնում է աչք չփակել թերությունների հանդեպ, չկատարել գաղափարական ոչ մի զիջում, ինչպես նաև թույլ չտալ, որ ժխտվի կատարված դրականը։ Ինչպես գեղարվեստական գրականության, այնպես էլ քննադատության մեջ հավասարապես վտանգավոր են սևացման ու գունազարդման տենդենցները։

Պատկերել, նշանակում է տեսնել ո՛չ միայն այսօրը, այլև վաղը, հստակ պատկերացում ունենալ կյանքի զարգացման օրենքների մասին, խորապես զգալ ու հավատալ նորի, առաջավորի հաղթանակին։ Սովետահայ պոեզիան իր լուրջ թերություններով ու բացերով հանդերձ տոգորված է հենց այդպիսի հավատով, կապված է ժողովրդի կյանքին, ծառայում է նրան մաքուր խղճով։

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԲԱՐՁՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

## Ս. ՈՍԿԱՆՅԱՆ

Կոմունիստը մեր հասարակության առաջամարտիկն է, անպարտիական մասսաների կազմակերպիչը։ Կրելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի անդամի վեհ ու պատվավոր կոչումը, նա ամեն բանում, առանձնապես աշխատանքում և կենցաղում, օրինակ է հանդիսանում բոլորի համար։

Աշխատանքի ու պայքարի բոլոր բնագավառներում կոմունիստները ցույց են տալիս անձնազոհություն, ժողովրդին անձնվեր ծառայելու և Սովետական պետության շահերն ամեն բանից վեր դասելու հոյակապ, միլիոնավոր օրինակներ։

Սովետական Միության պատմական նվաճումները պարտական ենք նախ և առաջ այն բանին, որ կոմունիստները միշտ և ամենուր հանդիսացել ու հանդիսանում են մեր դարաշրջանի ամենաազնիվ, ամենագիտակից և անձնվեր մարդիկ, որոնք իրենց ամբողջ կյանքը նվիրաբերում են կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Կոմունիստական պարտիայի խոշորագույն հաղթանակների վճռական պայմաններից մեկն էլ եղել և մնում է նրա շարքերի երկաթյա կարգապահությունը, միասնությունը և յուրաքանչյուր կոմունիստի կողմից իր պարտականությունների անթերի կատարումը։

Այժմ, երբ մեր երկրում կառուցվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, առավել հրամայական է դառնում պարտիական և պետական կարգապահության կիրառման գործում կոմունիստների, ինչպես և մեր բոլոր կադրերի անբասիր գործունեության ապահովումը։ Սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները այսուհետև էլ պետք է հետևեն կոմունիստների կողմից կանոնադրական պարտավորությունների կատարմանը։ Այդ գործում չպետք է թույլ տալ և ոչ մի շեղում, կանոնադրության և ոչ մի խախտում, որը բացառիկ կարևոր նշանակություն ունի պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացման և կոմունիստների դաստիարակության համար։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան, որը կառուցված է դեմոկրատական ցենտրալիզմի հիմունքներով, բոլոր կոմունիստներին, լինեն ղեկավար պոստում թե շարքային աշխատանքում, դաստիարակում է կարգապահության, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության ոգով։ Պարտիան իր գործունեության մեջ չի հանդուրժում երկու կարգապահություն. բոլոր կոմունիստներն էլ հավասար պատասխանատվություն են կրում իրենց գործունեության համար։ Դա բխում է ՍՄԿՊ Կանոնադրությունից, ուր ասված է. «...Պարտիան ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար, անկախ նրանց ծառայությունններից և

գրված պոստերից»։ Լենինյան պարտիայի այս սկզբունքը, որը սահմանվել է մեր պարտիայի կազմակերպման առաջին օրվանից, մշտապես ապահովում է պարտիայի շարքերի կուռ միասնությունը։ Միշտ էլ Կենտրոնական Կոմիտեն իր պրակտիկ գործունեության մեջ ղեկավարվել է այդ սկզբունքով և օրինակ է հանդիսացել բոլոր սկզբնական կազմակերպությունների համար, քաջ գիտակցելով, որ միայն պարտիայի Կանոնադրության պահանջների անշեղ կիրառումը կարող է ապահովել մեր պարտիայի մարտունակությունը։

Երևան քաղաքի պարտիական կազմակերպությունները ու կոմունիստները, լավ հասկանալով լենինյան պարտիայի այս սկզբունքը, հաջողությամբ կիրառում են այն իրենց ամենօրյա պրակտիկ գործունեության մեջ։ Այս մասին են վկայում մեր քաղաքի աշխատավորության այն բոլոր հաջողությունները, որոնք ձեռք են բերված արտադրության պլանների կատարման ու գերակատարման, պետական կարգապահության բարձրացման, քաղաքի բարեկարգման և շատ այլ բնագավառներում։

Ցավոք սրտի, մեր որոշ կազմակերպություններում և առանձին կոմունիստների մոտ նկատվում են վատառողջ, պարտիայի կազմակերպական սկզբունքներին հակասող տրամադրություններ, որոնք, առերևույթ կարծես թե մեծ վնաս չեն հասցնում, սակայն անբավարար պայքարն այդ երևույթի դեմ հետագայում կարող է հանգեցնել անցանկալի հետևանքների։ Որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ, առանձին կոմունիստներ, պարտիական, սովետական օրգաններում աշխատող ընկերներ այս կամ այն կոմունիստի՝ կոմունիստին ոչ վայել վարքագիծը գնահատելիս չեն ելնում պարտիայի կանոնադրական պահանջներից։ Այդ հարցում ստեղծվել է, այսպես՝ ասած, «մոտեցման նոր ձև», ըստ որի, ճիշտ գնահատել որևէ կոմունիստի անվայել վարքագիծը, նշանակում է՝ խոսքով միայն դատապարտել այդ կոմունիստին, իսկ կազմակերպական միջոցառումների ժամանակ ցուցաբերել «ընկերականություն», կամ, ինչպես շատերն են ասում, «մարդասիրություն»։ Արդյոք դրա մասին չի ասում այն, որ Լենինյան շրջանի միլիցիայի բաժնի սկզբնական պարտկազմակերպության բյուրոն, քննելով պարտիայի անդամ Ս. Ավագյանի հարցը, որոշել է սահմանափակվել նկատողություն անելով և այն անձնական գործում գրանցելով։ Արդյոք պատժի այդ չափը բավակա՞ն է Ս. Ավագյանին դաստիարակելու համար։ Ավագյանը, ինչպես բյուրոն է նշում իր որոշման մեջ, չի վայելում կազմակերպության հարգանքն ու վստահությունը, ցոփ կյանք է վարում, անօրինական կերպով գրանցել է շատ քաղաքացիների՝ նրանցից կաշառք վերցնելով։ Պարտբյուրոյի ընտրած պատժի չափանիշը կարո՞ղ է դաստիարակչական միջոց հանդիսանալ Ավագյանի և նրա շրջապատի համար, այդ որոշումը բխո՞ւմ է պարտիայի կանոնադրական սկզբունքներից։ Իհարկե, ոչ։

Եվս մի օրինակ. վերջերս պարտիայի Ստալինյան շրջանային կոմիտեի բյուրոն քննարկել է երկաթ-բետոնե կոնստրուկցիաների № 2 գործարանի դիրեկտոր Սևոյանի՝ կոմունիստին ոչ վայել վարքագիծը։ Ինչպես գրված է որոշման մեջ, Սևոյանը չարաշահել է իր դիրքը, կատարել անօրինական վճարումներ, խախտել է ֆինանսական-հաշվիքային կարգապահությունը, չունենալով մարդատար ավտոմեքենայի վարորդի հաստիք, անօրինական կերպով որպես վարորդ ձևակերպել է մի մարդու, որն ունի սեփական մեքենա, և այդ մեքենայի պահպանման և շահագործման ծախսերը վճարել է



գործարանի պարգևատրման գումարից։ Նա զբաղվել է կաշառակերությամբ, շատ հաճախ խախտել է պարտիական կարգապահությունը։ 1956—57 թթ. ստացած 25.466 ռուբ. գումարից պարտիական անդամավճար չի մուծել։ Բյուրոյի որոշման մեջ նշված է նաև, որ գործարանում ցածր է պետական կարգապահությունը և այլն։

Այս ամենից հետո Սևոյանին Ստալինյան շրջկոմի բյուրոն անում է նկատողություն՝ գրանցելով անձնական գործում և ազատում է աշխատանքից։ Սակայն այս «ընկերական», «մարդասիրական» վերաբերմունքն անգամ չի գոհացնում «կոմունիստ» Սևոյանին, որը հանդգնում է նույնիսկ քաղաքային կոմիտեին բողոքել այդ որոշման դեմ, գտնելով այն չափազանց խիստ։

Պարտիայի անդամ իրավաբան Թորգոմ Գևորգյանը, որը բռնվել է կաշառակերության մեջ, նույնպես մնացել է ՍՄԿՊ շարքերում, ստանալով միայն խիստ նկատողություն։

Խնդիրն այն է, որ պարտիայի որոշ շրջանային կոմիտեներ իրենց որոշումներն այս կամ այն պարտիականի հակահասարակական վարքի նկատմամբ չեն հրապարակում պարտիական ընկերների շրջանում։ Դրա հետևանքով էլ այդ որոշումները գրեթե կորցնում են իրենց դաստիարակչական բուն նշանակությունը։ Մեր կարծիքով, քաղկոմների, շրջկոմների այն որոշումները, որոնք վերաբերում են որևէ պարտիականի վարքագծին, պետք է հրապարակվեն պարտիական կազմակերպություններում և անհրաժեշտության դեպքում՝ մամուլում։ Այս հանգամանքը պարտիական աշխատանքում մանրուք չէ։ Պարտիական օրգանների նման որոշումները եթե մի կողմից տույժ են զանցառուների համար, ապա մյուս կողմից՝ իրենց ներգործման ուժով կոչված են կանխելու պարտիայի Կանոնադրության որևէ խախտում։ Հարցի այս կողմին հարկավոր է լուրջ ուշադրություն դարձնել։

Կաշառակերը, պետական գումարներ հափշտակողը, շինանյութեր շռայլողը, պարտիական կարգապահությունը խախտողը արժանի չէ մնալու ՍՄԿՊ շարքերում։

Յուրաքանչյուր կոմունիստի վարքագիծը գնահատելիս պետք է ելնել միայն և միայն պարտիայի Կանոնադրության սկզբունքներից և ոչ թե սուբյեկտիվ, անձնական, ընկերական մոտեցումից։ Պարտիայի Կանոնադրության սկզբունքների խախտումը ծնում է կոմունիստին ոչ հատուկ գծեր, քծնանք պաշտոնյա, ղեկավար մարդու հանդեպ, շողոքորթություն, փառամոլություն։

Սովետական օրինականության խախտողները, մեր հասարակությանը խորթ արարքներով զբաղվողները ո՛չ միայն իրավունք չունեն լինելու պարտիայի շարքերում, այլև պետք է ենթարկվեն քրեական խիստ պատասխանատվության։ Կոմունիստ լինելու իրավունք ունի այն մարդը, ով իր բախտն ազնվորեն կապել է մեր ժողովրդի բախտի հետ և պատվով ծառայում է նրա շահերին։ Բոլոր նրանք, ովքեր իրենց պարտիականությունն օգտագործում են կարիերիստական, անձնական շահի նպատակներով, տեղ չպետք է ունենան պարտիայի շարքերում։ Երբեք չպետք է մոռանալ մեր պարտիայի հիմնադիր մեծ Լենինի անմահ խոսքերը, որ Կոմունիստական պարտիան մեր դարի միտքը, խիղճը և պատիվն է։ Ոչ մի կոմունիստ, լինի նա շարքային թե ղեկավար աշխատող, շրջկոմի, կամ սկզբնական կազմակերպության քարտուղար, իրավունք չունի մոռանալու մեր պարտիայի նպատակն ու նրա շահերը,

և մարդկանց գնահատելիս միշտ պետք է ելնի պարտիայի միասնության, նրա պատիվը բարձր պահելու շահերից։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի միասնությունն իր արտահայտությունն է գտնում նաև այն բանում, որ ամեն մի կոմունիստ պարտավոր է, ինչպես ասված է Կանոնադրության մեջ, «պահպանել պարտիական և պետական կարգապահությունը, որը հավասարապես պարտադիր է պարտիայի բոլոր անդամների համար». նա, ով խախտում է պարտիական կարգապահությունը, մեծ վնաս է հասցնում պարտիայի միասնությանը և «այդ պատճառով էլ անհամատեղելի է նրա շարքերում գտնվելու հետ»։

Պարտիական և պետական կարգապահության հարցը անխզելիորեն կապված է պարտիայի և պետության որոշումների կատարման հետ։ Պատահական չէ, որ պարտիայի անդամի հիմնական պարտականություններից մեկը որոշումների կատարումն է։ Ինչպես Կանոնադրության մեջ է ասված, կոմունիստի համար «...բավական չէ միայն պարտիական որոշումներին համաձայն լինելը, պարտիայի անդամը պարտավոր է պայքարել այդ որոշումները կենսագործելու համար»։ «Պարտիայի որոշումների նկատմամբ կոմունիստների պասիվ և ձևական վերաբերմունքը,— ասված է Կանոնադրության մեջ,— թուլացնում է պարտիայի մարտունակությունը»։ Հասկանալի է, որ նա, ով չի պայքարում պարտիայի միասնականության համար, չի կարող լինել պարտիայի շարքերում։

Կոմունիստների պարտականությունների մասին գրվել են բազմաթիվ հոդվածներ, կազմակերպվել են սեմինարներ, սակայն թե՛ որոշումների կատարման կազմակերպումը և թե՛ պարտիական ու պետական կարգապահության հարցերը դեռևս չեն գտնվում առանձին սկզբնական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Շատ փաստեր խոսում են այն մասին, որ ընդունված որոշումների զգալի մասը նշված ժամկետներում չի կատարվում կամ ընդհանրապես չի կատարվում։ Պարտիական, սովետական կազմակերպությունների կողմից չեն ձեռնարկվում կազմակերպական խիստ միջոցառումներ այն մարդկանց նկատմամբ, ովքեր հանդգնում են չկատարել որոշումները։ Շատ դեպքերում ո՛չ միայն չեն պայքարում այդ որոշումների կատարումը կազմակերպելու համար, այլ նույնիսկ փնտրում են զանազան պատճառաբանություններ՝ իրենց ոչ պարտիական, ոչ պետական վերաբերմունքը արդարացնելու։ Բերենք թեկուզ մի օրինակ. Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Մինիստրների Սովետը, համատեղ քննարկելով ռեսպուբլիկայում բեռնատար ավտոտրանսպորտի վիճակը, ընդունեցին կոնկրետ որոշում։ Ելնելով այն պրակտիկայից, որ բեռնատար տրանսպորտը բազմաթիվ կազմակերպություններում իր լրիվ կարողությամբ չի օգտագործվում և ցրվածության պատճառով լավ չի պահպանվում, Կենտրոնական Կոմիտեի և Մինիստրների Սովետի համատեղ որոշումը պարտավորեցնում է բոլոր կազմակերպություններին՝ այն կենտրոնացնել Ավտոմինիստրության սիստեմում, ստեղծել տերիտորիալ խոշոր գարաժներ, իրենց տեխնիկական բոլոր հարմարություններով ու պայմաններով, որը և հնարավորություն կստեղծի տրանսպորտն ավելի ռացիոնալ ու նպատակահարմար օգտագործելու։ Որոշման մեջ ուղղակի նշված է՝ բոլոր մեքենաները հանձնել մինչև հոկտեմբերի 1-ը։

Պրակտիկան դժբախտաբար ցույց է տալիս, որ Երևան քաղաքի որոշ



կազմակերպություններում կան կոմունիստ ընկերներ, որոնք իրենց նեղ հիմնարկային շահերը վեր են դասում համապետական շահերից։ Դրանցից են՝ գյուղատնտեսական ինստիտուտի, Շահումյանի շրջանի Հայառի բաժանմունքի, Ակադեմիայի ինստիտուտների, Պարտիական դպրոցի և այլ հիմնարկությունների ղեկավարները, որոնք ո՛չ միայն ժամանակին չեն կատարել հիշյալ որոշումը, այլև ամեն կերպ դիմադրում էին այդ որոշման կատարմանը, արդարանալով անհիմն պատճառաբանություններով։

Բերենք մի այլ օրինակ. համաձայն գոյություն ունեցող կառավարական որոշման, ոչ մի կազմակերպություն իրավունք չունի բնակարանային տարածությունը շահագործման հանձնել և կառուցված բնակելի շենքը բնակեցնել առանց Քաղաքային Սովետի հատուկ հանձնաժողովի ընդունման և թույլտվության։ Այս որոշման նպատակն է բնակչությանը հանձնել լիովին ավարտված և որակյալ բնակարաններ։ Սակայն միայն 1958 թվականին Երևան քաղաքում տեղի է ունեցել այս որոշման խախտման տասը դեպք։ Օրինակ՝ Կուլտուրայի մինիստրության բնակելի շենքը (Կոմանցիների փողոցի վրա), որն ունի շինարարական շատ թերություններ, բնակեցվել է մինիստրության կողմից՝ առանց ընդունող հանձնաժողովի։ Նույնը կատարվել է Ալրաղաց կոմբինատի, Կաթի գործարանի, Երկրաբանական վարչության և այլ հիմնարկների ղեկավարների կողմից։

Երևանի քաղաքային Սովետի գործկոմը հատուկ գրությամբ հանձնարարել է քաղաքային դատախազությանը, պատասխանատվության կանչել այն մարդկանց, որոնք խախտել են օրինականությունը և, առանց պետական հանձնաժողովի, շահագործման են հանձնել անավարտ բնակելի շենքերը։ Սակայն մինչև հիմա դրանցից և ոչ մեկը պատասխանատվության չի ենթարկվել։

Նման երևույթների նկատմամբ պարտիական կազմակերպությունների կողմից երբեմն ցուցաբերվող լոյալ վերաբերմունքն իր բացասական ազդեցությունն է թողել նաև ադմինիստրատիվ, դատական-դատախազական օրգանների աշխատանքի վրա։

Կարելի է բերել պարտիական ու պետական որոշումների չկատարման, նրանց ոտնահարման շատ այլ օրինակներ, որոնց տեղյակ են թե՛ պարտիական և թե՛ սովետական ապարատի աշխատողները։ Ինչո՞վ բացատրել այն, որ առանձին մարդիկ, հիմնարկության, ձեռնարկության ղեկավարներ, կոմունիստ ընկերներ, որոշ դեպքերում իրենց պրակտիկ գործունեությամբ անցնում են պարտիական ու սովետական օրինականության սահմաններից։ Ասել, որ որոշումների չկատարման պատճառներից հիմնականը այդ ղեկավարների, կոմունիստների գիտակցական ցածր մակարդակն է, կլիներ ոչ ճիշտ։ Նրանց մեծամասնությունը քաջ գիտակցում է այդ բոլորը, սակայն իրեն թույլ է տալիս չկատարել այս կամ այն որոշումը, գտնելով, որ դա իրեն կամ իր ղեկավարած ձեռնարկությանը օգուտ չի բերում։ Այդպիսի մարդիկ չեն ցանկանում մտածել պետականորեն, ընդհանուրի շահերից ելնելով, ընդհանուրի շահերից միշտ բարձր են դասում իրենց շահերը, եսը։

Դրա հիմնական պատճառը պատասխանատվության զգացումի բացակայությունն է։ Պարտիական Կանոնադրության այն կետերը, որոնք վերաբերում են որոշումների կատարմանը, պարտիական ու պետական կարգապահության հարցերին, անտեսվում են։

Որոշ սկզբնական կազմակերպություններ պարտիական պատասխանա-

տվության չեն ենթարկում այն կոմունիստներին, որոնք խախտում են կարգապահությունը. դեռ ավելին, շատ դեպքերում պարտիական կազմակերպությունների բյուրոներն ու քարտուղարները իրենց պասսիվ վերաբերմունքով առիթ են տալիս նման երևույթների, իսկ որոշ դեպքերում էլ առանձին շրջկոմների միջոցով միջամտում են, պաշտպանում անկարգապահ ղեկավարին, կոմունիստին, ամեն կերպ աշխատելով ազատել նրան պատասխանատվությունից։ Պարտիական, սովետական որոշ օրգանների կողմից պարտիական և պետական որոշումները չկատարողների նկատմամբ հանդես է բերվել լիբերալիզմ, կեղծ ընկերասիրություն, որը չափազանց բացասաբար է ազդել մյուս կազմակերպությունների ու կոմունիստների վրա։

Կարգապահության խախտման մյուս պատճառներից մեկը պետք է համարել նաև այն, որ քաղաքի որոշ պարտիական կազմակերպություններում կոմունիստների դաստիարակչական աշխատանքը միակողմանի է, կտրված քաղաքական աշխատանքից, Կանոնադրության պահանջների կոնկրետ կիրառումից։ Բոլոր դեպքերում խոսելով կոմունիստի կողմից թույլ տրված այս կամ այն բացասական արարքի մասին, ագիտացիա են անում, որպեսզի նման արարք չկրկնվի, համոզում են, որ սխալվել է. համոզման մեթոդը, իհարկե, կարևոր է և շատ անհրաժեշտ մարդկանց, հատկապես երիտասարդ կոմունիստների դաստիարակման համար։ Սակայն, միշտ պետք է լինել ուշադիր, կարողանալ կոմունիստների կատարած սխալը տարբերել հակապարտիական կամ հակապետական արարքից, գտնել սխալի պատճառները։ Բայց երբ բացարձակապես ներում են կաշառակերությամբ զբաղվողին, պետական գույքը հափշտակողին, պարտիական ու պետական որոշումների կատարումը չարամտորեն ձախողողին, պարտիական և պետական կարգապահության պահանջներին չենթարկվողին, այսպիսի վերաբերմունքը ոչնչով չի առնչվում պարտիայի Կանոնադրության սկզբունքների հետ և ոչ մի դաստիարակչական ազդեցություն չի գործի, չի օգնի մարդկանց, հատկապես կյանքի փորձ չունեցող երիտասարդ կոմունիստների ճիշտ դաստիարակությանը։

Սկզբնական կազմակերպությունները, նրանց քարտուղարներն իրենց աշխատանքի հիմնական կողմը պետք է համարեն նաև կոմունիստների վարքագիծն ուսումնասիրելը, նրան բազմակողմանիորեն ճանաչելը. պետք է իմանալ, թե յուրաքանչյուր կոմունիստ ինչպես է իրեն դրսևորում աշխատանքի մեջ, շրջապատում, ընտանիքում, հասնել այն բանին, որ բոլոր կոմունիստները օրինակ հանդիսանան անպարտիական մասսաների համար։

Պարտիական կազմակերպության ուշադրությունից չպետք է վրիպի կոմունիստի թույլ տված որևէ անվայել արարք. ամեն մի կոմունիստ պետք է զգա պարտիական կոլեկտիվի մշտական դաստիարակչական ազդեցությունը և պատասխանատվություն կրի նրա առաջ։

Որոշ կազմակերպություններում գոյություն ունի անհանդուրժելի վերաբերմունք դեպի կոմունիստի անվայել վարքագիծը։ Շատ դեպքերում սահմանափակվում են կազմակերպության քարտուղարի խրատական զրույցով, կամ լավագույն դեպքում՝ կազմակերպության բյուրոյում նրա արարքը քննարկելով։ Այսպիսի վերաբերմունք ցուցաբերվում է մինչև իսկ պաշտոնյա անձանց նկատմամբ, և պատճառաբանում են, որ չարժե ղեկավար ընկերոջը վարկաբեկել իր ենթակաների առաջ։ Նման վերաբերմունքը պարտիական կազմակերպության մեջ ստեղծում է երկու կարգապահություն, կեղծ ընկերակա-



նություն դիրեկտորի և պարտկազմակերպության քարտուղարի միջև, որը խիստ հարվածում է գործի շահերին։

Այդպիսի վերաբերմունքի արդյունք է մարդատար տաքսոմոտորային ավտոպարկի սկզբնական պարտիական կազմակերպությունում տիրող վիճակը։ Այստեղ 75 կոմունիստ ավտովարորդներից այս տարվա ընթացքում պետական պլանները կատարել են միայն 35 հոգի. 30 տոկոսը թույլ են տվել կարգապահության տարբեր տեսակի խախտումներ, ընդհուպ մինչև ավտովթարներն ու կաշառակերության փաստերը։ Պարկում շատ հաճախ վարորդները կաշառք են տալիս դիսպետչերին, անգամ պահակին։ Այս բոլորը կատարվում է որոշ կոմունիստների ներկայությամբ, որոշ դեպքերում, նույնիսկ, նրանց մասնակցությամբ, սակայն կոմունիստներից և ոչ մեկը արժանի պատիժ չի ստացել այդպիսի անհանդուրժելի վարքագծի համար։ Այսպիսի երևույթների նկատմամբ պարտիական կազմակերպության անտարբեր վերաբերմունքը տարել է ավելի հեռուն. կաշառակերության մեջ բռնվել է նաև նախկին գլխավոր ինժեներ Գ. Կարապետյանը։ Այս արտառոց արարքը չի արժանացել անգամ կազմակերպության ուշադրությանը։ Հասկանալի է, որ այդպիսի մարդկանց պարտիայի շարքերում գտնվելը օգուտ չի բերի մեր ընդհանուր գործին։

Բոլոր մարդկանց նկատմամբ օրենքի և որոշումների կիրառման գործում նույն վերաբերմունքը մեծ նշանակություն ունի մարդկանց դաստիարակության, հատկապես որոշումների կատարման և պարտիական ու պետական կարգապահության բարձրացման համար։ Սակայն քաղաքի որոշ կազմակերպություններում, հատկապես սովետական ապարատում, այդ գործում նկատելի է մի բացասական երևույթ. այդ կազմակերպությունները և սովետական օրգանները ընդունում են որոշումներ, որոնք հավասարապես վերաբերում են բոլոր քաղաքացիներին, անկախ նրանց պաշտոնից ու անցյալի ծառայություններից։ Սակայն, երբ գալիս է այդ որոշումների կիրառման ժամանակը, սկսվում է բացառությունների մի ամբողջ շարան։ Լինում են դեպքեր, երբ բացառություններն այնքան շատ են լինում, որ որոշումները կորցնում են իրենց բարոյական ներգործության ուժը, արժեքազրկվում են։ Զարմանալի է, որ այդ որոշումները խախտողները և բացառություն թույլ տվողները լինում են անգամ մարդիկ, որոնք իրենք են քննարկել և մասնակցել դրանց ընդունմանը։ Դրանում համոզվելու համար բավական է ուսումնասիրել շրջանային Սովետների, Քաղսովետի, մինիստրությունների, գերատեսչությունների որոշումներն ու հրամանները, որտեղ կհանդիպենք բազմաթիվ այսպիսի արտահայտությունների. «Բացառության կարգով թույլ տալ», «Իբրև բացառություն», «Բացառության կարգով զիջել» և այլն։

Դրանից օգտվում են որոշ քաղաքացիներ, որոնք իրենց անձնական անօրինական պահանջները բավարարելու համար դիմում են բոլոր օրգաններին, պարտիական ու սովետական ղեկավարներին, միայն թե «բացառության կարգով» լուծեն իրենց ցանկացած հարցը։ Շատ դեպքերում նրանց այդ հաջողվում է, որովհետև կան ղեկավար աշխատողներ, որոնք իրենց հեղինակությունը «բարձրացնելու» համար պատրաստ են զոհաբերելու կոլեկտիվ օրգանի կողմից ընդունված որոշումը։ Այդպիսի կոմունիստ ընկերները էժան հեղինակություն են ձեռք բերում ի հաշիվ պարտիական ու պետական օրգանի հեղինակության։ Այդպիսի երևույթների դեմ սկզբնական պարտիական կազ-

*մակերպությունները պետք է հետևողականորեն պայքարեն, կոլեգիալ ղեկավարության հարցերը կապելով անձնական պատասխանատվության հետ։*

*Նման երևույթների դեմ պայքար կազմակերպելու գործում մեծ նշանակություն ունի պարտիական ինֆորմացիայի լավ դրվածքը։ Պարտիական ինֆորմացիան հնարավորություն է տալիս ճիշտ դիրք գրավել այս կամ այն հարցը լուծելիս, պարտիական մասսաներին տեղյակ է պահում վերադաս պարտիական ու սովետական օրգաններին անհանգստացնող հարցերին։ Այս տեսակետից Երևանի որոշ պարտիական կազմակերպություններն օրինակ չեն վերցնում վերադաս պարտիական օրգաններից, որոնք պարտիական կազմակերպություններին սիստեմատիկորեն տեղյակ են պահում իրենց որոշումներին, ինչպես և այն խնդիրներին, որոնք պետք է քննարկվեն ապագայում։*

*Շատ դեպքերում Երևանի շրջկոմներում, քաղկոմում ընդունվում են լավ որոշումներ, ցուցաբերվում է ճիշտ վերաբերմունք այս կամ այն կոմունիստի արարքի նկատմամբ, սակայն այդ որոշման մասին իմանում են միայն բյուրոյի անդամները, լավագույն դեպքում՝ պարտիական ապարատի աշխատողները։*

*Պարտիական ինֆորմացիան պետք է կողմնորոշի կազմակերպություններին, ստեղծի միասնական վերաբերմունք առաջադրվող հարցերի նկատմամբ, որը հնարավորություն կտա լսելու քննադատական խոսքը և գործնական առաջարկությունները։ Պարտիական լայն ինֆորմացիայի դեպքում պարտիական կազմակերպությունները ո՛չ միայն ճիշտ կկողմնորոշվեն կոմունիստների դաստիարակության գործում, այլև պարտիական մասսաների համար կստեղծեն հնարավորություններ՝ ներքևից տեսնելու և գնահատելու վերադաս պարտիական օրգանի գործունեությունը, իմանալու, թե նա ճի՞շտ է կիրառում պարտիայի Կանոնադրության պահանջները։ Այն նոր լիցք կտա պարտիական օրգաններին՝ իրենց առջև դրված ավելի մեծ ու բարդ խնդիրների լուծման համար, կապահովի պարտիական լայն մասսաների ակտիվ մասնակցությունը պարտիական ու պետական առաջադրանքների հաջող լուծման գործում։*

---

# ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՆՈՅԵՄԲԵՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՆՅՈՒԹԵՐԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԴՊՐՈՑԻ ԱՌԱՋԻԿԱ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

*ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը քննարկեց և հավանություն տվեց ինչպես «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի» մասին ընկեր Խրուշչովի զեկուցման, այնպես էլ «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսներին։ Չի կարելի չտեսնել ներքին օրգանական կապը այդ երկու պատմական փաստաթղթերի միջև։*

*Կոնտրոլ թվերի մասին թեզիսներում շարադրված են կոմունիզմի կառուցման հոյակապ ուրվագծերը։ Դպրոցի վերակառուցման թեզիսներում դրսևորված է կոմունիզմի նվաճումների համար մարտնչող երիտասարդության նկատմամբ պարտիական ու պետական մեծ հոգատարությունը։ Այդ երկու փաստաթղթերի համադրությունը միանգամայն հասկանալի է դարձնում ժողովրդական կրթության վերակառուցման նպատակն ու խնդիրները։*

*Մեր հասարակությունը թևակոխում է կոմունիստական հասարակության ծավալուն շինարարության նոր ժամանակաշրջան։ Երկրի պատմական զարգացման նոր էտապին պետք է համապատասխանի աճող սերնդի կրթության ու դաստիարակության սիստեմը։*

*Ժողովրդական կրթության սիստեմի վերակառուցման հարցը դրվում է ոչ թե նրա համար, որ դպրոցը վատ է կատարել իր խնդիրները, ընդհակառակն, նախընթաց 40 տարվա ընթացքում սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկը մեր երկրում ժողովրդական լուսավորության հսկայական վերելքն է։*

*Ներկայումս Սովետական Միությունում բոլոր տիպի ուսումնական հաստատություններում սովորում է ավելի քան 50 միլիոն մարդ։ Միայն 1958 թվականին միջնակարգ դպրոցները տվել են 1,300000 շրջանավարտ։ Բարձրագույն դպրոցներում սովորում է ավելի քան 4 միլիոն մարդ՝ 1913 թ. 182 հազար սովորողի դիմաց։ Սովետական Միության բարձրագույն դպրոցներում ուսանողների թիվը 4 անգամ ավելի է քան Անգլիայում, Ֆրանսիայում, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում և Իտալիայում միասին վերցրած, որտեղ բնակչությունը հասնում է 200 միլիոնի, գրեթե նույնքան, որքան մեր երկրում։*

*Մեծ են կրթության նվաճումները նաև մեր ռեսպուբլիկայում։*

*Միայն վերջին 7 տարվա ընթացքում Հայաստանում միջնակարգ դպրոցների թիվը 295-ից հասել է 403-ի, այդ թվում գյուղական վայրերում՝ 238։ Բնորոշն այն է, որ զգալիորեն ավելացել է 8—10-րդ դասարաններում սովորողների թիվը։ Մեր ժողովրդի մեջ անհամեմատ մեծ չափով բարձրացել է միջնակարգ կրթության պահանջը։ Անհրաժեշտ է նշել, որ այդ պահանջը*

բարձրացել է ոչ միայն մասսայական դպրոցի հասակի երեխաների, այլև մեծահասակների համար, որոնք տարբեր պատճառներով ժամանակին հնարավորություն չեն ունեցել միջնակարգ կրթություն ստանալ։ Վերջին երեք տարվա ընթացքում գրեթե կրկնապատկվել է բանվորական դպրոցների 8—10-րդ դասարաններում սովորողների, ինչպես և միջնակարգ դպրոցն էքստերնի կարգով ավարտել ցանկացողների թիվը։ Ընդառաջ գնալով գյուղական երիտասարդության մասսայական պահանջներին, կառավարության թույլտվությամբ, Լուսավորության մինիստրությունը գյուղական երիտասարդական դպրոցները (նրանք յոթնամյա էին) նույնպես աստիճանաբար վերածում է միջնակարգի։ Այս փաստերը վկայում են, որ գնալով ավելի բարելավվում են ընդհանուր կրթության իրականացման պայմանները։

Կրթության ու դաստիարակության սովետական սիստեմի խոշորագույն նվաճումն այն է, որ արմատապես փոխվել է աշխատավորության բարոյաքաղաքական կերպարը, ամենուրեք արմատավորվել է սոցիալիստական գաղափարախոսությունը մեր հասարակության մեջ։ Դաստիարակվել է մի նոր երիտասարդ սերունդ, որն իր ուժերն ու գիտելիքները, ընդունակություններն ու կարողություններն ամբողջապես նվիրում է կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Կյանքն առաջ է ընթանում։ Կոմունիստական շինարարությունն իր ամեն մի նոր էտապում առաջ է քաշում նոր խնդիրներ։ Այժմ, երբ մեր երկիրը մտել է կոմունիստական ծավալուն շինարարության ժամանակաշրջանը, առանձնապես զգալի են դարձել դպրոցի, ժողովրդական կրթության սիստեմի թերությունները, կյանքից, արտադրական աշխատանքից նրա կտրվածությունը։

ՍՄԿԿ XX համագումարից հետո անցած երեք տարին ժողովրդական կրթության աշխատողների համար ուսուցումը կյանքին մոտեցնելու ուղիներ որոնելու ժամանակաշրջան էր։

Արդեն չորրորդ տարին է, որ միջնակարգ դպրոցները աշխատում են նոր, փոփոխված ուսումնական պլաններով։ Ուսումնական պլանների փոփոխությունը նպատակ է ունեցել պարտիայի XX համագումարի պահանջներին համապատասխան դպրոցը մոտեցնել արտադրական աշխատանքին և աշակերտների մոտ պատվաստել պրակտիկ աշխատանքային հմտություններ։ Դրա հետ միասին դպրոցներում ամենուր լայնորեն գործադրվում են ուսուցման գործնական կիրառական կողմն ուժեղացնելու նոր ձևեր ու մեթոդներ։

Դպրոցներում մասամբ բարելավվել է պոլիտեխնիկական ուսուցումը, հարստացել է աշխատանքային ուսուցման նյութական բազան։ Ձեռք են բերվել կոմպլեկտավորված արհեստանոցներ, արհեստանոցային կահույք։ Մի շարք դպրոցներում ուսումնական արհեստանոցներն այնքան լավ են կահավորված, որ դպրոցական և նախադպրոցական գույքի, լաբորատոր սարքավորումների որոշ տեսակների մասսայական արտադրություն են սկսել ժողկրթության օրգանների պատվերներով։

Այս տարի ռեսպուբլիկայի արտադրական ուսուցում ունեցող դպրոցները մոտ 2000 շրջանավարտ տվին, որոնք հասունության ատեստատի հետ միասին ստացան խառատի, փականագործի, տրակտորիստի և կոմբայնավարի օգնականի մասնագիտության փաստաթուղթ։ Մեծ ծավալ է ստացել ռեսպուբլիկայում նաև ուսումնա-արտադրական բրիգադների պրակտիկան։ Այդ



բրիգադները ընթացիկ տարվա գյուղատնտեսական սեզոնում մշակեցին և հավաքեցին 541 ցենտներ բամբակի հումք, 6868 ցենտներ կարտոֆիլ, 612 ցենտներ ծխախոտի հումք։ Միայն Շամշադինի շրջանի Բերդ գյուղի միջնակարգ դպրոցի ուսումնա-արտադրական բրիգադն մշակել և հավաքել է 100.000 թելամետր ծխախոտ, հավաքել և պատրաստել է ավելի քան 1000 տոննա սիլոս։

Սպիտակի շրջանի դպրոցների արտադրական բրիգադները աճեցրել և հավաքել են 6436 ցենտներ շաքարի ճակնդեղ, աճեցրել են եգիպտացորենի լավ բերք և վաստակել 62350 աշխօր։ Ստեփանավանի դպրոցականները վաստակել են 21000 աշխօր, Եղեգնաձորի շրջանի դպրոցականները՝ 54000 աշխօր և այլն։

Ներկայումս մեծ ծավալ է ստացել դպրոցներում ինքնասպասարկման պրակտիկան։ Երևանի Ե. Չարենցի, Պ. Պռոշյանի, Ա. Պուշկինի անվան, № 70, Հաղթանակ ավանի № 2, Էջմիածնի շրջանի Ն. Խաթունարխ և շատ ուրիշ դպրոցներում ուսումնական շենքի մաքրության, ձևավորման, բակերի և սպորտային հրապարակների բարեկարգման, դպրոցական շենքերի վերանորոգման և աշակերտների ուժերին համապատասխան այլ աշխատանքներ կատարում են հենց իրենք՝ աշակերտները։

Այս միջոցառումը դաստիարակչական մեծ նշանակություն ունի և մանկավարժական ու ծնողական հասարակության ջերմ հավանությանն է արժանացել։ Այս ուղղությամբ դպրոցներում կատարված ավելի քան եռամյա աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ զգալիորեն բարձրացել է աշակերտների ակտիվությունը, նրանց հետաքրքրությունը դեպի ուսումը, բարելավվել է կարգապահությունը և որ կարևորն է՝ զգալիորեն փոխվել է աշակերտների վերաբերմունքը դեպի ֆիզիկական աշխատանքը։

Սակայն պետք է ասել, որ դպրոցի բովանդակության մեջ կատարված այդ փոփոխությունը դեռևս չի լուծել դպրոցի ու կյանքի միջև կտրվածության վերացման, ուսուցումն արտադրական աշխատանքին միացնելու հարցը։

Գոյություն ունեցող դպրոցական սիստեմի պայմաններում այդ հարցի լուծումը հնարավոր չէ։ Ստեղծվել է մի դրություն, երբ հին սիստեմը բախվել է նոր խնդիրների հետ։ Միջնակարգ դպրոցների շրջանավարտների զգալի մասը դեռ չի կարողանում կողմնորոշվել կյանքում, նրանք դժվարությամբ են գտնում իրենց կյանքի ուղին։ Իսկ շատերը, պատրաստ չլինելով որևէ կոնկրետ աշխատանքի համար, դառնում են պատահական դրաղմունքի մարդիկ, չեն ընդգրկվում նյութական արժեքներ ստեղծող աշխատանքում։ Դեռ կան շրջանավարտներ, որոնք ֆիզիկական աշխատանքի անցնելը պատվից ցածր գործ են համարում։ Դժբախտաբար կան նաև այդպիսի ծնողներ։

Հենվելով ուսուցումն արտադրողական աշխատանքին միացնելու մասին մարքսիստական-լենինյան գաղափարների վրա, ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿԿ Կենտկոմի Նախագահության հավանությանն արժանացած իր նամակում բարձրացրեց աճող սերնդի կրթության ու դաստիարակության արմատական հարցերը, որոնք արժանացան սովետական հասարակայնության ջերմ պաշտպանությանը, քանի որ նրանք հասունացած են և լիովին համապատասխանում են սովետական հասարակության զարգացման պահանջներին։

Ընդհանուր կրթության սիստեմը պատմական կատեգորիա է։ Նրա բովանդակության ու կազմակերպման ձևերը փոփոխվում են հասարակական արտա-

*դրության, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի զարգացմանը համապատասխան։*

*Ժողովրդական կրթության հետագա զարգացման մասին թեզիսները կյանքի պահանջներին համապատասխան ընդգրկելով ուսուցման և արտադրական աշխատանքի միացման խնդիրը, նախատեսում են ընդհանուր միջնակարգ կրթության ոչ միայն կատարելագործում, այլև զգալի ընդարձակում, մեր հասարակության համար կենսական հիմքի վրա։ Նրանք նախատեսում են ամբողջ կրթության սիստեմի ավելի դեմոկրատացում, կրթության և արտադրական ուսուցման միացման հիման վրա։*

*Ուսուցման և արտադրական աշխատանքի միացումը հանդիսանում է պատանեկությանը և երիտասարդությանը կյանքին նախապատրաստելու ճիշտ ուղին։ Ժամանակակից արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատողին չի կարելի դիտել որպես իր գործի նեղ մասնագետի կամ ֆիզիկական աշխատանքի ներկայացուցչի։ Արտադրության զարգացող տեխնիկան պահանջում է տվյալ արտադրության, նրանում օգտագործվող բարդ մեքենաների կառուցման հիմունքների, արտադրության կազմակերպման իմացում։ Ոմանք այն կարծիքն են հայտնում, որ տեխնիկայի զարգացման, արտադրության մեքենայացման և ավտոմատիզացման հետևանքով վերանում է բարձր որակավորում ունեցող բանվորի անհրաժեշտությունը, որ ամբողջ բանվորական աշխատանքը հանգելու է արտադրության մեջ աշխատողի հասարակ շարժումներին, ասենք «լծակը քաշելուն», «սեղմակը սեղմելուն» և այլն, և որ այդ բնույթի աշխատանքի համար առանձին պրոֆեսիոնալ հմտություն կամ հանրակրթական պատրաստություն չի պահանջվում։*

*Հարկ չկա ապացուցել, որ սոցիալիստական արտադրության մեջ աստիճանաբար նվազում է ցածր որակավորում ունեցող բանվորի անհրաժեշտությունը։ Նոր, բարդ տեխնիկայի պայմաններում, որքան էլ պարզ լինեն բանվորի շարժումները, այնուամենայնիվ բանվորը պետք է գիտենա այդ տեխնիկայի հիմնական սկզբունքները։ Արտադրության նոր սարքավորումները կարող է ղեկավարել մասնագիտական և հանրակրթական բավարար պատրաստություն ունեցող մարդը։ Ժողովրդական տնտեսության զարգացման մեծ հեռանկարները նախատեսում են մեխանիզացիայի և ավտոմատացման ավելի լայն կիրառում, իսկ մեխանիզացիայի և ավտոմատացման զարգացման նոր աստիճանը մեխանիզմներն ու սարքավորումները ղեկավարողից բազմակողմանի պատրաստություն է պահանջում։*

*Դպրոցական սիստեմի վերակառուցման հարցերը քննարկելիս ոմանք այն կարծիքն են հայտնում, որ հանրակրթական միջնակարգ դպրոցը չի կարող ժամանակակից արտադրության համար կադրեր պատրաստել, որ այդ խնդիրը կարելի է լուծել միայն մասնագիտացված, պրոֆեսիոնալ տեխնիկական ուսումնարանների (աշխատանքային ռեզերվների դպրոցների բնույթի) ու դասընթացների միջոցով, որտեղ հանրակրթական միջնակարգ կրթության անհրաժեշտությունը վերանում է։*

*Այդ կարծիքները ճիշտ չեն։ Դրանց հեղինակները թերագնահատում են հանրակրթական դպրոցի դերը մեր երիտասարդության գիտական և կուլտուրական մակարդակի բարձրացման մեջ։ Բացի դրանից նրանք նկատի չեն ունենում, որ նոր, բարդ տեխնիկայի տիրապետումը հնարավոր է միայն միջնակարգ դպրոցի սահմաններում հանրակրթական գիտելիքների յուրացման*



*միջոցով։ Ահա, այս պատճառով էլ թեզիսներում միանգամայն ճիշտ է դրված միջնակարգ կրթության հնարավորությունների ոչ թե սահմանափակման, այլ ընդարձակման հարցը։*

*Թեզիսները նախատեսում են միջնակարգ կրթությունը բաժանել երկու էտապի։ Կրթության այդ երկու էտապը թելադրված են կյանքի պահանջով և լիովին կարող են ապահովել աշակերտների պրոֆեսիոնալ և հանրակրթական պատրաստությունը։ Կրթության առաջին էտապը հանդիսանում է հանրակրթական դպրոցի հիմնական օղակը՝ ութնամյա ընդհանուր, պոլիտեխնիկական պարտադիր ուսուցումը՝ 7 — 14 տարեկան երեխաների համար։ Ութնամյա դպրոցը չի կարելի դիտել որպես դպրոց, որտեղ ուսման տևողությունը մեխանիկորեն մեկ տարով ավելացվում է, ներկա յոթնամյա տևողության համեմատությամբ։ Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ կրթության առաջին էտապը՝ ութնամյա դպրոցը, պետք է լուծի գիտությունների հիմունքներից համեմատաբար ամբողջական գիտելիքներ ունեցող գրագետ և պոլիտեխնիկական գիտելիքներով զինված մարդկանց պատրաստումը։ Այստեղ դեռևս վաղ հասակից երեխաներին հոգեբանորեն պետք է նախապատրաստել հանրօգուտ աշխատանքի համար, իսկ 5-րդ դասարանից սկսած նրանց պետք է ընդգրկել արտադրողական աշխատանքում՝ ուսումնական արհեստանոցներում, ուսումնափորձնական հողամասերում, իսկ բարձր դասարանցիներին՝ գործարանային հատուկ ցեխերում և կոլտնտեսային արտադրության մեջ։*

*Գործնական աշխատանքի որոշ մասը (փայտամշակման և մետաղներին վերաբերող մի քանի թեմաներ) պետք է նախատեսել միայն տղաների համար։ Այդ ժամերին աղջիկների համար պետք է նախատեսվի տնարարության ուսուցումը։ Տնարարության տարրական գիտելիքների ուսուցումը նպատակահարմար կլինի սկսել I—II դասարաններից, ձեռքի աշխատանքի ձևով։*

*Աշխատանքային ուսուցումն ութնամյա դպրոցում պետք է ունենա խոշոր կրթա-դաստիարակչական նշանակություն։ Առանձին կարևորություն պետք է ստանա աշխատանքի կուլտուրայի, բանվորական կոլեկտիվում աշխատանքը պլանավորելու հատկանիշների ուսուցումն ու դաստիարակությունը։*

*Անհրաժեշտ կլինի արմատապես փոխել դպրոցի ամբողջ աշխատանքի կազմակերպումը, բովանդակությունն ու մեթոդները։ Ութնամյա դպրոցում հիմնականում պետք է ավարտվի մայրենի և ռուսաց լեզուների ուսուցումը, աշակերտներին բավարար գիտելիքներ կտրվեն նաև գրականությունից։ Ընդ որում մեզ թվում է, թե ճիշտ կլիներ, եթե դպրոցի վերակառուցման վերաբերյալ թեզիսների 19-րդ կետը տրվեր նոր ձևակերպմամբ, ընդ որում ռուսաց լեզվի ուսումնասիրությունը պետք է պարտադիր համարել ռեսպուբլիկայում գործող բոլոր դպրոցների համար, իսկ մայրենի լեզվի դասավանդումը՝ պարտադիր դարձնել տվյալ ազգության բոլոր երեխաների համար ռեսպուբլիկայի այն դպրոցներում, որտեղ դասավանդումը տարվում է ոչ մայրենի լեզվով։*

*Ուսումնական պլաններն ու ծրագրերը պետք է ապահովեն բավարար գիտելիքներ ընդհանուր պատմությունից, առանձնապես խոր գիտելիքներ ՍՍՌՄ ժողովուրդների և հայ ժողովրդի պատմությունից։*

*Ուսումնական պլանների և ծրագրերի վերակառուցումը չպետք է նվազեցնի, այլ ավելի պետք է խորացնի և լայնացնի գիտելիքները ֆիզիկայից, մաթեմատիկայից, քիմիայից, բնագիտությունից։*

*Դրա հետ միասին պետք է լուծվեն նաև աշակերտների էսթետիկական և*

ֆիզիկական դաստիարակության հարցերը, որոնք ներկայումս գործող դպրոցներում իրենց լուծումը չեն գտել, նրանք թերագնահատված են եղել, չնայած նրանց բացառիկ կարևոր նշանակությանը աճող սերնդի կրթության ու դաստիարակության ընդհանուր սիստեմում։

Այսպիսով կրթության առաջին էտապը պետք է ապահովի համեմատաբար ավելի ամբողջացված և շրջագծված գիտելիքների յուրացում, նկատի ունենալով այն հանգամանքը, որ կրթության առաջին էտապից հետո դպրոցի շրջանավարտները պետք է ընդգրկվեն նյութական արժեքներ ստեղծող արտադրական աշխատանքում, որտեղ նրանք պետք է կարողանան ազատորեն կողմնորոշվել արտադրության ու կյանքի հարցերում։ Այս դպրոցների առավելությունը ներկա յոթնամյա դպրոցների համեմատությամբ հանդիսանում է նաև այն, որ այստեղ ավելի հաջող պետք է լուծվեն աշակերտների աշխատանքային պատրաստության հարցերը հիմնականում դպրոցամերձ ուսումնափորձնական հողամասերում, ուսումնական արհեստանոցներում և արտադրական աշխատանքի պետք է ուղարկվեն ավելի հասունացած և ֆիզիկապես ավելի ամրացած երիտասարդներ։

Հավանաբար, անհրաժեշտ կլինի առաջին էտապի կրթությունը բաժանել երկու աստիճանի, 1—4-րդ դասարաններն առայժմ պահելով որպես առանձին դպրոց այն վայրերում, որտեղ աշակերտական համապատասխան կոնտինգենտ չի հավաքագրվում ութնամյա դպրոցը կոմպլեկտավորելու համար (փոքրաքանակ բնակչություն ունեցող գյուղերում և ավաններում)։ Հետագայում աշակերտների քանակն ավելանալու դեպքում հարկ կլինի դրանք նույնպես վերածել ութնամյա դպրոցների։

Անհրաժեշտ է արմատապես վերակառուցել նաև դասավանդման մեթոդները, ավելի մեծ ինքնուրույնություն տալով ուսուցչին ուսուցման եղանակների և ձևերի ընտրության հարցերում։ Պետք է նշել, որ ներկայումս գործող դպրոցներում ուսուցչի աշխատանքը շատ է ռեգլամենտացված վերևից սահմանված մեթոդական-տրաֆարետային եղանակների մեջ, որոնք տրվում են շատ դեպքերում որպես յուրօրինակ պարտադիր սահմանումներ և որոնց կիրառումը կոնկրետ պայմաններում իրեն չի արդարացնում։ Անհրաժեշտ է ազատել ուսուցչին, այսպես ասած, մեթոդական դեղատոմսերից, ազատություն տալ նրան իր մոտեցման եղանակների մեջ։ Այստեղ, իհարկե, չենք բացառում ուսուցչին դիդակտիկայի ու մեթոդիկայի հիմնական հարցերում կողմնորոշելու անհրաժեշտությունը։ Մանկավարժական գիտահետազոտական-մեթոդական հիմնարկները և ժողկրթության օրգանները պետք է ավելի նպատակալաց դարձնեն օգնությունն ուսուցչին — տեսական, մանկավարժական, մեթոդական և մասնագիտական հարցերում։

Թեզիսներում միանգամայն ճիշտ են նշվում երկրորդ էտապի կրթության ուղիները։ Դրանք հետևյալներն են։

1. Երիտասարդության մի մասը առաջին էտապի դպրոցները ավարտելուց հետո կընդգրկվի արտադրական աշխատանքում։ Բայց արտադրության մեջ աշխատելու համար նա պետք է ստանա որոշ պրոֆեսիոնալ պատրաստություն։ Այդ պատրաստությունը նա կստանա կամ հենց արտադրական ձեռնարկություններին կից՝ բրիգադային, անհատական աշակերտության ձևով, այդ նպատակով կազմակերպված կարճատև դասընթացներում, և կամ ֆաբզավուսներում, արհեստագործական և այլ ուսումնարաններում մեկ կամ երկամյա տևողությամբ։ Գյուղական վայրերում երիտասարդությունն այդպիսի պատրաստություն կստանա գյուղատնտեսական կամ գյուղմեխանիզացիայի դպրոցներում կամ դասընթացներում։ Աշխատելով արտադրության մեջ՝ երիտասարդները կարող են իրենց կրթությունը շարունակել բանվոր երիտասարդական և գյուղական երիտասարդական կամ հեռակա միջնակարգ դպրոցներում։ Այս դպրոցների ուսումնական պլանները կկազմվեն այնպես, որ երիտասարդությունն ստանա գիտելիքներ հիմնական գիտություններից, միջնակարգ դպրոցի դասընթացի սահմաններում։ Այս դպրոցների աշակերտական կազմը կոմպլեկտավորելիս նկատի կառնվի այն հանգամանքը, որպեսզի համանման արտադրության մեջ աշխատող երիտասարդներն ընդգրկվեն միևնույն դպրոցում, որտեղ կմտցվի արտադրության պրոֆիլին համապատասխան որոշ տեսական դասընթաց սովորողների մասնագիտական պատրաստությունը բարձրացնելու նպատակով։

Այս դպրոցներում ուսումնական պարապմունքները կկազմակերպվեն՝ հաշվի առնելով սովորողների արտադրական աշխատանքի ռեժիմը։

Աշխատող երիտասարդության ուսման նորմալ աշխատանքի համար կստեղծվեն համապատասխան պայմաններ և որոշ արտոնություններ։ Հավանաբար շաբաթվա մեջ 2—3 օր նրանք կազատվեն արտադրական աշխատանքից և կամ կաշխատեն բանվորական կես օր, իսկ մնացած ժամանակամիջոցը կտրամադրեն ուսմանը։

2. Երիտասարդության մի մասը առաջին էտապի դպրոցներն ավարտելուց հետո կրթությունը կշարունակի առանց անմիջապես արտադրական աշխատանքի անցնելու։ Նրանց համար գոյություն կունենան հանրակրթական, աշխատանքային, պոլիտեխնիկական միջնակարգ դպրոցներ արտադրական ուսուցումով (ֆաբզավուսների և գյուղատնտեսական ուսումնարանների տիպի)։ Այս դպրոցները կունենան ուսման եռամյա տևողություն և արտադրական ուսուցմանը կհատկացվի առաջին տարում ուսման ժամանակամիջոցի մոտ $1/6$, երկրորդ տարում $1/3$, իսկ երրորդ տարում՝ կես մասը։ Այսպիսի բաշխումը խիստ մոտավոր է։ Մեզ թվում է, որ այս ժամանակամիջոցը հնարավորություն կտա ապահովելու հանրակրթական գիտելիքների սահմանված ծավալի յուրացումը և աշխատանքային կրթությունն ու դաստիարակությունը։

3. Ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերը դեռևս մեծ պահանջ ունեն միջին տեխնիկական մասնագետների։ Այդ պատճառով կշարունակեն իրենց գոյությունը տեխնիկումներն ու ուսումնարանները, որտեղ նույնպես կընդունվեն 8-ամյա դպրոցների շրջանավարտները։ Սա կլինի միջնակարգ կրթության ձեռքբերման երրորդ ուղին։ Տեխնիկումներում և ուսումնարաններում ուսումնական պլանները, ինչպես և ուսումնական աշխատանքի կազմակերպման ռեժիմը տարբեր կլինեն, թեև սրանք նույնպես կապահովեն գիտելիքների որոշ ծավալ։

Միջնակարգ կրթության այս ուղիները բացի աշխատանքային մասնագիտական պատրաստությունից, անկախ պրոֆեսիոնալ պատրաստության ուղղությունից ու բնույթից, պետք է ապահովեն հանրակրթական առարկաների և գիտելիքների միասնական ծավալի յուրացումը, մոտավորապես ներկա միջնակարգ դպրոցների ուսումնական դասընթացի սահմաններում։ Այս առավել ևս անհրաժեշտ է, քանի որ միջնակարգ դպրոցի խնդիրներից մեկը

*հանդիսանում է բարձրագույն դպրոց ընդունվելու համար մարդկանց պատրաստումը։*

*Կենտրոնական Կոմիտեի և Մինիստրների Սովետի թեզիսներում ճիշտ է դրվում նաև գիշերօթիկ դպրոցների հետագա զարգացման և ընդարձակման հարցը, որոնց եռամյա գոյության դրական փորձը ցույց է տալիս պատանեկության և երիտասարդության համար նրանց կրթա-դաստիարակչական չափազանց մեծ նշանակությունը։ Ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանով Հայաստանում գիշերօթիկ դպրոցներում երեխաների թիվը պետք է ավելանա ավելի քան 14 անգամ։ Մեր խնդիրն է ապահովել դրանք հարմար շենքերով և ուսումնա-դաստիարակչական աշխատանքի նորմալ պայմաններով։*

*Գիշերօթիկ դպրոցները կարող են գոյություն ունենալ որպես 8-ամյա կամ 11-ամյա դպրոցներ, այդ կախված կլինի համապատասխան պայմանների առկայությունից։*

*Դպրոցի կարևոր տիպերից մեկն էլ արվեստի բնագավառում արտակարգ օժտվածություն ունեցող երեխաների հատուկ դպրոցներն են։ Այս դպրոցներում պետք է ընդունվեն առավել շնորհալի երեխաները և երաժշտական, նկարչական, քանդակագործական, թատերական կամ արվեստի այլ ճյուղերի գծով պատրաստություն ստանալուց բացի պետք է ստանան նաև հանրակրթական գիտելիքներ միջնակարգ դպրոցի դասընթացի ծավալով։ Այս դպրոցները կարող են կազմակերպվել որպես առաջին կամ երկրորդ էտապի, ինչպես և որպես 11-ամյա դպրոցներ։*

*Դպրոցական սիստեմի վերակառուցման կապակցությամբ նոր պահանջներ են դրվում ուսուցչական կադրերի պատրաստման ասպարեզում։ Կադրերի պատրաստմամբ զբաղվող հիմնարկների՝ մանկավարժական ինստիտուտների և առանձնապես Պետական համալսարանի աշխատանքում լուրջ թերություններ կան։*

*Պետական համալսարանում, մյուս բուհերի համեմատությամբ ուսուցումը խիստ տեսական պլանով է տարվում։ Այդ բանը պատճառաբանվել է նրանով, որ համալսարանը պատրաստում է կադրեր գերազանցապես գիտահետազոտական աշխատանքի համար։ Այսպիսի պատճառաբանությունը հիմնավոր համարել չի կարելի։ Նախ՝ այն պատճառով, որ գիտահետազոտական աշխատանքը մեր իրականության պրակտիկայից կտրված լինել չի կարող։ Արտադրության հետ կապվածությունը միայն կարող է նպաստել գիտահետազոտական աշխատանքի ընդհանուր ճիշտ կողմնորոշմանը։ Երկրորդ. համենայն դեպս իրականությունն այլ բան է ցույց տալիս։ Համալսարանի շրջանավարտների ճնշող մեծամասնությունը գնում է ոչ թե գիտահետազոտական աշխատանքի, այլ արտադրություն և առաջին շրջանում գործնական աշխատանքում լուրջ դժվարությունների է հանդիպում։ Երրորդ. շատ ֆակուլտետներ ընդհանրապես կադրեր պատրաստում են ոչ թե գիտահետազոտական աշխատանքի, այլ միայն ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում աշխատելու համար։ Մինչդեռ այդ ֆակուլտետներում նույնպես գործնական ուսուցումը ցածր մակարդակի վրա է գտնվում։*

*Այդ բանն առանձնապես ակնառու է ուսուցիչների պատրաստման ասպարեզում։ Այստեղ ամենից մեծ թերությունն այն է, որ համալսարանական տարիների ընթացքում ուսանողը, ճիշտ է, բավարար տեսական պատրաստություն ստանում է, բայց ուսուցչական աշխատանքի արվեստ, մանկավար-*



*ժական վարպետություն ձեռք չի բերում։ Այդ բացատրվում է նրանով, որ խիստ ցածր է մանկավարժական պրակտիկայի դրվածքը և թերագնահատված են մանկավարժական-մեթոդական առարկաները, փոքր է նրանց տեսակարար կշիռը ուսումնական պլանում։*

*Անհրաժեշտ է վերանայել համալսարանում բոլոր մասնագիտությունների ուսումնական պլանները և լրջորեն վերակառուցել դրանք, խստորեն հաշվի առնելով համապատասխան արտադրության շահերը։*

*Մեր կարծիքով նպատակահարմար կլինի համալսարանական ուսուցման ժամանակամիջոցը բաժանել ոչ թե 2 էտապի (առաջին՝ 1—2 տարի և երկրորդ՝ 4—5 տարի, արտադրության մեջ աշխատելու նպատակով մեկ տարի ընդմիջումից հետո), այլ ուսուցումը մինչև 4—5-րդ կուրսը տանել անընդմեջ և միայն պետական քննությունից կամ դիպլոմային աշխատանքից հետո մեկ տարի ընդմիջում տալ՝ ուսանողին ուղարկելով արտադրական աշխատանքի։ Այդ ժամանակամիջոցում ուսանողները պետք է զբաղեցնեն հաստիքային պաշտոն։*

*Նման պրակտիկան կարելի է կիրառել նաև մանկավարժական ինստիտուտներում։ Կադրերի պատրաստման այս ձևը կնպաստի նաև «ուսուցչի կոչում» շնորհելիս սխալներից խուսափելուն։*

*Մանկավարժական ինստիտուտներում նույնպես լուրջ թերություններ կան ապագա ուսուցիչներին մանկավարժական մեթոդական պատրաստություն տալու գործում։ Այդ բանն առանձնապես զգալի է լայն պրոֆիլի մասնագետների պրակտիկային անցնելու կապակցությամբ։*

*Մեզ մոտ, մանկավարժական ինստիտուտում, արդեն երրորդ տարին է, որ սկսվել է տարրական դասարանների ուսուցիչների պատրաստումը։ Անհրաժեշտ է շարունակել և լայնացնել այդ ֆակուլտետը։ Հարկ կլինի երևի ստեղծել այդպիսի ֆակուլտետ նաև Լենինականի մանկավարժական ինստիտուտում, այն հաշվով, որ առաջիկա 8—10 տարում հնարավոր լինի ապահովել տարրական դասարանները բարձրագույն կրթություն ունեցող դասատուներով։*

*Փորձը ցույց է տալիս, որ կոնսերվատորիան մասսայական դպրոցներին չի կարող ապահովել երգ-երաժշտության դասատուներով։ Այդ հարցը պետք է լուծի մանկավարժական ինստիտուտը։ Այդ իսկ պատճառով անհրաժեշտ է ընդարձակել երաժշտության դասատուների պատրաստումը մանկավարժական ինստիտուտում։*

*Մեզ թվում է, ճիշտ չէ այն կարծիքը, թե գործնական առարկաների համար ուսուցչական կադրերի պատրաստման ֆունկցիան պետք է հանձնել տեխնիկական բուհերին։ Մանկավարժական կադրերի պատրաստման գործը ամբողջությամբ պետք է կենտրոնացնել մանկավարժական ինստիտուտներում և պետական համալսարաններում, որովհետև այս երկու բուհերում միայն հնարավոր կլինի ստեղծել ուսուցչական կադրերի մեթոդա-մանկավարժական որակավորման անհրաժեշտ բազա։*

*Անհրաժեշտ է կատարելագործել և ընդլայնել ուսուցիչների հեռակա ուսուցումը, ինչպես և նրանց սիստեմատիկ վերաորակավորման գործը։*

*Ժողովրդական կրթության վերակառուցումը մեր հասարակության համար բացառիկ կարևորություն ունեցող գործ է։ Այն որոշում է մեր պատանեկության ու երիտասարդության ապագան։ Այդ պատճառով դպրոցի վերակա-*

ուցման ամեն մի հարցի լուծումը պահանջում է պարտիական ու սովետական օրգանների առավելագույն ուշադրություն և զգուշություն։

Ինչպես ընկեր Ն. Ս. Խրուշչովն է նշում իր նամակի մեջ, դժվարին խնդիրներից մեկը ութնամյա դպրոցի շրջանավարտներին արտադրական աշխատանքում ընդգրկելն է, որի հետ անմիջականորեն կապված է երկրորդ էտապի դպրոցական ցանցի պլանավորումը։ Այս խնդիրն առանց սխալների լուծելու համար ժողկրթության օրգանները պլանային օրգանների հետ միասին պարտավոր են ճշտել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի, արդյունաբերության մեջ և կոլտնտեսություններում բանվորական ուժի ռեալ պահանջները և դրանից ելնելով պետք է պլանավորեն դպրոցական ցանցը։ Հիմնական սկզբունքն այս հարցի լուծման համար պետք է հանդիսանա այն, որ երիտասարդությունն ամբողջովին պետք է ընդգրկվի արտադրական աշխատանքում կամ ուսման մեջ։ Ընդ որում, եթե արտադրության մեջ երիտասարդությանը տեղավորելու հնարավորությունները սահմանափակ են, ապա պետք է բացել բավարար չափով հանրակրթական միջնակարգ դպրոցներ արտադրական ուսուցումով, որպեսզի արտադրությունից դուրս մնացած երիտասարդությունն ամբողջությամբ ընդգրկվի միջնակարգ դպրոցներում։ Ոչ մի դեպքում չպետք է հանդուրժել միջնակարգ կրթության հնարավորությունների սահմանափակում։

Վերակառուցումը պետք է իրագործել աստիճանաբար 4—5 տարվա ընթացքում։

Այս կապակցությամբ պլանային օրգանները պետք է մշակեն դպրոցական ցանցի վերակառուցման պլանը, ցույց տալով արտադրական ուսուցում ունեցող միջնակարգ դպրոցների բացման հերթականությունը, նրանց պրոֆեսիոնալ ուղղությունը տվյալ տնտեսական շրջանի պահանջներից ելնելով, հաշվի առնելով դպրոցների բացման պայմաններն ու հնարավորությունները։

Անհրաժեշտ է նախապատրաստել դպրոցական շենքը, պետք է ստեղծել դասասենյակներ ութնամյա դպրոցի նոր բացվող դասարանի՝ 8-րդ դասարանի համար. այդ նպատակով շատ տեղերում հավանաբար անհրաժեշտ կլինի լրացուցիչ կառուցումներ անել։ Որոշ գյուղերում լիարժեք ութնամյա դպրոցներ ունենալու նպատակով անհրաժեշտ կլինի դպրոցներին կից ստեղծել հանրակացարաններ մոտակա, հարևան գյուղերից տվյալ դպրոցում սովորող երեխաների համար նորմալ պայմաններ ստեղծելու նպատակով։ Անհրաժեշտ է մշակել և որոշել ընդհանուր պարտադիր ուսուցման իրագործման ուղիները և օրենսդրական օրգանների միջոցով օրենքի ուժ տալ դրանց։

Կարևոր խնդիրներից մեկն էլ ութնամյա դպրոցի ուսումնա-նյութական և ուսումնա-արտադրական բազայի հարցն է։ Ներկա յոթնամյա դպրոցներից շատերի բազան չի կարող բավարարել ութնամյա դպրոցի խնդիրները։ Պահանջվում է, բացի ուսումնական լաբորատորիաներից և կաբինետներից, ունենալ նաև դպրոցամերձ ուսումնա-փորձնական տնտեսություն, որը պետք է ապահովի աշակերտների համար ուսումնական ծրագրով նախատեսած գյուղատնտեսական գործնական աշխատանքները։ Դպրոցը պետք է ունենա նաև իր ուսումնական արհեստանոցը, որովհետև աշակերտների արտադրական, գործնական աշխատանքները պետք է կենտրոնացվեն ուսումնական արհեստանոցում և տնտեսության վրա։

Լուրջ աշխատանք է պահանջվում երկրորդ էտապի դպրոցների ուսումնա-



կան և ուսումնա-արտադրական աշխատանքները կազմակերպելու գործում։ Այստեղ արդեն դպրոցի գործունեությունը կապվում է արդյունաբերության և կոլտնտեսության արտադրության հետ։ Այդ պատճառով ուսումնական դաստիարակչական գործի կազմակերպման ուղղությամբ աշխատանքները պետք է հիմնվեն արտադրության վրա, հետևապես նրանք պետք է պլանավորվեն արտադրության մարդկանց, գործարանների և կոլտնտեսությունների ղեկավարների հետ համատեղ։

Ժողովրդական կրթության օրգանները այժմվանից պետք է սկսեն տարբեր տիպերի դպրոցների ուսումնական պլանների մշակումը։ Դրանց հիման վրա արդեն աշխատանք պետք է կատարվի նաև ուսումնական ծրագրերը կազմելու ուղղությամբ։ Առանձնապես այդ վերջին աշխատանքը լուրջ դըժվարություն է ներկայացնում մեզ մոտ (և մյուս ազգային ռեսպուբլիկաներում)։ Բանն այն է, որ ի տարբերություն ՌՍՖՍՌ-ի դպրոցների, Հայաստանում գործող հայկական դպրոցների ուսումնական պլաններում լրացուցիչ մտցված է ռուսաց լեզու, իսկ ռուսական դպրոցներում՝ հայոց լեզու, ինչպես և հայ ժողովրդի պատմությունը և Հայաստանի աշխարհագրությունը։ Այս հանգամանքը լուրջ լարվածություն է ստեղծում ուսումնական աշխատանքի ռեժիմում և խիստ ծանրաբեռնում է աշակերտներին։ Դրությունը մեղմացնելու նպատակով անհրաժեշտ է մի շարք ուսումնական ծրագրեր բեռնաթափել ոչ հիմնական, երկրորդական նյութերից, տեղայնացնել ուսումնական ծրագրերն ու դասագրքերը։ Մանկավարժական-գիտահետազոտական հիմնարկները ժողկրթության օրգանների հետ միասին մեծ աշխատանք ունեն կատարելու ծրագրերը և դասագրքերը մեր դպրոցներին հարմարեցնելու մեջ։

Ժողկրթության սիստեմի վերակառուցումը պահանջելու է լրացուցիչ ֆինանսական միջոցներ դպրոցական շենքերի շինարարության, ուսումնական գույք, կահույք և սարքավորումներ ձեռք բերելու նպատակով։ Արդեն 1959 թվականին անհրաժեշտ է նախատեսել միջոցներ դպրոցական սիստեմի վերակառուցման նպատակներով։

Դպրոցական սիստեմի վերակառուցումը պարտիական ու պետական բացառիկ կարևորություն ունեցող համաժողովրդական գործ է։ Խոսքը վերաբերում է աճող սերնդի կյանքի ուղիները ճիշտ որոշելուն, որից անմիջական կախում ունի մեր հասարակության հետագա զարգացումը։ Այդ պատճառով այն պահանջում է մեր ժողովրդի, մեր պարտիական ու սովետական կազմակերպությունների մեծ ուշադրությունը։

Շ. ՍԻՄՈՆՅԱՆ
Հայկական ՍՍՌ Լուսավորության մինիստր

## ՍՆՆԴԻ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

ՍՄԿՊ XXI համագումարին ընկ. Ն. Խրուշչովի՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը» զեկուցման թեզիսներում նշված են յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայի հետագա զարգացման ուղիները, ինչպես նաև նրանց գլխավոր խնդիրները տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում։

Ռեսպուբլիկայի ծանր ինդուստրիայի զարգացման, արդյունաբերությունը նորագույն տեխնիկայով հագեցնելու, ինչպես նաև գյուղատնտեսական մթերքների արագ զարգացող ռեսուրսների բազայի վրա բարենպաստ պայմաններ են ստեղծվում ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերության բոլոր ճյուղերի հետագա զարգացման համար։

Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերության համախառն արտադրանքը 1965 թվականին կազմելու է 2,79 միլիարդ ռուբլի, որը 1958 թվականի մակարդակը կգերազանցի 70,7 տոկոսով։

Յոթնամյակի ընթացքում նախատեսվում է նոր ֆաբրիկաների և գործարանների շինարարության, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման և գործող ձեռնարկությունների վերակառուցման համար կապիտալ ներդրումները հասցնել 447 միլիոն ռուբլու կամ, միջին հաշվով՝ տարեկան 64 միլիոն ռուբլու, 1958 թվականի 47 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումների դիմաց։

Կոնտրոլ թվերով նախատեսվում է 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, խաղողի արտադրությունն ավելացնել 2,9 անգամ։ Խաղողի արտադրության նման աճի բազայի վրա նախատեսվում է ռեսպուբլիկայի գինեգործական արդյունաբերության զգալի աճ։ Դրա հետ կապված կընդլայնվի արտադրա-տեխնիկական բազան, կստեղծվեն նոր նկուղային-խմորման տարողություններ՝ գինեգործական նյութերը, կոնյակի սպիրտը և գինիները տեղավորելու և պահելու համար։ Կկառուցվեն նաև գինու և կոնյակի սպիրտաթորման նոր գործարաններ և այլն։

Յոթնամյակի ընթացքում պետք է կառուցվեն և շահագործման հանձնվեն Երևանի գինու կոմբինատի մառանների 4-րդ հերթը, Բուրաստանի, Դավալուի, Դվինի և Հոկտեմբերյանի կոնյակի սպիրտաթորման գործարանները, Արագդայանի, Նոյեմբերյանի գինու գործարանները և այլն։

Հումքի բազաների վայրերում՝ Նորակերտում, Այգեստանում, Այգևանում, Արենիում, Իջևանում և Շամշադինում կազմակերպվելու են մշակման նոր կետեր՝ 12 հազար տոննա խաղող մշակելու համար։

Հայտնի է, որ Հայաստանը որակյալ գինեգործության շրջան է դեսերտի թունդ գինիների թողարկման գծով, որի պատճառով էլ գինեգործության ընդարձակումը հիմնականում ընթանալու է այդ ուղղությամբ։ Յոթնամյակի ընթացքում նախատեսվում է գրեթե եռապատկել թողարկվող սեղանի գինիների քանակը, այն հասցնելով մինչև մեկ միլիոն դեկալիտրի, ընդլայնել կիսաքաղցր գինիների արտադրությունը, այն հասցնելով մինչև 180 հազար դեկալիտրի, 1958 թվականի 40 հազար դեկալիտրի դիմաց։

Կոնյակի արտադրության բնագավառում նախատեսվում է 1965 թվականին կոնյակի սպիրտների թողարկումը հասցնել մինչև երկու միլիոն լիտր բացարձակ ալկոհոլի, 1958 թվականի 900 հազար լիտր բացարձակ ալկոհոլի դիմաց, որը կապահովի սեփական կոնյակի սպիրտների ֆոնդերի ավելացումը երկարամյա հասունացման համար, ինչպես նաև հայկական կոնյակի սպիրտներից պատրաստվող կոնյակի արտադրությունը։

Շամպայնի գինիների արտադրությունը կավելանա 10 անգամ, որի համար արդեն 1958 թվականին կօգտագործվի Երևանի շամպայնի գինիների գործարանի ամբողջ հզորությունը։ Դրա հետ միասին խնդիր է դրվում բոլոր գինեգործական ձեռնարկություններում դնել ուտիլիզացիոն սարքավորում-



ներ։ Այս ուղղությամբ կարևորագույն միջոցառում է 1958 թվականի վերջին Էջմիածնի գինու գործարանի զտման ցեխի գործարկումը, որը հնարավորություն կտա մշակելու եղած հումքի շուրջ 100 տոկոսը։

Հատուկ ուշադրություն է հատկացվելու արտադրության ավտոմատացմանը և մեքենայացմանը, մասնավորապես օժանդակ օպերացիաներին՝ շշերը փաթեթելուն, արկղների մեջ դասավորելուն, տակառները լվանալուն և դարսելուն։

Գինեգործական արդյունաբերության տեխնիկական զարգացման համար առաջնահերթ խնդիր է արտադրության մեջ հասունացումն արագացնելու նպատակով գինենյութերի ջերմային մշակման լայն արմատավորումը, որի համար անհրաժեշտ է գործող և հատկապես կառուցվող գործարանները հագեցնել անմիջական գոլորշիացման ջերմափոխանակման և սառնարանային սարքավորումով։ Բացի դրանից գինու լցման համար անհրաժեշտ է կիրառել ստերիլ լցման ավտոմատիկ գծեր, որոնցից մեկը մոտ ժամանակներս թողարկման են պատրաստում Կոտայքի գործարանում։

Գարեջրի արտադրությունը 1965 թվականին կհասցվի երեք միլիոն դեկալիտրի, 1958 թվականի 1,800 հազարի դիմաց։ Գարեջրի գործարաններ են կառուցվելու Ղափանում և Սևանում։

Նախատեսվում է 1965 թվականին լցնել մինչև 80 միլիոն շիշ հանքային ջուր։ Դրա հետ միասին լայնորեն կծավալվի նաև ածխաթթվային գազի արտադրությունը բնական ածխաթթվի՝ Կեչուտի, Ազատեկի և Մարտունու նոր հանքավայրերի օգտագործման հաշվին, որտեղ նախատեսվում է ածխաթթվային գազի նոր գործարաններ կառուցել։

Ռեսպուբլիկայում մեծ թափով է զարգացել նաև պահածոների արտադրությունը։ Սովետական իշխանության տարիներին այն աճել է ավելի քան 50 անգամ, և այժմ պահածոների յոթ գործարաններում արտադրվում է ավելի քան 72 միլիոն պայմանական տուփ պահածո։ Նախատեսվում է 1965 թվականին պահածոների արտադրությունը հասցնել մինչև 130 միլիոն պայմանական տուփի։ Տեղական հումքի բազայի վրա այսպիսի աճ է նախատեսվում Այրումում, Հրազդանում, Շամշադինում և Իջևանում պահածոյի նոր գործարաններ կառուցելու, ինչպես նաև գործող գործարանների և մշակող կետերի ընդարձակման ու վերակառուցման միջոցով։

Մոտակա տարիների ընթացքում Հոկտեմբերյանի պահածոների գործարաններում կազմակերպվելու է մանկական սննդի պահածոների արտադրության ցեխ՝ 6 միլիոն տուփ կարողությամբ։

Պահածոների արդյունաբերության հետագա զարգացման համար նախատեսվում է իրականացնել հետևյալ միջոցառումները՝ արտադրության մեջ լայնորեն ներդնել պտուղների և բանջարեղենի արագ սառեցման սարքավորումներ, որոնք կպահպանեն պտուղների բնական հատկությունները և կերկարաձգեն պտուղների մշակման ժամկետները, պահածոներ պատրաստելու առավել ռացիոնալ մեթոդների կիրառում, անընդհատ գործող ստերիլիզատորների արմատավորում, պատրաստի պահածոների լվացման, պիտակավորման և փաթեթոման մեքենայացում և ավտոմատացում, ինչպես նաև պահեստային օպերացիաների մեքենայացում։

Ճարպայուղային արդյունաբերության բնագավառում հիմնական ուշադրու-

*թյունը կհատկացվի բամբակի և սոյայի սերմերից առավելագույն չափով յուղ հանելուն, որը կատարվելու է մշակման առաջավոր մեթոդի կիրառման միջոցով:*

*Ձկնարդյունաբերության գծով հիմնական խնդիրը Սևանա լճի արդյունաբերական արժեքավոր ձկների պահպանումը և վերարտադրումն է: Այս նպատակով յոթնամյակի ընթացքում Սևանում կառուցվելու է իշխան ձկան բազմացման գործարան, վերակառուցվելու են Նոր-Բայազետի և Կարճաղբյուրի գործարանները, ինչպես նաև պետք է կառուցվեն իշխան ձկան աճեցման արհեստական լճակներ՝ 5,2 միլիոն մատղաշ ձկան համար:*

*Յոթնամյակի ընթացքում գլանակների և սիգարետների արտադրությունը, 1958 թվականի մակարդակի համեմատությամբ, աճելու է 16 տոկոսով և այն հասցվելու է 7 միլիարդ հատի, ընդ որում նախատեսվում է լայնորեն սպառվող բարձր տեսակների ավելացում:*

*Հրուշակեղենի արտադրությունը առաջիկա յոթ տարիների ընթացքում աճելու է 70 տոկոսով. 1958 թվականի 8200 տոննայի դիմաց 1965 թվականին այն կազմելու է 13600 տոննա:*

*Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերության ամենախոշոր բնագավառը շաքարի արտադրությունն է: Պլանավորվող ժամանակամիջոցի համար շաքարի արտադրության ծավալը նախատեսվում է ավելացնել 22,7 տոկոսով, շաքարավազի արտադրանքը հասցնելով 13,5 հազար տոննայի: Այս ժամանակամիջոցում շաքարի արդյունաբերության գծով նախատեսվում է լուծել կարևորագույն տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման մի շարք գործնական խնդիրներ:*

*Անհրաժեշտ է յոթնամյակի ընթացքում արմատավորել մի շարք նորագույն սարքավորումներ, արտադրական պրոցեսների ավտոմատիկ կարգավորում, մեքենայացնել ծանր և աշխատատար պրոցեսները: Լուրջ ուշադրություն պետք է հատկացնել շաքարի ճակնդեղը բարձր շեղջերով հավաքելու մեքենայացմանը և այն ծղոտե ու եղեգնյա խսիրներով ծածկելուն, ինչպես նաև շեղջերով հավաքված ճակնդեղի օդափոխմանը, լայնորեն կիրառելով հողից մեկուսացնող սարքավորումներ:*

*Շատ մեծ ուշադրություն պետք է հատկացնել փաթեթված ձևով թողարկվող սննդամթերքների տեսակարար կշռի զգալի ավելացման, գեղարվեստական ձևավորման և պիտակավորման հարցերին: Էական խնդիր է տարայի արտադրությունը: Բանն այն է, որ սննդի արդյունաբերությունը արտաքին և ստացիոնար տարայի պատրաստման վրա մեծ քանակությամբ փայտանյութ է ծախսում: Ռեսպուբլիկայում արտաքին և ստացիոնար տարա պատրաստելու համար պահանջվող փայտանյութի մոտավորապես 50 տոկոսը ծախսվում է սննդի արդյունաբերության տարաների պատրաստման վրա, այդ պատճառով էլ կարևորագույն խնդիր է դրվում՝ փայտյա տարան փոխարինել այլ արկղներով, հատկապես ծալքավոր կարտոնից պատրաստվող արկղներով:*

*Սննդամթերքների արտադրության այսպիսի աճը կապահովի ժողովրդական սպառման պահանջները:*

Ս. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի Սննդի արդյունաբերության վարչության պետ



# ՄԵՐ ԳՈՐԾԱՐԱՆԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերով հատուկ ուշադրություն է հատկացվում էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացմանը, որը կարևորագույն տեխնիկական բազա է երկրի էլեկտրիֆիկացման համար:*

*Հետպատերազմյան ժամանակաշրջանում Հայաստանում ստեղծված էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը ամենաերիտասարդ ճյուղն է ռեսպուբլիկայում և գործնականում գոյություն ունի ընդամենը 10 տարի: Սակայն այդքան կարճ ժամանակամիջոցում նրա զարգացման տեմպերն այնքան բուռն են եղել, որ ներկայումս էլեկտրատեխնիկական արտադրանքի թողարկման ծավալով Հայկական ՍՍՌ-ն միութենական ռեսպուբլիկաների մեջ երրորդ տեղն է գրավում:*

*Ռեսպուբլիկայում էլեկտրատեխնիկական արդյունաբերության առաջնեկը և խոշորագույն ձեռնարկությունը Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանն է: Նա առաջավոր էլեկտրամեքենաշինական գործարաններից մեկն է ՍՍՌՄ-ում: Ներկայումս ՍՍՌՄ-ում Հայէլեկտրագործարանն առաջատար ձեռնարկությունն է կոնստրուկցիաների ու տեխնոլոգիաների մշակման, էլեկտրատեխնիկական արտադրանքի այնպիսի կարևոր տեսակների արտադրության ու մատակարարման գծով, ինչպիսիք են՝ մինչև 100 կիլովատ կարողությամբ սինխրոնային գեներատորները, մինչև 560 կիլովոլտ-ամպեր կարողությամբ և մինչև 35 կիլովոլտ լարմամբ ուժային տրանսֆորմատորները, մինչև 100 կիլովատ կարողության շարժական դիզել-էլեկտրակայանները, մինչև 320 կիլովոլտ-ամպեր կարողության կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայանները և այլն:*

*Գործարանը զարգացման լայն հեռանկար ունի: Նախնական պլանով 1959—1965 թվականների ընթացքում գործարանի ապրանքային և համախառն արտադրանքի թողարկումն ավելանալու է 2,2 անգամ: Արտադրանքի թողարկման տարեկան միջին աճը կազմելու է 12,1 տոկոս:*

*Ինչպես այս թվերից երևում է, Հայէլեկտրագործարանի արտադրության աճման տեմպը միջին հաշվով 25 տոկոսով ավելի բարձր է, քան ՍՍՌՄ-ի ամբողջ ծանր ինդուստրիայի կոնտրոլ թվերով նախատեսված աճման տեմպը: Նախատեսված է յոթնամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 50 տոկոսով, իսկ օգուտների ծավալը եռապատկել և հասցնել 250 միլիոն ռուբլու:*

*1965 թվականին Հայէլեկտրագործարանը կթողարկի I և II գաբարիտի ուժային տրանսֆորմատորներ՝ 6 միլիոն կվա գումարային կարողությամբ կամ մոտ 40000 հատ, շարժական էլեկտրակայաններ՝ 24100 հատ և այլն:*

*Այս թվերը պարզ պատկերացնելու համար բավական է նշել, որ 1965 թվականին Հայէլեկտրագործարանի թողարկած ուժային տրանսֆորմատորները կարող են ընդունել և բաշխել Կույբիշևի, Ստալինգրադի, Դնեպրի հիդրոէլեկտրակայանների և Հայաստանի բոլոր էլեկտրակայանների արտադրած ամբողջ էլեկտրաէներգիան միասին վերցրած: Հայէլեկտրագործարանի էլեկտրատեխնիկական իրերի արտադրության բուռն աճը 1959—1965 թվականների ընթացքում տեղի է ունենալու տեխնիկական հետագա պրոգրեսի բազայի վրա, նոր, ավելի կատարելագործված մեքենաների ու ապարատների,*

ժամանակակից առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների ստեղծման ու արմատավորման միջոցով, առանձին ագրեգատների, հաստոցների ու տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացումից և ավտոմատացումից ամբողջական տեխնոլոգիական պրոցեսների, արտադրությունների ու ցեխերի կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման անցնելու միջոցով։

Վերջին երեք տարում Հայէլեկտրագործարանի կոլեկտիվը մեծ աշխատանք է կատարել ժամանակակից նոր մեքենաների և էլեկտրատեխնիկական այլ իրերի մշակման ու ներդրման, ծանր ու աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Այդ տարիների ընթացքում մշակվել են էլեկտրասարքավորումների ավելի քան 50 տիպի նոր կոնստրուկցիաներ, որոնցից քանիսը յուրացվել ու ներդրվել են սերիական արտադրության համար։ Այդ կոնստրուկցիաներից շատերն իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով չեն զիջում Բելգիայի, ԳՖՌ-ի առաջատար ֆիրմաների արտադրած համանման մեքենաների լավագույն նմուշներին։

1959—1965 թվականների ընթացքում Հայէլեկտրագործարանի կոլեկտիվը պետք է է՛լ ավելի նշանակալից աշխատանքներ կատարի նոր, ավելի կատարելագործված ու ժամանակակից էլեկտրական մեքենաների, ագրեգատների ու սարքավորումների մշակման և արմատավորման ուղղությամբ։ Նախատեսվում է յոթնամյա ժամանակամիջոցում ավարտել միասնական սերիայի մինչև 100 կվտ կարողության կիսահաղորդիչ ուղղիչներից ինքնագրգռում ունեցող սինխրոնային մեքենաների մշակումն ու արմատավորումը, որոնք պահանջում են լարման ավտոմատիկ կարգավորման ճշգրտության բարձր աստիճանը և գեներատորների ճիշտ աշխատանքը իրար հետ ու ցանցի հետ։ Նոր մեքենաները ներկայումս թողարկվող մեխանիկական ուղղիչներից գրգռում ունեցող միասնական սերիայի մեքենաների համեմատությամբ ավելի բարձր տեխնիկա-շահագործական ցուցանիշներ կունենան։

Նախատեսվում է մշակել ու արմատավորել նոր սերիայի 10-րդ գաբարիտի 100-ից մինչև 200 կվտ կարողությամբ սինխրոնային մեքենաներ, որոնք կունենան օգտակար գործողության ավելի բարձր գործակից և ակտիվ ու կոնստրուկտիվ նյութերի ավելի քիչ ծախս։ Նոր սերիայի մեքենաները բացի շահագործման բնույթի էական առավելություններից կունենան նաև զգալիորեն ավելի պակաս գաբարիտ ու կշիռ, քան ներկայումս թողարկվող «Ս» սերիայի նույնանման մեքենաները։

Սրա հետ միասին ենթադրվում է 1959—1965 թվականների ընթացքում Հայէլեկտրագործարանում կազմակերպել այնպիսի նոր հատուկ էլեկտրական մեքենաների արտադրություն, որպիսիք ներկայումս ՍՍՌՄ-ում չեն արտադրվում։ Դրանք են՝ մինչև 100 կվտ կարողությամբ, բարձրացված հաճախականության սինխրոնային մեքենաները, 1000-ից մինչև 10000 հերց հաճախականությամբ և 10-ից մինչև 100 կվտ կարողությամբ բարձրորակ վերափոխիչ ագրեգատները, ինչպես նաև բարձր պտուտաթիվ ունեցող սինխրոնային գեներատորներ։

Տրանսֆորմատորաշինության բնագավառում անհրաժեշտ է 1959—1960 թվականներին ծավալել 20-ից մինչև 560 կվտ կարողությամբ ՏՍՄ տիպի նոր սերիայի ուժային տրանսֆորմատորների թողարկումը, ինչպես նաև ավարտել I և II գաբարիտի ալյումինե հաղորդիչի փաթույթներով ուժային տրանսֆորմատորների մշակումը և սկսել դրանց սերիական թողարկումը, մի





բան, որը միջոցների զգալի տնտեսում կապահովի և, որ գլխավորն է, համարյա կրկնակի չափով կկրճատի սուր դեֆիցիտային նյութի՝ պղնձի պահանջը գործարանում։

Բացի դրանից նախատեսվում է յոթնամյա ժամանակաշրջանի ընթացքում կազմակերպել հատուկ տիպի տրանսֆորմատորների արտադրություն՝ նոր էլեկտրակայանների կառավարման սխեմաների և տրանսպորտի էլեկտրիֆիկացման համար։

Գործարանի կոլեկտիվը խոշոր անելիքներ ունի նոր շարժական ու ստացիոնար դիզել-էլեկտրական ագրեգատների ստեղծման և նրանց արտադրության կազմակերպման գործում։ 1959—1962 թվականներին ավարտվելու է 5-ից մինչև 100 կվտ կարողությամբ ստացիոնար կատարման դիզել-էլեկտրական ագրեգատների նոր սերիայի մշակումը, որոնք բաղկացած են լինելու տարբեր կարողության յոթ ագրեգատներից։ Այդ սերիայի ագրեգատները թողարկվելու են ինչպես նորմալ, այնպես էլ ավտոմատացված կատարումով։ Վերջինի կատարումը բոլորովին նոր բան է հայրենական տեխնիկայի մեջ և ապահովում է դիզել-էլեկտրական ագրեգատի գործարկումը, աշխատանքն ու կանգնեցումը՝ առանց մշտական սպասարկող անձնակազմի։

Բացի ստացիոնարներից մշակվում են և սերիական արտադրությամբ արմատավորվելու են նոր շարժական էլեկտրակայաններ, որոնք փոխարինելու են ներկայումս թողարկվող ԴԷՍ և ԺԷՍ տիպի էլեկտրակայաններին։ Այդ էլեկտրակայանները թողարկվելու են կիսահաղորդիչ ուղղիչներով միասնական սերիայի գեներատորների և ավելի կատարելագործված կոնստրուկցիայի հայրենական նոր դիզելների բազայի վրա։ Նոր էլեկտրակայանների կշիռն ու գաբարիտները գոյություն ունեցողների համեմատությամբ նվազեցվելու են 25—35 տոկոսով, միաժամանակ զգալիորեն բարելավելով նրանց տեխնիկա-շահագործական ցուցանիշները։

Այսպիսով, յոթնամյա ժամանակաշրջանի ընթացքում Հայէլեկտրագործարանի կոլեկտիվը ո՛չ միայն կյուրացնի մի շարք բոլորովին նոր, մինչև այժմ չթողարկվող մեքենաների, ապարատների և այլ էլեկտրաագրեգատների թողարկումը, այլև ներկայումս թողարկվող արտադրանքը լիովին կփոխարինի ավելի կատարելագործված էլեկտրաշինվածքներով։ Իսկ դա նշանակում է, որ այդ ժամանակամիջոցում գործարանը յուրացնելու և կազմակերպելու է մոտ 70 նոր էլեկտրական մեքենաների, տրանսֆորմատորների, ապարատների, շարժական ու ստացիոնար էլեկտրակայանների և այլ էլեկտրաագրեգատների արտադրությունը։

Արտադրությունն ընդարձակելու և արտադրանքի թողարկումն ավելացնելու վերոհիշյալ խնդիրների կատարման, ինչպես նաև էլեկտրաիրերի նոր տեսակների արտադրություն կազմակերպելու համար նախատեսվում է 1959—1965 թվականների ընթացքում լիովին ավարտել գործարանի կառուցումը՝ շահագործման հանձնելով բարձր չափերով հագեցված նոր ցեխեր և արտադրություններ։ Նախատեսված է յոթնամյա ժամանակաշրջանի առաջին տարիների ընթացքում լիովին ավարտել գործարանի կառուցումը և գործարկել 36400 քառ. մետր արտադրական տարածություն, այդ թվում՝ գործարանի գլխավոր հավաքման կորպուսը, կոմպրեսորային կենտրոնացված ցեխը և այլն, որի համար անհրաժեշտ է 58 միլիոն ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանք կատարել։

*Յոթնամյա ժամանակաշրջանում իրականացվելիք գլխավոր խնդիրներից մեկն է գործարանի ձուլվածքային արտադրության ընդարձակումը։ Նախատեսված է գործարանի ձուլման ցեխն ընդարձակել երկու անգամ, շահագործման հանձնելով 3 նոր ձուլման կոնվեյեր, հողապատրաստման տեղամասի 2-րդ հերթը, ձուլվածքի մաքրման ու ներկման տեղամասը, մեքենայացված բովախառնուրդի ու հալման տեղամասը։ Այս ամենը հնարավորություն է տալիս ձուլվածքային արտադրության կարողությունը եռապատկել՝ հասցնելով այն տարեկան մինչև 36 հազ. տոննա չուգունի ձուլման և դրանով իսկ ապահովել գործարանի թողարկած էլեկտրասարքավորման արտադրության ընդարձակման հիմնական պայմաններից մեկը։ Սրա հետ միասին նախատեսվում է ներգործարանային տրանսպորտի մեծ զարգացում և բեռնման ու բեռնաթափման աշխատանքների մեքենայացում, որը ներկայումս արտադրության նեղ տեղերից մեկն է։*

Ռ. ՕՀԱՆՅԱՆ
Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի
գլխավոր ինժեներ

## ՍՏԵՓԱՆԱՎԱՆՑԻՆԵՐԻ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Ստեփանավանի շրջանի աշխատավորությունը մեծ ոգևորությամբ ուսումնասիրում և քննարկում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մասին ՍՄԿՊ XXI համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման ու «Կյանքի հետ դպրոցի կապն ամրապնդելու և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» ՍՄԿՊ Կենտկոմի ու ՍՍՌՄ Մինիստրների Սովետի թեզիսները։*

*Օրերս տեղի ունեցավ շրջանային պարտիական ակտիվի ժողովը, որը նվիրված էր ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի նյութերի քննարկմանը։ Ակտիվի ժողովն անցավ բարձր մակարդակով։ Զեկուցումից հետո բացվեց մտքերի լայն փոխանակություն։*

*— Ժողովրդական տնտեսության զարգացման առաջիկա յոթնամյա պլանը,— իր ելույթում ասաց Արմանիսի կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Հովսեփյանը,— մեծ խնդիրներ է դնում գյուղատնտեսության բնագավառի աշխատողների առջև։ Այդ խնդիրների իրագործումը պահանջում է արմատապես վերակառուցել կոլտնտեսային արտադրության կազմակերպումը, աշխատանքի նորմավորման, վարձատրության և խրախուսանքի միջոցների ներկա կարգը։ Շրջանի համարյա բոլոր կոլտնտեսություններում, որոնց մեծ մասը ունեն աշխատանքի նման պայմաններ, նույն աշխատանքը կատարելու համար սահմանված է վարձատրության տարբեր նորմա։ Ժամանակն է, որ այդ հարցը վերանայվի և կարգավորվի։ Կոլտնտեսային արտադրությանը լուրջ խթան կհանդիսանա, եթե մենք, Միության առաջավոր կոլտնտեսությունների օրինակով, բերքաբաշխումը կատարենք ըստ բրիգադաների։ Պետք է պարզություն մտցվի նաև հավելյալ վարձատրության գործում։ Նպատակահարմար է հավելյալ վարձատրություն սահմանել գերակատարած արտադրանքի համար։ Հովսեփյանն այնուհետև առաջարկություն է մտցնում գյուղատնտեսության հետ անմիջականորեն առնչություն ունեցող շրջանային հիմ-*



*նարկությունների աշխատողներին վարձատրել, ելնելով գյուղատնտեսական մթերքների արտադրության մակարդակից։ Դա նոր խթան կհանդիսանա կոլտնտեսություններին ցույց տրվող ղեկավարությունն ու օգնությունը ավելի ուժեղացնելու։*

*Պարտիայի շրջանային կոմիտեի քարտուղար Թ. Գրիգորյանը նշեց, որ նախատեսվում է 1965 թվականին շրջանում կաթի արտադրությունը ավելացնել 1,9 անգամ, միսը՝ 2,3 անգամ, բրդինը՝ 1,5 անգամ, որը զգալիորեն բարձր է ռեսպուբլիկայի համար սահմանված պլաններից։ Վերջին երեք տարում շրջանի մի շարք կոլտնտեսությունների (Հոբարձի, Ուռուտ, Արմանիս, Վարդաբլուր) փորձը ցույց է տալիս, որ այդ խնդիրների կենսագործման համար կան լայն հնարավորություններ և ռեզերվներ։ Անհրաժեշտ է ընդարձակել ցանովի խոտաբույսերի, առաջին հերթին, երեքնուկի, առվույտի, ինչպես նաև եգիպտացորենի ցանքատարածությունները, բարձրացնել դրանց բերքատվությունը։ Այդ կուլտուրաների ցանքատարածությունների ավելացման համար լայն հնարավորություններ ունեն Ագարակի ենթաշրջանի կոլտնտեսությունները։ Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման կարևոր պայմանը մայր անասունների ստերջության վերացումն է, անկումների կանխումը, որը, ցավոք սրտի, շրջանի առանձին կոլտնտեսություններում (Լեջան, Ագարակ, Կույբիշևո) մեծ թիվ է կազմում։*

*Շրջանի աշխատավորության կուլտուր-կենցաղային աճող պահանջները բավարարելու համար նա առաջարկում է ընդլայնել կահույքի ֆաբրիկայի արտադրությունը և արագացնել նախատեսված ճշգրիտ գործիքների գործարանի կառուցումը. այդ լայն հնարավորություն կստեղծի ուսումնական հաստատություններն ավարտած երիտասարդությանը հանրօգուտ աշխատանքում ընդգրկելու։*

*— Թեզիսներում նախատեսվում է խաղողի և պտղատու այգիների տարածությունը մեր ռեսպուբլիկայում ավելացնել 44 հազար հեկտարով,— իր ելույթում ասաց շրջսովետի գործկոմի գյուղատնտեսության տեսչության պետ Հ. Արզումանյանը,— այդ խնդրի իրականացման գործում իր արժանի բաժինը ունի նաև Ստեփանավանի շրջանը։ Բնակլիմայական պայմանները թույլ են տալիս շրջանի շատ կոլտնտեսություններում աճեցնել ընկույզի, սալորի, տանձի ու խնձորի լավ տեսակներ և բանջարանոցային մի շարք կուլտուրաներ. սակայն այդ ուղղությամբ մենք քիչ աշխատանք ենք կատարում։ Գյուլագարակի և Ագարակի ենթաշրջանի շատ գյուղերում կան հսկայական տարածություններ, որոնք կարելի է յուրացնել ու մինչև հնգամյակի վերջը պտղատու այգիների տարածությունները հասցնել մինչև 700 հեկտարի, ընթացիկ տարվա 380 հեկտարի դիմաց։ Այս աշխատանքների նախաձեռնությունն իր վրա պետք է վերցնի շրջանի երիտասարդությունը։*

*— Թեզիսներում նախատեսվող ժողովրդական կրթության վերակառուցումը,— իրենց ելույթներում նշեցին Հ. Տոնոյանը, Ս. Թունյանը, Շ. Սարգսյանը և Ս. Համբարյանը,— բխում է ժողովրդական տնտեսության զարգացման հոյակապ խնդիրներից, այն խթան կհանդիսանա աճող սերնդի անսպառ ուժն ու եռանդը լրիվ օգտագործելու մեր Հայրենիքի հետագա ծաղկման համար։ Շրջանում զգալի աշխատանք է կատարվել դպրոցը կյանքի հետ կապելու ուղղությամբ։ Բոլոր դպրոցներն ունեն ուսումնա-փորձնական հողամասեր, վերջին տարիներում կառուցվել են ուսումնական 16 արհեստանոց. այժմ*

դպրոցներում զբաղվում են թռչնաբուծությամբ, ճագարաբուծությամբ և մեղվաբուծությամբ։ Կուրթանի դպրոցի 8—10-րդ դասարանների աշակերտներից կազմված արտադրական բրիգադան մշակեց 10 հեկտար եգիպտացորեն, մեկ հեկտար կարտոֆիլ և պատրաստեց 100 տոննա սիլոս։ Ագարակի միջնակարգ դպրոցի աշակերտներն իրենց ուժերով կառուցել և շահագործման են հանձնել ուսումնական արհեստանոցը, լողավազանը, տնկել են 1500 դեկորատիվ ծառեր և կոլտնտեսության արտադրության մեջ վաստակել են 5017 աշխօր։ Նման նախաձեռնություն են հանդես բերել նաև շրջանի Ուռուտ, Վարդաբլուր, Կիրովի և այլ գյուղերի դպրոցները։

Դպրոցի վերակառուցումը պահանջում է մեծ աշխատանք։ Դեռևս զգալի թերություններ կան ուսումնա-դաստիարակչական աշխատանքների բնագավառում։

Պարտիական ակտիվի ժողովում իրավացի կերպով նշվեց, որ վաղուց է զգացվում անհրաժեշտ պատրաստականություն չունեցող ուսուցիչների ատեստացիա անցկացնելու պահանջը։ Անհրաժեշտ է նախատեսվող ատեստացիան տարածել բոլոր ուսուցիչների վրա։ Իսկ մեծահասակ և իրենց ծառայությունը մատուցած ուսուցիչների համար պետք է սահմանել մեկ դրույքի չափով թոշակ և նրանց ազատել ուսուցչական աշխատանքից։ Ելնելով ՍՍՌՄ ժողովուրդների հետ հաղորդակցելու, ռուսական բարձր կուլտուրային ավելի մոտիկից ծանոթանալու համար անհրաժեշտ է հայկական դպրոցներում ռուսաց լեզվի, իսկ ռուսական դպրոցներում սովորող հայ երեխաների համար հայոց լեզվի ուսուցումը լինի պարտադիր։ Քանի որ 8-ամյա պարտադիր կրթությունից հետո յուրաքանչյուր պատանի և աղջիկ պետք է կատարի հանրօգուտ աշխատանք, անհրաժեշտ է, որ նա ֆիզիկապես հասունացած լինի. դրա համար նպատակահարմար է ուսուցումը սկսել 8 տարեկան հասակից։ Նախադպրոցական հասակ ունեցող երեխաների համար եղած մանկապարտեզները դարձնել դպրոցներին կից։

Դպրոցը կյանքի հետ կապելու պահանջից ելնելով, ընկ. Բ. Գյոզալյանն առաջարկություն մտցրեց շրջանի Զոովետ տեխնիկումը պահել Ստալինի անվան կոլտնտեսության բազայի վրա, որը կապահովի ուսանողության ակտիվ մասնակցությունը կոլտնտեսային արտադրությանը։

— Կոմունիստական շինարարության վիթխարի պլանի իրականացումը,— ասաց պարտշրջկոմի քարտուղար Ն. Աղաջանյանը,— մեզնից պահանջում է արմատապես բարելավել կազմակերպական աշխատանքը, գաղափարական աշխատանքի բոլոր ձևերը՝ պրոպագանդան, ագիտացիան, մամուլը ուղղել շրջանի աշխատավորության առջև առաջիկա յոթնամյակում դրված վեհ խնդիրների անթերի կատարմանը։

Գ. ՀՈՒՆԱՆՅԱՆ

## ԱՅԳԵԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Հայկական ՍՍՌ-ում խաղողի և պտղատու այգիների տարածությունը 1959—1965 թթ. ընդարձակվելու է 44 հազար հեկտարով։ Խաղողի այգիների համախառն բերքը 1957 թվականի համեմատությամբ ավելանալու է մոտավորապես 2,9 անգամ, պտղատուներինը՝ 3 անգամ։



Այգեգործության-պտղաբուծության զարգացման այս աճը հնարավոր է դառնում, մի կողմից՝ Թալինի, Արզնի—Շամիրամի, Կոտայքի, Դվինի և մի շարք այլ ջրանցքներ շահագործման հանձնելու շնորհիվ, որով ավելի քան 40 հազար հեկտար նոր հողեր պիտանի կդառնան այգեգործության համար, մյուս կողմից՝ նյութա-տեխնիկական այն հզոր բազայի առկայությամբ, որով հագեցված են մեր ռեսպուբլիկայի սովետական տնտեսություններն ու կոլտնտեսությունները։

Նախատեսվում է 1959—1965 թվականներին ռեսպուբլիկայում հիմնել 23090 հեկտար խաղողի այգիներ, որոնցից 14830 հեկտարը՝ սովետական տնտեսություններում, 8260 հեկտարը՝ կոլտնտեսություններում։ Հիմնվելու են 20930 հեկտար պտղատու այգիներ, որոնցից 9260 հեկտարը՝ սովետական տնտեսություններում, 11670 հեկտարը՝ կոլտնտեսություններում։

Նոր տնկումները հիմնականում կատարվելու են Արարատյան գոգահովտի՝ Թալինի, Կոտայքի, Էջմիածնի և այլ շրջանների առապարային, դեռևս կուսական հողերում, այդ հողերը տնկումների համար նախապատրաստելը պահանջում է լարված մելիորատիվ աշխատանք։

Անցյալում, պտղատու ծառերի տեսակները և սորտերը առանձին միկրոռայոններում ճիշտ չտեղադրելու հետևանքով Հոկտեմբերյանի, Էջմիածնի և մի շարք այլ շրջաններում ձմռան սառնամանիքներից և գարնան ցրտահարություններից այգիների զգալի տարածություններ շարքից դուրս են եկել, իսկ որոշ այգիներում պարբերաբար վնասվել է բերքը. հարկավոր է հատուկ ուշադրություն դարձնել սորտայնացման աշխատանքներին, հետագայում նման երևույթներից խուսափելու համար։

Սորտայնական խնդրում պետք է լայնորեն օգտագործել մեր երկրի առանձնահատկությունները՝ խիստ արտահայտված ուղղահայաց զոնայականությունը, որը հնարավորություն է տալիս միևնույն տեսակը և սորտը տարբեր զոնաներում աճեցնելով տարբեր որակի պտուղներ ստանալ։ Այսպես, խաղողի ոսկեհատ սորտը տեղադրելով նախալեռնային զոնայում՝ Աշտարակի, Կոտայքի, Թալինի նոր ոռոգվող հողերում, Արարատյան դաշտի թունդ, դեսերտային գինիների փոխարեն, այդ սորտի խաղողից կարող ենք ստանալ սեղանի թեթև կամ շամպայնի բարձրորակ գինիներ։ Ծիրանին, սալորենին, բալենին և այլ ծառատեսակներ նախալեռնային գոտիներում տեղադրելով, այդ պտուղների թարմ վիճակում օգտագործելու շրջանը հնարավոր է երկարացնել մեկ ամսից ավելի ժամանակով։ Մեղրու, Նոյեմբերյանի, Ալավերդու, Իջևանի, Շամշադինի, Գորիսի, Ղափանի շրջանների ցածրադիր վայրերը պետք է օգտագործել թզենու, նռենու, արևելյան արմավենու և այլ մերձարևադարձային կուլտուրաների զարգացման համար։

Արարատյան գոգահովտի, Եղեգնաձորի շրջաններում հիմնականում պետք է զարգացնել ծիրանին, սալորենին, բալենին, կեռասենին, տանձենին, խնձորենին, սերկևիլը, որոնց լավագույն սորտերը այստեղ տալիս են բարձրորակ պտուղների առատ բերք։

Վերջին տարիների ընթացքում այգեգործության և պտղաբուծության զարգացումը մեծ թափ ստացավ Հայաստանի հյուսիս-արևելյան շրջաններում՝ Նոյեմբերյանում, Իջևանում, Շամշադինում և Ալավերդում։ Այստեղ կլիման մեղմ է։ Խաղողի վազը, պտղատու ծառերը գրեթե չեն վնասվում ձմռան սառնամանիքներից և վաղ գարնան ցրտահարություններից։ Ձմռան

սառնամանիքներից պաշտպանվելու համար կարիք չի լինում այգիները թաղել։ Մթնոլորտային տեղումների տարեկան քանակը հասնում է 400—450 մմ., այնպես որ հնարավոր է անջրդի պայմաններում այգիներ մշակել։ Ավելի բարձրադիր զոնայում միանգամայն նպաստավոր պայմաններ կան խնձորենու, տանձենու, սերկևիլի և պտղատու ծառերի մյուս տեսակների լավագույն սորտեր աճեցնելու համար։

Հնդավոր պտուղների զարգացման համար ոչ պակաս նպաստավոր պայմաններ կան Ստեփանավանի, Կիրովականի, Սպիտակի, Գորիսի, Ղափանի և այլ շրջանների նախալեռնային գոտիներում։ Միչուրինյան և միջին ռուսական ցրտադիմացկուն սորտերի տարածման շնորհիվ պտղատու տեսակների մշակությունը լայն չափով արմատավորվեց բարձր լեռնային շրջաններում։

Խաղողի ու մրգի արտադրության ավելացումը կատարվելու է, մի կողմից՝ բերքատու այգիների տարածությունը ընդարձակելու, իսկ մյուս կողմից՝ պտղատու այգիների բերքատվությունը շեշտակիորեն բարձրացնելու միջոցով։ Պտուղների առատություն ստեղծելու մասին պարտիայի և կառավարության առաջադրանքը պատվով կատարելու համար յոթնամյակի առաջին տարիներում հարկավոր է հիմնել հնարավորին չափ շատ այգիներ։ Միաժամանակ անհրաժեշտ է նորատունկ այգիների խնամքը կատարել բարձր որակով, այնպես որ նրանք որքան հնարավոր է շատ բերք տան։ Տարածությունները ավելի ինտենսիվ օգտագործելու, համեմատաբար կարճ ժամանակամիջոցում երկրին առատ ու լավորակ պտուղներ տալու համար անհրաժեշտ է պտղատու այգիներ հիմնելիս հիմնական ծառերի միջբուսային և միջշարքային տարածություններում խտացման կարգով տնկել կարճակյաց, բայց ավելի վաղ պտղաբերող տեսակներ, կամ գաճաճ ծառեր։ Այսպես, ծիրանու այգում կարելի է զետեղել դեղձենի, սալորենի, բալենի. խնձորենու այգում՝ գաճաճ տանձենի, գաճաճ խնձորենի և այլն։ Նոր տնկումները հիմնականում կատարվելու են առապարային անստրուկտուրային հողերի վրա, ուստի, որպեսզի ծառերը լավ աճեն, շատ բերք տան, անհրաժեշտ է լայն չափով կիրառել միջշարքերում խոտախառնուրդների, սիդերատների ցանքի կիրառումը, հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործման միջոցով։

Սև ցելի փոխարեն առապարային հողերում անհրաժեշտ է ծավալել զբաղված ցելը՝ բանջարեղենների, արմատապտուղների, սիլոսային և այլ շարահերկ կուլտուրաների մշակության ձևով։ Այդ կնպաստի նաև անասնապահության զարգացմանը։

Ժամանակն է, որ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհը ձեռնամուխ լինի քարերի աղը, կանալիզացիայի աղտոտ պարունակությունը որպես պարարտանյութ օգտագործելու խնդրի վերջնական լուծմանը։ Այդ կենսական նշանակություն ունի նոր յուրացվող հողերի բերրիությունը բարձրացնելու գործում։

Արգնի—Շամիրամ և Թալինի ջրանցքների միջոցով ոռոգվող մասսիվները շատ են տուժում սառը քամիներից և խորշակներից։ Երիտասարդ այգիները դրանցից պաշտպանելու համար անհրաժեշտ է այգետնկմանը զուգահեռ, ավելի լավ է մինչև տնկումները, հիմնել այգեպաշտպան անտառաշերտեր և կանաչ ցանկապատեր, որոնց համար նպատակահարմար է օգտագործել օգտակար ծառատեսակներ։

Այգեգործության զարգացման խնդրում վճռական դեր ունեն կատարելու



պետական և կոլտնտեսային տնկարանները։ Հարկավոր է վճռականորեն բարելավել տնկիների աճեցման գործը, պահանջվող քանակի և որակի խաղողի և պտղատու կուլտուրաների տնկիների ստացումն ապահովելու համար։

Առանձնահատուկ հոգատարություն պետք է հանդես բերել այգիների մշակության, բուժման, բերքահավաքի աշխատանքները մաքսիմալ չափերով մեքենայացնելու նկատմամբ։ Հարկավոր է եղած մեքենաներից ընտրել տեղի պայմաններին ամենահամապատասխանները, անհրաժեշտության դեպքում դրանք վերակառուցել, հարմարեցնել տեղի պահանջներին, կամ ստեղծել նորերը։ Անհրաժեշտ է լավագույն մասնագետներից հատուկ կոնստրուկտորական բյուրո ստեղծել, որը պետք է լուծի այգիների մշակությունը մեքենայացնելու հետ կապված բոլոր խնդիրները։

Հարկավոր է լուծել խաղողի այգիներում տնկաշարքեր կառուցելու խնդիրը։ Պետք է մշակել ինչպես սյուների, նույնպես և տնկաշարքային սիստեմի, վազերի ձևավորման, էտի նոր, մեր պայմաններին ավելի հարմար ձևեր։ Նոր հիմնվող այգիներում ամենաուշը տնկման երկրորդ տարում վազերը պետք է բարձրացված լինեն լարերի վրա։ Շարատունկ հին այգիներում տընկաշարքերի կառուցման աշխատանքները հարկավոր է ավարտել առաջիկա 3—4 տարիներում։ Չպետք է մոռանալ, որ այն այգիների մշակության մեքենայացման նախապայմանն է։

Երիտասարդ այգիների լիարժեք լինելու խնդիրը պետք է լինի սովետական տնտեսությունների, կոլտնտեսությունների ղեկավարների, մասնագետների ուշադրության կենտրոնում։ Պարբերաբար կատարվող լրացումների շնորհիվ այգիները հենց տնկման առաջին տարիներից լիարժեք պետք է լինեն։ Իսկ հին այգիներում լրացումները հարկավոր է ավարտել 1959—1960 թվականների ընթացքում։

Գիտության նվաճումները, առաջավորների փորձը արտադրության մեջ լայնորեն արմատավորելու միջոցով մեր ռեսպուբլիկայի այգեգործները պատվով կկատարեն և կգերակատարեն Հայաստանի այգեգործության զարգացման յոթնամյա պլանը։

Լ. ԲԻՇԱՐՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության
Այգեգործության վարչության գլխավոր ագրոնոմ

## ԶԱՐԳԱՑՆԵԼ ՏՈՀՄԱՅԻՆ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ

Լոռվա անասնաբուծական սովետական տնտեսության պարտիական կազմակերպությունը և ողջ կոլեկտիվը քննարկելով «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի» մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները, ամբողջովին հավանություն տվեցին դրանց։ Հաշվի առնելով սովետական տնտեսության չօգտագործված ռեզերվներն ու հնարավորությունները, նրանք կոնկրետ պարտավորություններ վերցրին անասունների գլխաքանակը և անասնաբուծական մթերքների արտադրանքը զգալի չափով ավելացնելու և ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների անասունների ցեղը ավելի բարելավելու համար։

Անասունների գլխաքանակի ավելացման, մթերատվության բարձրացման հիմնական աղբյուրը տվյալ տնտեսության ռեզերվների և հնարավորությունների մաքսիմալ և ճիշտ օգտագործումն է։ Իսկ տնտեսության ամենագլխավոր ռեզերվը հողն է, նրա ճիշտ օգտագործումը և բերքատվության բարձրացումը։ Այդ իսկ նպատակով Լոռվա անասնաբուծական սովետական տնտեսությունն այս տարի վերանայել է իր ներքին հողաշինարարությունը, արոտները և խոտհարքները ամրացրել է բրիգադներին ու ֆերմաներին. նախատեսված է 3 տիպի ցանքաշրջանառություն՝ մերձֆերմային, կերային և շարահերկ կուլտուրաների։

Ցանքաշրջանառության դաշտերում զգալի տեղ է հատկացված կանաչ կերի և սիլոսային կուլտուրաների, մասնավորապես եգիպտացորենի ցանքատարածության ընդարձակմանը և նրա բերքատվության բարձրացմանը։ Փորձերը ցույց են տվել, որ եգիպտացորենից պատրաստված սիլոսով կովերը կերակրելիս 10—15 տոկոսով ավելի շատ կաթ է ստացվում, քան մյուս կուլտուրաներից պատրաստված սիլոսով կերակրելիս։

Լոռվա տոհմային սովետական տնտեսությունը հիմնականում կոչված է բարելավելու մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների և սովետական տընտեսությունների անասունների ցեղը, արտադրելու և վաճառելու տոհմային ցուլիկներ ու էգ հորթեր։ Այդ խնդիրը հաջողությամբ լուծելու համար անհրաժեշտ է ստեղծել կերի ամուր բազա, արմատապես բարելավել անասունների կերակրումն ու խնամքը։ Ահա թե ինչու նախատեսվել է դաշտերի բարելավման և բերքատվության բարձրացման միջոցով 1958 թվականի 11827 տոննայի դիմաց 1965 թվականին արտադրել 21025 տոննա, կամ 1,8 անգամ ավելի զանազան տեսակի կեր. այդ թվում՝ կոպիտ կեր 1965 թվականին արտադրվելու է 6190 տոննա, 1958 թվականի 2591 տոննայի դիմաց. 1958 թվականի 8816 տոննա հյութալի կերի դիմաց 1965 թվականին արտադրվելու է 14325 տոննա։ Հատիկային կեր արտադրվելու է 1,2 անգամով ավելի։

Կերի արտադրության այդ պլանի կատարումն ապահովելու համար անհրաժեշտ է Լոռվա տնտեսության դաշտերից ոռոգել 800 հեկտար տարածություն, որի համար պետք է Կամենկա-Ձորագետ գետակի ջուրը բարձրացնել և 5—6 կմ. երկարությամբ ջրանցքով տանել դեպի խոտհարքերն ու վարելահողերը։ Այս միջոցառումը հնարավորություն կտա նաև շրջանի Կալինինո, Նովոսելցովո, Սարատովկա և Մեդովկա գյուղերի կոլտնտեսությունների հողերից մոտ 1200 հեկտարը ջրովի դարձնել։

Կերի արտադրության նման աճը մեզ հնարավորություն կտա զգալի չափով ավելացնելու անասունների գլխաքանակը և խիստ կերպով բարձրացնելու նրանց մթերատվությունը։ Այսպես, եթե 1957 թվականին տնտեսությունն ուներ 1860 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում 700 կով, ապա 1965 թվականին պլանավորվում է խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասցնել 2450 գլխի, կամ ավելացնել 1,33 անգամ, այդ թվում՝ կովեր 1100 գլուխ, կամ 1,57 անգամ ավելի։

Խոզերի գլխաքանակը 240-ի դիմաց կհասնի 500-ի, այդ թվում խոզամայրերի գլխաքանակն աճելու է 2,5 անգամ։

Զգալի չափով բարձրանալու է անասունների մթերատվությունը։ Եթե 1957 թվականին մեկ ֆուրաժային կովից ստացվել է 2833 կգ. կաթ, ապա 1965 թվականին պլանավորվում է ստանալ 3636 կգ., կամ 1,28 անգամ ավելի։



Կաթի համախառն արտադրությունը 18469 ցենտներից հասնելու է 40000 ցենտների, կամ աճելու է 2,16 անգամ։

Մսի արտադրությունը 1938 ցենտներից հասնելու է 3550 ցենտների, կամ աճելու է 1,83 անգամ. զգալի չափով ավելանալու է խոզի մսի արտադրությունը։

Անասունների գլխաքանակի աճի հետ մեկտեղ զգալի չափով ավելանալու է տոհմային անասունների վաճառքը։ Նախատեսվում է 1965 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին ու սովետական տնտեսություններին վաճառել 700 գլուխ բարձրարժեք տոհմային ցուլիկներ և էգ հորթեր։

Անասնաբուծական մթերքների պլանավորվող արտադրությունը զգալի չափով կբարձրացնի 100 հեկտար հողատարածության դիմաց մթերքների արտադրանքը։ Այսպես, եթե 1957 թվականին 100 հեկտարի դիմաց արտադրվել է 284 ցենտներ կաթ, 29,7 ցենտներ միս, 16,8 ցենտներ խոզի միս (100 հեկտար վարելահողի դիմաց), ապա 1965 թվականին պլանավորվում է արտադրել. կաթ՝ 615 ցենտներ, կամ 331 ցենտներով ավելի, միս՝ 54 ցենտներ, կամ 24,3 ցենտներով ավելի, խոզի միս՝ 100 ցենտներ, կամ 83,2 ցենտներով ավելի։

Համապատասխանորեն ավելանում է նաև 100 հեկտար հողի վրա պահվող անասունների գլխաքանակը։

Անասնաբուծության մթերատվության բարձրացմանը զգալի չափով օգնում է անասունների ցեղի բարելավումը։ Մեր ռեսպուբլիկայում խոշոր եղջերավոր անասունների մասսայական մետիզացիան սկսվել է դեռ 1937 թվականից, սակայն ոչ բոլոր շրջաններում և տնտեսություններում է, որ այս աշխատանքը գտնվում է բարվոք վիճակում։ Դրությունն ավելի անմխիթար է անասնաբուծական սովետական տնտեսություններում։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի 33 անասնաբուծական տնտեսություններից մի շարք տնտեսություններում կան լավագույն տոհմային անասուններ, սակայն բացի Լոռվա տոհմային սովետական տնտեսությունից ոչ մի տնտեսությունում չի կազմակերպված տոհմային ֆերմա, որի հետևանքով էլ պատշաճ ուշադրություն չի դարձվում մատղաշների աճեցմանը և թերսնված ու թերաճած մատղաշը կորցնում է տոհմային հատկությունը։ Մեզ թվում է, որ առաջիկա յոթնամյակում պետք է լուրջ ուշադրություն դարձնել այդ կարևոր գործի վրա և ամեն կերպ զարգացնել տոհմային անասնաբուծությունը։

Կ. ՄԿՐՏՉՅԱՆ
Լոռվա տոհմային սովետական տնտեսության դիրեկտոր

## ՆՈՐ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐ

Յոթնամյա պլանով նախատեսված խնդիրների լուծումը յուրաքանչյուր շրջանից և կոլտնտեսությունից պահանջում է իրենց արտադրական պլանները կազմել այնպես, որպեսզի ապահովվի դրանց անթերի կատարումն ու գերակատարումը, իհարկե, հաշվի առնելով առանձին շրջանների ու կոլտնտեսությունների տնտեսական պայմանները, գյուղատնտեսության մասնագիտացումն ու տեղաբաշխումը։

Արտաշատի շրջանը ունի բոլոր հնարավոր պայմանները՝ զարգացնելու

այգեգործությունը, բամբակագործությունը, բանջարաբուծությունը և անասնապահությունը։

Շրջանի կոլտնտեսությունները կատարելով ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումները՝ գյուղատնտեսության զարգացման գործում վերջին տարիներս հասել են զգալի հաջողությունների։

Եթե 1953 թվականին շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտները կազմում էին 61472 հազար ռուբլի, ապա 1957 թվականին այն հասավ 120354 հազար ռուբլու, իսկ 1958 թվականին, նախնական հաշիվներով, այն կազմում է մոտ 128 միլիոն ռուբլի։ Զգալիորեն բարձրացել է նաև գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես, օրինակ, եթե շրջանում յուրաքանչյուր հեկտարից 1953 թվականին միջին հաշվով ստացվել է հացահատիկ՝ 7,4 ցենտներ, բամբակ՝ 17,6 ցենտներ, խաղող՝ 45 ցենտներ, բանջարեղեն՝ 76 ցենտներ, առվույտ՝ 61 ցենտներ, ապա 1957 թվականին ստացվել է հացահատիկ՝ 11,2 ցենտներ, բամբակ՝ 27,2 ցենտներ, խաղող՝ 61,2 ցենտներ, բանջարեղեն՝ 229 ցենտներ, առվույտ՝ 114 ցենտներ։

Արտաշատի շրջանի պարտիական, սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսությունների վարչությունները նախատեսել են 1965 թվականին հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց ստանալ միս՝ 82 ցենտներ, կաթ՝ 362 ցենտներ, բուրդ՝ 4,03 ցենտներ, ձու՝ 107 հազար հատ, խաղող՝ 1533 ցենտներ, պտուղներ՝ 133 ցենտներ, բանջարեղեն՝ 489 ցենտներ, հացահատիկ՝ 144 ցենտներ, որից եգիպտացորեն՝ 28,5 ցենտներ։ 1958 թվականին փաստացի կերպով ստացվել է. միս՝ 45,1 ցենտներ, կաթ՝ 238 ցենտներ, բուրդ՝ 3,03 ցենտներ, ձու՝ 50 հազար հատ, խաղող՝ 997 ցենտներ, պտուղներ՝ 62 ցենտներ, բանջարեղեն՝ 390 ցենտներ, հացահատիկ՝ 123 ցենտներ, որից եգիպտացորեն՝ 19 ցենտներ։

Վերոհիշյալ թվերը ցույց են տալիս, որ առաջիկա յոթ տարիների ընթացքում շրջանում մսի արտադրությունը 1958 թվականի համեմատությամբ ավելանալու է 1,8 անգամ, կաթի արտադրությունը՝ 1,5 անգամ, բրդինը՝ 1,3 անգամ, ձվինը՝ 2,1 անգամ, խաղողինը՝ 1,5 անգամ, պտուղներինը՝ 2,2 անգամ, բանջարեղենինը՝ 1,3 անգամ և այլն։

Չնայած այդ բոլորին, անհրաժեշտ է նշել, որ լուրջ ուշադրություն չի դարձված այգեգործության զարգացմանը և անասնաբուծության որոշ մթերքների արտադրության ավելացմանը։ Այսպես, օրինակ, նախատեսված է խաղողի այգիների տարածությունը ընդարձակել ընդամենը 410 հեկտարով, իսկ յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը հասցնել 102 ցենտների։ Մինչդեռ Արտաշատում խաղողագործությունը զարգացնելու համար դեռևս կան չօգտագործված ռեսուրսներ։ Այդպիսի ռեսուրսներից մեկը Դվինի ջրանցքի տակ ընկած հողերի ոռոգումն է, որը հնարավորություն կտա 1000 հեկտարից ավելի տարածություն դնել խաղողի այգիների և կերային կուլտուրաների ցանքի տակ։ Արտաշատի շրջանում խաղողի այգիների տարածությունները պետք է հասցնել մինչև 5000 հեկտարի և բերքատվությունը բարձրացնելու միջոցով 1965 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստանալ 120 ցենտներ խաղողի բերք։

Շրջանի էկոնոմիկայում կարևոր նշանակություն ունի նաև պտղաբուծությունը։ Պտղաբուծությունը գյուղատնտեսության այն ճյուղերից է, որի վրա ավելի քիչ աշխատանք ներդնելով՝ ստանում ենք բարձր եկամուտ։ Այսպես, օրինակ, եթե խաղողագործության ծախսերը կազմում են ստացված եկամտի մեկ քառորդը, ապա պտղաբուծության մեջ այն կազմում է մեկ տասներորդը։ Առաջիկա տարիներին պղտաբուծության զարգացման շնորհիվ կոլտնտեսությունները միայն պղտաբուծությունից կստանան մոտ 10 միլիոն ռուբլի դրամական եկամուտ, 1957 թվականին ստացած 4,4 միլիոն ռուբլու դիմաց։



Արտաշատի շրջանում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները ավելացնելու համար անհրաժեշտ է առաջին հերթին մտածել ջրովի տարածություններն ավելացնելու մասին։ Արդյոք շրջանում կա՞ն այդպիսի հնարավորություններ. այո, կան։ Առաջինը, ինչպես արդեն նշվեց, Ն. Դվինի ջրանցքի շուտափույթ ավարտումն է, որի միջոցով 1000 հեկտարից ավելի հողատարածություններ ոռոգելի կդառնան։ Բացի դրանից, հնարավոր է ջրհան կայանների միջոցով, մոտ 200—250 հեկտար ոռոգելի դարձնել Ն. Ջրաշենի կոլտնտեսությունում, ջուրը վերցնելով Ստալինյան ջրանցքից։ Հնարավոր է նաև ոռոգել Աբովյանի, Քաղցրաշենի, Ջովաշենի, Վարդաշենի, Այգեզարդի և շատ ուրիշ կոլտնտեսությունների զգալի տարածություններ։

Արտաշատի շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունները հաշվի առնելով անցյալում ձեռք բերած հաջողությունները և առանձին բնագավառներում թույլ տված սխալները, խորամուխ լինելով կոլտնտեսությունների էկոնոմիկայի մեջ՝ ռացիոնալ կերպով կօգտագործեն եղած բոլոր ռեսուրսները, կանեն ամեն ինչ գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ պարտիայի առաջադրած խնդիրները պատվով կատարելու համար։

Ժ. ՍԱՆՈՅԱՆ
ՀԿԿ Արտաշատի շրջկոմի քարտուղար

---

# ՄԱՐՈԿԿՈՅԻ ԱԶԳԱՅԻՆ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

Լ. ՄԱՆԱՍԱՐՅԱՆ

Մարոկկոն հյուսիս-արևմտյան Աֆրիկայի երկրներից է։ Նրա տարածությունը 440 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչությունը՝ 10,4 միլիոն։ Երկրի բնակչության գերակշռող մասը բնիկ մարոկկացիներ են, որոնց 60 տոկոսից ավելին խոսում է արաբերեն լեզվով, և մոտավորապես 40 տոկոսը՝ բերբերյան բարբառով։ Բացի դրանից, Մարոկկոյում ապրում են 400 հազարից ավելի եվրոպացիներ, գլխավորապես ֆրանսիացիներ, որը վերջին մի քանի տասնամյակներում իրականացվող գաղութակալության հետևանք է։

Սկսած IX դարից Մարոկկոն գոյություն ուներ որպես անկախ պետություն։ XII և XIII դարերը համարվում են միջին դարերի մարոկկոյական պետության համեմատաբար մեծ ծաղկման ժամանակաշրջանը։ XIX դարի կեսերին անկում ապրած և ներքին երկպառակություններից ծվատված ֆեոդալական մարոկկոյական պետությունը դառնում է գաղութակալական էքսպանսիայի օբյեկտ։ Մարոկկոն իմպերիալիստներին հրապուրում է ինչպես իր աշխարհագրական դիրքով, այնպես էլ իր բնական հարստություններով։ Լինելով Ատլանտյան օվկիանոսի և Միջերկրական ծովի ափին, Մարոկկոն գտնվում է Եվրոպայից Արևմտյան և Հարավային Աֆրիկա տանող ծովային կարևոր ճանապարհների վրա։ Այժմ Մարոկկոյի վրայով են անցնում նաև Եվրոպան ո՛չ միայն Արևմտյան և Հարավային Աֆրիկայի, այլև Հարավային Ամերիկայի հետ միացնող օդային գծերը։ Ինչ վերաբերում է բնական հարստություններին, ապա Մարոկկոյի ընդերքը հարուստ է ֆոսֆորիտների, կոբալտի, մարգանեցի, երկաթահանքերի, ցինկի, կապարի, մոլիբդենի, անագի, արծաթի, ոսկու մեծ պաշարներով։ Ֆոսֆորիտների արդյունահանմամբ Մարոկկոն կապիտալիստական աշխարհում ներկայումս գրավում է 2-րդ տեղը, կոբալտով՝ 3-րդ տեղը, մարգանեցով՝ 4-րդ տեղը։

Մարոկկոյում տիրակալության հասնելու համար իմպերիալիստական պետությունների միջև ծավալվեց սուր պայքար, որից հաղթող դուրս եկավ Ֆրանսիան։ Օգտվելով Անգլիայի աջակցությունից, նա կարողացավ հաղթահարել իր հիմնական հակառակորդի՝ Գերմանիայի դիմադրությունը և 1912 թվականին իր տիրապետությունը հաստատեց Մարոկկոյի մեծ մասի վրա։ Մարոկկոյի զավթումը ձևակերպվեց 1912 թվականի մարտի 30-ին Ֆեսում կնքված պայմանագրով, որով Մարոկկոն դարձավ Ֆրանսիայի պրոտեկտորատը։

Պրոտեկտորատային ռեժիմի հաստատումից հետո սկսվում է ֆրանսիական կապիտալի ուժեղ ներթափանցումը Մարոկկոյի էկոնոմիկայի մեջ և հողերի զավթումը՝ ֆրանսիական գաղութարարներին բաժանելու համար։ Երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբին Մարոկկոն մի իսկական գաղութ



էր, որի էկոնոմիկայի մեջ լրիվ իշխում էին օտարերկրյա մոնոպոլիաները, մեծ մասամբ՝ ֆրանսիականը։ Ֆրանսիական իմպերիալիզմը, օգտագործելով իր ադմինիստրատիվ իշխանությունը, բոլոր տեսակի միջոցներով արգելակում էր իր մրցակիցների մուտքը Մարոկկոյի տնտեսության մեջ։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, սկսած 1946 թվականից, Մարոկկո հորդեց ֆրանսիական կապիտալի նոր հոսանք։ Հետպատերազմյան շրջանում Ֆրանսիայի կառավարող շրջանները Մարոկկոյում ընդհարվեցին վտանգավոր հակառակորդի հետ, ինչպիսին ամերիկյան իմպերիալիզմն է, որը ձգտում է ամենուրեք դուրս մղել երկրորդ համաշխարհային պատերազմի հետևանքով թուլացած գաղութակալ տերություններին։ Մարոկկոյում ձեռք բերելով ստրատեգիական դիրքեր, ամերիկյան իմպերիալիստները դրա հետ միասին ձգտում են ներթափանցել այդ երկրի տնտեսության մեջ։ Ամերիկյան կապիտալը ձգտում է թափանցել կոբալտի, մարգանեցի, վոլֆրամի արդյունահանման ձեռնարկությունները։

Սակայն չնայած ամերիկացիների կողմից կատարված տնտեսական ներթափանցման փորձերին, ֆրանսիական կապիտալը շարունակում է պահպանել Մարոկկոյի տնտեսության վճռական դիրքերը։

Ըստ ազգային պատկանելության, Մարոկկոյում կապիտալը բաշխված է հետևյալ ձևով. ֆրանսիական՝ 56 տոկոս, Մարոկկոյում ապրող եվրոպացիներին (այսինքն՝ դարձյալ, համարյա ամբողջությամբ ֆրանսիացիներին)՝ 35 տոկոսից ավելին, այլ երկրների՝ 5 տոկոս, մարոկկոյական՝ 5 տոկոսից պակաս։

Այդպիսով, թեև ամերիկյան իմպերիալիստներին չհաջողվեց Մարոկկոյում քայքայել իրենց ֆրանսիական հակառակորդների դիրքերը, բայց մարոկկոյական ներմուծման մեջ այժմ նրանք գրավում են երկրորդ տեղը։

Հետպատերազմյան շրջանում ֆրանսիական և ամերիկյան կապիտալիստների մեջ մղվող պայքարում ֆրանսիացիները կարողացան դիմադրել վտանգավոր մրցակցին, օգտագործելով Մարոկկոյում իրենց ադմինիստրատիվ իշխանությունը։ Այնուամենայնիվ, ԱՄՆ-ի ղեկավար շրջանները բացի տնտեսականից, Մարոկկոյում ունեն նաև ռազմա-ստրատեգիական շահեր։ Հատկապես ֆրանս-ամերիկյան տնտեսական վեճի ամենաթունդ շրջանում ամերիկյան հրամանատարությունը Մարոկկոյի տերիտորիայում սկսեց իր ռազմա-օդային բազաների կառուցումը։ Հենց դրանով էլ պետք է բացատրել ամերիկյան կառավարության «ներողամտությունը» Մարոկկոյում ամերիկյան տնտեսական շահերի դեմ ուղղված սահմանափակման քաղաքականության հարցում։ ԱՄՆ-ի կառավարությունը ուժեղ ճնշում չգործադրեց Ֆրանսիայի վրա, որովհետև չէր ուզում սրել հարաբերությունները Ֆրանսիայի, Ատլանտյան պակտի մեջ մտնող իր ամենակարևոր դաշնակիցներից մեկի հետ, որը ամերիկյան զինված ուժերին բազաներ էր տրամադրում ինչպես իր սեփական տերիտորիայում, այնպես էլ իր պրոտեկտորատի տերիտորիայում։ Այստեղից էլ բխում է ամերիկյան քաղաքականության որոշակի երկվությունը Ֆրանսիայի և նրա հյուսիս-աֆրիկյան տերությունների և, մասնավորապես, Մարոկկոյի նկատմամբ. մի կողմից ԱՄՆ-ը ձգտում են դուրս մղել Ֆրանսիային իր գաղութներից, մյուս կողմից էլ չեն ուզում սրել հարաբերությունները նրա հետ, որովհետև դա կարող է երկպառակություն առաջացնել Հյուսիս-Ատլանտյան

*ազրեսիվ բլոկի մեջ, որը ամերիկյան քաղաքականության գործիքն է համաշխարհային մասշտաբով։*

*Մարոկկոյի գաղութացման պրոցեսը իմպերիալիստների համար թեթև ու սահուն չի անցել։ Պրոտեկտորատային ռեժիմի հաստատումից հենց անմիջապես հետո մարոկկոյական ցեղերը, չցանկանալով հաշտվել օտարերկրյա տիրապետության հետ, զինված պայքար սկսեցին ֆրանսիական և իսպանական զավթիչների դեմ։ Մարոկկոյի ժողովրդի զինված պայքարը տևեց մինչև քսան տարի։ Հետագայում երեսնական թվականներին ծնունդ առան մարոկկոյական առաջին ազգային քաղաքական պարտիաները և կազմակերպությունները, որոնք նպատակ դրին՝ պաշտպանել մարոկկոյական ժողովրդի ազգային և քաղաքական իրավունքները։*



*Ազգային-ազատագրական շարժումը Մարոկկոյում ուժեղ թափով սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմի վերջերին։ Դրան նպաստեց ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների դեմ հակահիտլերյան կոալիցիայի տարած հաղթանակը, որի մեջ վճռական դերը կատարեց Սովետական Միությունը։ Մարոկկոյի ժողովուրդները Ասիայի ժողովուրդների ետևից պայքարի ելան գաղութային ստրկության դեմ. բացի արտաքին ֆակտորներից, պետք է նշել նաև ներքին կարգի պատճառներ, որոնք նպաստեցին վերջին տարիների ազգային-ազատագրական շարժման աճմանը։ Այդ պատճառների թվին պետք է դասել Մարոկկոյի արդյունաբերական զարգացումը, որն առաջին հերթին հետևանք է մետրոպոլիաների պահանջմունքով առաջացած լեռնահանքային արդյունաբերության նշանակալի աճի։ Մարոկկոյի բանվոր դասակարգի քանակական աճի մասին է վկայում այն, որ 1952 թվականին նրա շարքերում հաշվվում էր 380 հազարից ավելի մարդ (ներառյալ գյուղատնտեսական պրոլետարիատը), որ երկուս ու կես անգամ գերազանցում էր մինչպատերազմյան շրջանի բանվորների քանակը։*

*Պրոլետարիատի հետ միասին, որը հասարակության ամենաառաջավոր դասակարգն է, գաղութային լծի դեմ, ժողովրդի ազգային և սոցիալական ազատության համար մղվող պայքարի հետևողական մարտիկը. Մարոկկոյում աճեց նաև ազգային բուրժուազիան, որը նույնպես շահագրգռված է իմպերիալիզմի և ազգային ճնշման դեմ մղվող պայքարում, որքանով որ նա տուժում է իր գործունեությունը կաշկանդող օտարերկրյա մոնոպոլիաների ճնշումից։*

*Պատերազմի տարիներին իրենց գործունեությունը վերսկսեցին մարոկկոյական քաղաքական պարտիաները։*

*1943 թվականի հուլիսին ստեղծվեց Մարոկկոյի կոմունիստական պարտիան, որը նախկինում գոյություն ուներ որպես Ֆրանսիայի կոմունիստական պարտիայի մարոկկոյական ֆեդերացիա։ Մարոկկոյի ինքնուրույն կոմունիստական պարտիայի ստեղծումը մեծ նշանակություն ունեցավ Մարոկկոյի աշխատավորության շրջանում նրա ազդեցությունը ուժեղացնելու համար։*

*Իր գոյության հենց առաջին օրերից կոմպարտիան ակտիվ գործունեություն ծավալեց բանվոր դասակարգի մեջ։ Դեռ 1943 թվականին, կոմպարտիայի ջանքերի շնորհիվ վերստեղծվեցին պրոֆմիությունները, որոնք գաղութակալ*



*իշխանությունների կողմից արձակվել էին 1940 թվականին։ Ստեղծվեց Ֆրանսիայի Աշխատանքային համընդհանուր կոնֆեդերացիային հարող Մարոկկոյի միացյալ արհմիությունների համընդհանուր միությունը։ 1945 թվականի վերջին պրոֆմիությունների շարքերում հաշվվում էին 30 հազ. աշխատավորներ։ Կոմպարտիան սկսեց հրատարակել իր լրագրերը՝ «Էսպուար» («Հույս») շաբաթաթերթը՝ ֆրանսերեն լեզվով և «Խայատ աշ-Շաաբ»-ը («Ժողովրդի կյանքը») արաբերենով։*

*1946 թվականի օգոստոսին կոմպարտիան ընդունեց մի մանիֆեստ, որում ուղղակի պահանջվում էր վերացնել Ֆեսի պայմանագիրը պրոտեկտորատի մասին, 1912 թվականի ֆրանս-իսպանական համաձայնագիրը և բոլոր այն պայմանագրերը, որոնք զրկում են Մարոկկոյին անկախությունից, գոտիների լիկվիդացում և երկրի միավորում, օտարերկրյա մոնոպոլիաների տիրակալության լիկվիդացիա, օտարերկրյա բոլոր զորքերի դուրս բերում Մարոկկոյի տերիտորիայից և դեմոկրատական հիմունքներով ազգային ժողովի ընտրություն, որը պետք է մշակի կոնստիտուցիա, ստեղծի կառավարություն, նոր ադմինիստրացիա և ազգային բանակ։ Մարոկկոյական կոմպարտիայի կողմից մշակված այդ ծրագիրը համապատասխանում էր մարոկկոյական ժողովրդի բոլոր խավերի շահերին և նպատակ էր հետապնդում միավորելու երկրի հայրենասիրական բոլոր ուժերը։ Կոմպարտիան ձգտում էր ստեղծել միացյալ ազգային ճակատ ընդդեմ իմպերիալիզմի։ Սակայն, բուրժուա-նացիոնալիստական պարտիաների լիդերների ընդդիմադրության հետևանքով, միացյալ ազգային հակաիմպերիալիստական ճակատ չստեղծվեց։*

*1944 թվականին իրենց գործունեությունը վերսկսեցին նաև Մարոկկոյի բուրժուա-նացիոնալիստական պարտիաները, որոնք արգելվել էին պատերազմից առաջ։*

*1943 թվականի դեկտեմբերին ազգայնական գործիչների մի խումբ կազմակերպեց «Անկախության պարտիա», որը հայտնի է արաբերեն «Իստիկլյալ» (անկախություն) անունով։ Այդ պարտիային վիճակված էր հետագայում կարևոր դեր խաղալու մարոկկոյական ժողովրդի ազգային-ազատագրական պայքարում։*

*1944 թվականի հունվարի 29-ին ֆրանսիական իշխանությունները ձերբակալեցին «Իստիկլյալ» պարտիայի ղեկավարներին։ Բայց «Իստիկլյալ» պարտիան, չնայած իր լիդերների նկատմամբ կիրառված ռեպրեսիային, շարունակեց իր գործունեությունը, ամենից առաջ պահանջելով Մարոկկոյի անկախության ճանաչում։*

*1946—1947 թթ. ֆրանսիական իշխանությունները կատարեցին մի քանի լիբերալ ժեստեր. ազատություն տրվեց «Իստիկլյալի» լիդերներին, մի քիչ թուլացավ վերահսկողությունը մամուլի նկատմամբ և այլն։*

*1946 թվականին կազմակերպվեց բուրժուա-նացիոնալիստական մի այլ պարտիա՝ «Անկախության դեմոկրատական պարտիան»։ Այս պարտիան որպես իր հիմնական խնդիր, նույնպես առաջ քաշեց պրոտեկտորատի լիկվիդացման և մարոկկոյական անկախ պետության ստեղծման հարցը։*

*1944—47 թթ. շրջանը եղավ գաղութակալական իշխանությունների ռեպրեսիաների թուլացման ժամանակաշրջան, որից օգտվեցին մարոկկոյական ազգային պարտիաները՝ իրենց ազդեցությունը ուժեղացնելու համար։ 1947 թվականի ապրիլին Մարոկկոյի սուլթան Սիդի Մոհամմեդ բեն Յուսեֆը իր՝ Տան-*

ժերում գտնված ժամանակ հանդես եկավ ճառով, որով իր համակրանքն արտահայտեց արաբական երկրների Լիգայի նկատմամբ և վավերացրեց մարոկկոյական ժողովրդի իրավունքը անկախության համար։ Հենց դրանով էլ սուլթանը ֆրանսիական գաղութակալական քաղաքականության նկատմամբ բացահայտ կերպով օպոզիցիոն դիրք գրավեց։

Սուլթանի այդ ճառը ֆրանսիական գաղութակալական շրջաններում առաջացրեց դժգոհություն։ Հետևանքը եղավ այն, որ 1947 թվականի հունիսին գլխավոր ռեզիդենտ նշանակվեց գեներալ Ժյուենը։ Դրանով էլ վերջացավ կեղծ լիբերալիզմի շրջանը։ Այդ մոլի գաղութարարն անմիջապես վերականգնեց «ուժեղ ձեռքի» քաղաքականությունը, ամենից առաջ այն սկսելով կոմունիստական պարտիայի և պրոֆմիությունների հետապնդումից։ 1948 թվականին ստիպված էր ընհատակ անցնելու Մարոկկոյի կոմունիստական պարտիայի կենտրոնական կոմիտեի քարտուղար Ալի Յաթան։ Հետագայում նա բազմաթիվ անգամ ենթարկվեց ձերբակալության։ Հետապնդումները անշուշտ թուլացրին կոմպարտիային, բայց այնուամենայնիվ նա շարունակեց իր ակտիվ գործունեությունը։ Հետապնդումների ենթարկվեց նաև «Իստիկլյալ» պարտիան։

Կիրառելով ռեպրեսիայի քաղաքականություն, գեներալ Ժյուենը միաժամանակ ձգտում էր սուլթանին հարկադրել ընդունելու ռեֆորմների մի պլան, որը պաշտոնապես հենվում էր «միատեղ սուվերենիտետի» սկզբունքի վրա, այսինքն՝ «Ֆրանսիայի և Մարոկկոյի սուվերենիտետի» վրա։ Այդպիսով, Մարոկկոն պաշտոնապես պետք է զրկվեր սուվերենիտետի իր բաժնից՝ հօգուտ Ֆրանսիայի։ Լայն հասարակայնությունը, ի դեմս մարոկկոյական քաղաքական պարտիաների, ինչպես և սուլթանը, դեմ գնացին այդ ռեֆորմների պլանի ընդունմանը։ Երկրում բարձրացավ համընդհանուր դժգոհություն։ Շարժման մեջ ընդգրկվեցին բնակչության ավելի լայն խավեր։ Ֆրանսիական կառավարությունը որոշեց դիմել նոր մանևրների։ 1950 թվականի հոկտեմբերին ֆրանսիական ռեսպուբլիկայի պրեզիդենտ Վենսան Օրիոլը սուլթանին հրավիրեց Փարիզ՝ բանակցությունների համար։ Սակայն այդ բանակցությունները վերջացան անհետևանք, քանի որ սուլթանը պնդում էր վերացնել պրոտեկտորատի վերաբերյալ պայմանագիրը և այն փոխարինել ֆրանս-մարոկկոյական նոր պայմանագրով։ Այդ պահանջները բավարարելուց ֆրանսիական կառավարության հրաժարվելը Մարոկկոյի ժողովրդի մեջ առաջացրեց դժգոհության փոթորիկ։ Ռաբատում և Կասաբլանկայում տեղի ունեցան բնակչության ցույցեր, որոնք արտահայտում էին իրենց պաշտպանությունը սուլթանի առաջ քաշած պահանջներին։

Քիչ ժամանակ անց Մարոկկոյում ծավալվեցին նոր արյունալի դեպքեր։ 1952 թվականի դեկտեմբերի 7-ին և 8-ին Կասաբլանկայում տեղի ունեցավ 24-ժամյա գործադուլ՝ որպես բողոքի արտահայտություն Թունիսի պրոֆմիութենական գործիչ Ֆերխադ Խաշեդի սպանության դեմ։ Ոստիկանությունը դրան պատասխանեց մասսայական դատաստանով։

Արյունալի մեթոդներով դատաստան տեսնելով ազգային-ազատագրական շարժման հետ, ֆրանսիական իշխանությունները միաժամանակ ձգտում էին սուլթանին պարտադրել ռեֆորմների նոր նախագիծ։ Նրանց էությունը հանգում էր էլ ավելի մեծ նվազեցման այն արտոնությունների, որոնցից դեռևս օգտվում էին սուլթանը և նրա կառավարությունը։ Այդ ռեֆորմները նպատակ



էին հետապնդում «դեմոկրատացման» ռեժիմի անվան տակ սուլթանին դարձնել ֆրանսիական գլխավոր ռեզիդենտի ամբողջովին իրավունքներից զուրկ մարիոնետը և, իրականում, լիկվիդացնելով պրոտեկտորատի ռեժիմը, Մարոկկոն վերածել սովորական գաղութի։ Սուլթանը վճռականորեն հրաժարվեց ընդունել այդ ռեֆորմները։ Դրանից հետո գլխավոր ռեզիդենտը, ֆրանսիական կառավարության հավանությամբ և ոգեշնչվելով Ֆրանսիայի մոնոպոլիստական շրջանների կողմից, որոշեց հեռացնել ազգային շարժմանը հարած սուլթանին և փոխարինել նրան այնպիսի մարիոնետով, որը ենթարկվի գաղութակալ իշխանություններին։ Եվ այդպես, սուլթան ընտրվեց խոշոր ֆեոդալ, տգետ ծերունի Սիդի Մոհամմեդ Մուլայ բեն Արաֆան։

Ֆրանսիական գաղութակալ շրջանները ցնծության մեջ էին, նոր սուլթանը պատրաստ էր ընդունելու գլխավոր ռեզիդենտի ամեն տեսակի առաջարկները։ Եվ իսկապես, 1953 թվականի սեպտեմբերի 9-ին նա համաձայնեց օրենսդրական իշխանությունը հանձնելու, այսպես կոչված, վեզիրների և դեպարտամենտի դիրեկտորների խորհրդին, որը բաղկացած էր 16 ֆրանսիացիներից և 14 մարոկկոյացիներից։ Այսուհետև այդ խորհրդի կողմից ընդունված ամեն մի օրենք կարող էր գործողության մեջ մտնել, եթե այն նույնիսկ հաստատված չլիներ սուլթանի կողմից։ Դրա համար բավական էր, որ խորհուրդը երկրորդ անգամ վերանայելիս ընդուներ այդ օրենքն իր անդամների երկու երրորդի մեծամասնությամբ։ Այսպիսով, 1953 թվականի սեպտեմբերի 9-ի դեկրետը սուլթանի իշխանությունը վերածեց դատարկ ֆիկցիայի։

Ֆրանսիական գաղութարարները լիովին գոհ էին նոր սուլթանից։

Սակայն գաղութարարների ուրախությունը վաղաժամ էր։ Օրինական սուլթանի տապալումը և դրան հետևած դեկրետները, որոնք ֆրանսիական իմպերիալիստները պարտադրել էին իրենց դրածոյին, մարոկկոյական ժողովրդի բոլոր խավերի մեջ առաջացրին այնպիսի զայրույթ, որ ազգային-ազատագրական շարժումը հասավ էլ ավելի մեծ, մինչ այդ չտեսնված մասշտաբների։ Բնակչությունը սկսեց բոյկոտի ենթարկել ֆրանսիական խանութները և ապրանքները, ֆրանսիական ձեռնարկություններում հաճախակի դարձան սաբոտաժի դեպքերը։ Հետզհետե հաճախակի դարձան զինված հարձակումները գյուղական վայրերում ապրող ֆրանսիական պաշտոնյաների, գաղութարարների և այն մարոկկոյացիների վրա, որոնք օգնում էին ֆրանսիական իշխանություններին։

Ֆրանսիական իշխանությունները մարոկկոյական ժողովրդի նկատմամբ կիրառեցին ամենադաժան ռեպրեսիաներ, բայց վախեցնել չկարողացան։ Բոյկոտի, սաբոտաժի և տեռորի ալիքը չդադարեց։

Պետք է ասել, որ արաբական պետություններն անտարբեր չմնացին Մարոկկոյի դեպքերի նկատմամբ։ Դեռևս 1951 թվականի հոկտեմբերին Մարոկկոյի հարցը նրանք քննարկման մտցրին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի վեցերորդ սեսիայում։ Սակայն հենվելով Արևմուտքի գաղութակալ տերությունների պաշտպանության վրա՝ Ֆրանսիային հաջողվեց ՄԱԿ-ի վեցերորդ սեսիայում հասնել Մարոկկոյի հարցը օրակարգի մեջ մտցնելու արաբական պետությունների առաջարկության մերժմանը։

Մեկ տարի անց արաբական և ասիական երկրների մի խումբ (Աֆղանիստան, Բիրմա, Եգիպտոս, Իրան, Իրաք, Եմեն, Հնդկաստան, Ինդոնեզիա, Լիբանան, Պակիստան, Սաուդական Արաբիա, Սիրիա, Ֆիլիպիններ) Մարոկկոյի

հարցը, այս անգամ Թունիսի հարցի հետ նորից ներկայացրին ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի հերթական սեսիայի քննարկմանը։ Յոթերորդ սեսիայում արաբական պետությունների առաջարկությունը պաշտպանվեց ասիական բոլոր պետությունների կողմից, դրանց թվում՝ Հնդկաստանի, Տաիլանդի, Բիրմայի, Ֆիլիպինների կողմից, երկրներ, որոնք մուսուլմանական չեն և աշխարհագրական տեսակետից բավական հեռու են ընկած Հյուսիսային Աֆրիկայից։ Հատկապես 1952 թվականին, Մարոկկոյի և Թունիսի հարցը քննարկելիս, առաջին անգամ ՄԱԿ-ում վառ կերպով երևան եկավ Ասիայի և Աֆրիկայի երկրների համերաշխությունը, կամ ինչպես արևմտյան բուրժուական մամուլն է ասում՝ «ասիաաֆրիկյան բլոկը»։

1953 թվականին, երբ սուլթան Մոհամմեդ բեն Յուսեֆին իշխանությունից զրկելուց հետո իրադրությունը Մարոկկոյում էլ ավելի էր սրվել և ամբողջ երկրով մեկ պայքար էր ծավալվել ֆրանսիական գաղութարարների կամայականությունների դեմ, արաբական և ասիական երկրները Մարոկկոյի հարցը քննարկման մտցրին ՄԱԿ-ի Անվտանգության Խորհուրդ։ Բայց արևմտյան տերությունների ճնշման տակ Անվտանգության Խորհուրդը այն չմտցրեց իր օրակարգի մեջ։ Այդ ժամանակ արաբական և ասիական երկրները Մարոկկոյի հարցը նորից դրին Գլխավոր Ասամբլեայի առջև։ Արաբա-ասիական պետություններն առաջարկեցին բանաձևի մի նախագիծ, որում Ֆրանսիային առաջարկվում էր Մարոկկոյում վերացնել ռազմական դրությունը և մյուս արտակարգ միջոցառումները, ազատել քաղաքական բանտարկյալներին, վերականգնել քաղաքական ազատությունները, հինգ տարվա ընթացքում վերականգնել Մարոկկոյի լրիվ անկախությունն ու սուվերենիտետը։

1953 թվականի նոյեմբերի 13-ին Գլխավոր Ասամբլեայում տեղի ունեցավ այդ բանաձևի քվեարկությունը։ Այն մերժվեց, որովհետև չհավաքեց ձայների երկու երրորդը։ Բանաձևին կողմ քվեարկեցին արաբական և ասիական պետությունները, Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները, ինչպես նաև Սկանդինավյան և լատինա-ամերիկյան մի քանի երկրներ։ Ամերիկայի Միացյալ Նահանգները, Արևմուտքի գաղութակալական տերությունների հետ միասին ակնառու կերպով քվեարկեցին բանաձևի դեմ։

Այդ քվեարկությունը մերկացրեց Ամերիկայի Միացյալ Նահանգների կեղծ հակագաղութակալությունը, որն այնքան լայն կերպով ռեկլամվում է նրանց կառավարող շրջանների կողմից։

1955 թվականի աշնանը իրադրությունը Մարոկկոյում խիստ փոխվեց։ Բանն այն էր, որ Սիդի Մոհամմեդ բեն Յուսեֆ սուլթանի իշխանազրկումից հետո անցած երկու տարիների ընթացքում դրությունը Մարոկկոյում շարունակվում էր սրվել, հաճախակի էին դարձել Մարոկկոյի ֆրանսիական ձեռնարկությունների սաբոտաժի երևույթները, ֆրանսիական գաղութարարների և նրանց տեղական աջակիցների վրա կատարվող հարձակումները։ Ֆրանսիական ապրանքների չընդհատվող տնտեսական բոյկոտը մեծ վնաս էր հասցնում ֆրանսիական գործարար շրջանների շահերին։

Ֆրանսիական գաղութակալ իշխանությունների ռեպրեսիաները տեղական բնակչության նկատմամբ չկարողացան կոտրել մարոկկոյական ժողովրդի շարժման դիմադրողականությունը։ Անընդհատ մասսայական բնույթ ստացող այդ շարժումը սպառնում էր վերածվելու իսկական ազգային-ազատագրական պատերազմի։



Մարոկկոյում ստեղծված դրությունն անբարենպաստ էր անդրադառնում նաև Ֆրանսիայի միջազգային դիրքի վրա, նրա նկատմամբ թշնամական վերաբերմունք ստեղծելով արաբական ու ասիական շատ երկրների կողմից։ Ասիայի ու Աֆրիկայի երկրների 1955 թվականի ապրիլին Բանդունգում կայացած պատմական մեծ նշանակություն ունեցող կոնֆերանսը դատապարտեց ֆրանսիական գաղութակալական քաղաքականությունը Հյուսիսային Աֆրիկայի երկրներում։ 1955 թվականին տեղի ունեցան հակաֆրանսիական ցույցեր ու միտինգներ Սիրիայում, Պակիստանում և այլ երկրներում, որոնց մասնակիցները դատապարտում էին ֆրանսիական գաղութակալական քաղաքականությունը և արտահայտում էին իրենց համերաշխությունը Մարոկկոյի ժողովրդին։

Այս բոլորը հասցրեց նրան, որ ֆրանսիական ղեկավար շրջանների համեմատաբար զգաստ մտքի տեր ներկայացուցիչները սկսեցին հասկանալ, որ ազգային-ազատագրական պայքարի դեմ նախկին ռեպրեսիաների քաղաքականության շարունակելը ոչ մի դեպքում Ֆրանսիայի դիրքերը չի ամրապնդի ոչ Մարոկկոյում, և ոչ էլ միջազգային արենայում ընդհանրապես։ Դրությունը հատկապես սրվեց 1955 թվականի օգոստոսին՝ Մոհամմեդ բեն Յուսեֆ սուլթանի իշխանազրկման երկրորդ տարեդարձի մոտեցման առթիվ։

1955 թվականի օգոստոսի 20-ին, Մոհամմեդ բեն Յուսեֆ սուլթանի իշխանազրկման երկրորդ տարեդարձի օրը ամբողջ Մարոկկոյում կատարվեցին բազմամարդ ցույցեր, որոնք շատ տեղերում հասցրին զինված ընդհարման ոստիկանության և զորքերի հետ։ Մի քանի շրջաններում բռնկվեցին իսկական ապստամբություններ։

1955 թվականի օգոստոսի 20-ի արյունալի իրադարձությունները լայն արձագանք գտան արաբական ու ասիական բոլոր երկրներում, որոնցում տեղի ունեցան հակաֆրանսիական բազմամարդ ցույցեր։

Եվրոպական երկրներում էլ հասարակական կարծիքը սկսեց գործել ոչ Ֆրանսիայի օգտին։ Ֆրանսիական շատ թերթեր նույնպես հանդես եկան Մարոկկոյի նկատմամբ վարվող քաղաքականության վերացման պահանջով։ Այդ պայմաններում ֆրանսիական կառավարության ղեկավար Էդգար Ֆորը ստիպված եղավ Էքս-Լե-Բենում բանակցություններ սկսել մարոկկոյական նացիոնալիստների լիդերների հետ, որոնք որպես նախնական միջոցառումներ առաջարկեցին հեռացնել մարիոնետային սուլթան Բեն-Արաֆային և ստեղծել գահական խորհուրդ, աքսորից վերադարձնել Մոհամմեդ բեն Յուսեֆ սուլթանին և վերականգնել նրան գահի վրա։ Դրանից հետո միայն, նացիոնալիստների կարծիքով, պետք է ստեղծվի մարոկկոյական կառավարություն, որը ֆրանսիական կառավարության հետ բանակցություններ կսկսի՝ Մարոկկոյի անկախության ճանաչման հիման վրա։

Ֆրանսիայի ռեակցիոն շրջանները ջանում էին վիժեցնել այդ բանակցությունները և կառավարությանը նորից մղել հին ուղին, փաստորեն Վիետնամի պատերազմի տխուր փորձի կրկնման ուղին։

Շուտով կազմվեց Մարոկկոյի ազգային կառավարությունը, որի ղեկավար նշանակվեց սուլթանի մերձավոր Էմբարեկ Սի Բեկկային։ Այդ ժամանակ Ֆրանսիայում, 1956 թվականի հունվարի 2-ի ընտրություններով իշխանության գլուխ անցավ Գի Մոլլեի կառավարությունը, որն իր գործողություններում սկզբնական շրջանում հենվում էր ձախ ուժերի վրա։ Ստիպված լինելով հաշ-

վի նստել այդ ժամանակ ստեղծված ներքին և միջազգային իրադրության հետ, Գի Մոլլեի կառավարությունը բանակցություններ սկսեց Մարոկկոյի հետ, որոնք 1956 թվականի մարտի 2-ին ավարտվեցին ֆրանս-մարոկկոյական համաձայնագրի կնքումով, որով վերացվեց պրոտեկտորատի մասին Ֆեսի պայմանագիրը և Ֆրանսիան ճանաչեց Մարոկկոյի անկախությունը: Համաձայնագրում նշվում էր, որ Ֆրանսիայի կողմից Մարոկկոյի անկախության ճանաչումը ենթադրում է դիպլոմատիայի և բանակ պահելու իրավունք:

1956 թվականի ապրիլի 26-ին ստեղծվեց Մարոկկոյի Արտաքին գործերի մինիստրություն և մինիստր նշանակվեց «Իստիկլյալի» գլխավոր քարտուղար Ահմեդ Բալաֆրեջը: 1956 թվականի նոյեմբերին Մարոկկոն ընդունվեց ՄԱԿ-ի մեջ:

Այսպիսով, մարոկկոյական ժողովրդի երկարատև, համառ պայքարը 1956 թվականին տվեց իր պտուղները: Մարոկկոն նորից ձեռք բերեց իր ազգային անկախությունը և դուրս եկավ միջազգային ասպարեզ, որպես սուվերեն պետություն:

Բայց մարոկկոյական ժողովուրդը դեռ պետք է նվաճի իր տնտեսական անկախությունը: Նրա էկոնոմիկայի մեջ դեռևս շարունակում են իշխել օտարերկրյա, գլխավորապես ֆրանսիական մոնոպոլիաները: Նրա տերիտորիայում են գտնվում դեռևս ամերիկյան ռազմական բազաները և ֆրանսիական ռազմական զորամասերը: Իսպանական գաղութարարները դեռևս իրենց ձեռքումն են պահում Մարոկկոյի հարավային գոտին, ինչպես և Իֆնայի տերիտորիան, որի բնակչությունը այժմ հերոսական պայքար է մղում իր հայրենիքին՝ անկախ Մարոկկոյին, միանալու համար:

Վերջապես, դեռ մինչև այժմ էլ շարունակվող պատերազմը, որ մղում են ֆրանսիական ղեկավար շրջանները Ալժիրի բնիկ ժողովրդի դեմ, նույնպես լուրջ սպառնալիք է ստեղծում Մարոկկոյի անկախության համար: Բացի դրանից, Մարոկկոն, զանազան իմպերիալիստական պետությունների շահերի բախման այդ նախկին կետը, այժմ էլ մնում է որպես նրանց տնտեսական մրցակցության դաշտ: Անկասկած, ֆրանսիական իմպերիալիստները ձգտելու են Մարոկկոյում պահպանելու իրենց տնտեսական տիրակալությունը, մանավանդ որ նրանց ամերիկյան մրցակիցները աշխատում են թափանցել Մարոկկոյի էկոնոմիկայի մեջ, քանի որ նրանց համար այժմ հեշտ է ֆրանսիական մոնոպոլիստների դեմ պայքարելը, որովհետև Ֆրանսիան Մարոկկոյում չունի ադմինիստրատիվ իշխանություն, որպեսզի արգելակի իր ամերիկյան մրցակիցներին: Այսպիսով, երկրի լրիվ ազատագրման խնդիրը դեռևս չի լուծված և մարոկկոյական ժողովուրդը կանգնած է իմպերիալիստական տերությունների ոտնձգությունների դեմ համառորեն պայքարելու անհրաժեշտության առաջ՝ տնտեսական լրիվ անկախության համար: Այնուամենայնիվ, մարոկկոյական պետության քաղաքական անկախության նվաճումը մեծ հաջողություն է մարոկկոյական ժողովրդի համար: Դա մի նոր, ուժեղ հարված էր իմպերիալիզմի գաղութային սիստեմին, որը արագացրեց նրա հետագա փլուզումը:

Դառնալով անկախ պետություն, Մարոկկոն իր քաղաքականությամբ նպաստում է խաղաղության ամրապնդմանը: Մարոկկոյի կառավարությունը Ֆրանսիայից պահանջում է դուրս բերել իր զորքերը Մարոկկոյի տերիտորիայից, բանակցություններ է վարում ԱՄՆ-ի կառավարության հետ ռազմական բազաները վերացնելու մասին, հրաժարվում է որևէ իմպերիալիստական



բլոկի մասնակցելուց: Մարոկկոն զգալի քաղաքական ու բարոյական օժանդակություն է ցույց տալիս Ալժիրի եղբայրական ժողովրդին, որը հերոսաբար պայքարում է ֆրանսիական գաղութարարների դեմ՝ անկախ, ազատ ապրելու իր իրավունքը պաշտպանելու համար:

Այսպես, երբ ստեղծվեց Ալժիրի Ռեսպուբլիկայի ժամանակավոր կառավարությունը, Մարոկկոն եղավ արաբական այն պետություններից մեկը, որը ճանաչեց նրան: 1958 թ. հոկտեմբերին Մարոկկոն ընդունվեց Արաբական Լիգայի մեջ, նրա կազմում գործակցելով Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայի և մյուս արաբական պետությունների հետ, որոնք պայքարում են իրենց անկախությունն ամրապնդելու համար:

Սովետական Միության ժողովուրդները, որ միշտ համակրանք են տածում դեպի ազատության ու անկախության համար պայքարող ժողովուրդները, անկեղծորեն ողջունեցին մարոկկոյական ժողովրդի անկախության նվաճումը, որն իր արտահայտությունը գտավ 1956 թվականի մարտին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ Կ. Ե. Վորոշիլովի Մարոկկոյի սուլթան Մոհամմեդ V-ին հղած ողջույնի հեռագրի մեջ: Այս տարվա մարտին Կ. Ե. Վորոշիլովը և Մարոկկոյի թագավոր (սուլթան) Մոհամմեդ V-ը, Մարոկկոյի անկախության երկրորդ տարեդարձի առթիվ նորից փոխանակեցին ողջույնի հեռագրեր, որոնցում հույս էր հայտնվում, որ «ՍՍՌՄ-ի և Մարոկկոյի բարեկամական հարաբերությունները կծավալվեն մեր ժողովուրդների բարօրության օգտին, խաղաղության ամրապնդման շահերի օգտին»:

Ներկայումս հաջողությամբ զարգանում են տնտեսական հարաբերությունները ՍՍՌՄ-ի և Մարոկկոյի միջև, որի մասին վկայում է այս տարվա ապրիլին Մոսկվայում ստորագրված առևտրական համաձայնագիրը:

Օգոստոսի վերջերին բանակցություններ են տեղի ունեցել Սովետական Միության և Մարոկկոյի միջև, որոնց հետևանքով երկու կողմերը համաձայնության են եկել՝ հաստատելու դիվանագիտական հարաբերություններ սկսած նույն թվի սեպտեմբերից: Այդ առթիվ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովը Մարոկկոյի Մինիստրների Խորհրդի նախագահ Ահմեդ Բալաֆրեջին հասցեագրած իր ուղերձում գրել է, որ «դիվանագիտական ներկայացուցչությունների փոխանակումը մեր երկրների միջև կնշանավորի կարևոր փուլ սովետա-մարոկկոյական հարաբերությունների զարգացման մեջ, կծառայի Մարոկկոյի և Սովետական Միության ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդմանը և կհանդիսանա կարևոր ներդրում խաղաղության ամրապնդման գործին»:

Սովետական մարդիկ, ձգտելով բարեկամական հարաբերությունների ամրապնդման ՍՍՌՄ-ի և Մարոկկոյի միջև, դրա հետ միասին մարոկկոյական ժողովրդին ցանկանում են հետագա հաջողություններ գաղութակալության հետևանքների լիկվիդացման գործում, իրենց անկախ հայրենիքի՝ Մարոկկոյի հաջող շինարարության գործում:

---

# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐՈՒՄ 1958 ԹՎԱԿԱՆԻՆ ԶԵՏԵՂՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ ԵՎ ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ

| | №№ | Էջ |
|---|---|---|
| *Միասնական և կուռ շարքերով* | 1 | 3—8 |
| *Հայաստանի Կոմունիստական պարտիայի XIX համագումարը* | 2 | 3—12 |
| *Գյուղատնտեսության հզոր վերելքի համար* | 2 | 13—18 |
| *Կոլտնտեսային կարգի զարգացման նոր էտապը* | 3 | 3—8 |
| *Ավելի խորացնել ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը* | 4 | 3—8 |
| *Պարտիական կազմակերպությունների հարազատ գործը* | 5 | 3—8 |
| *Քիմիան ի սպաս դնել ժողովրդի բարօրության գործին* | 6 | 3—12 |
| *Հանուն խաղաղության, ընդդեմ պատերազմի* | 7 | 3—8 |
| *Հզոր վերելքի ուղիներով* | 7 | 9—14 |
| *Ամրապնդել պարտիական և պետական կարգապահությունը* | 8 | 3—11 |
| *Լուրջ ուշադրություն հասարակական սննդին* | 8 | 12—18 |
| *Դեպի ՍՄԿՊ XXI համագումարը* | 9 | 3—7 |
| *Բաքվի հերոսական կոմունան* | 9 | 8—14 |
| *Պարտիական լուսավորության նոր ուսումնական տարին* | 9 | 77—82 |
| *Լենինյան կոմերիտմիության փառապանծ 40-ամյակը* | 10 | 3—11 |
| *Կարևոր իրադարձություն պարտիական կազմակերպությունների կյանքում* | 10 | 129—137 |
| *Լենինիզմի անպարտելի դրոշի ներքո* | 11 | 3—10 |
| *Կոմունիզմի կառուցման հռչակագիր ծրագիրը* | 11 | 11—18 |
| *Կոմունիզմի կառուցման նշանաբանով* | 12 | 3—8 |
| *Փայլուն հաղթանակների հանրագումարը* | 12 | 9—16 |

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

(գլուխներ՝ I, II, III, IV, տպագրված 10—12-րդ համարներում):

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

| | №№ | Էջ |
|---|---|---|
| Աբրահամյան Ա.— *Նոր տիպի համագործակցություն* | 2 | 55—62 |
| Աղոյան Ա.— *Խոսենք ըստ էության* | 3 | 114—128 |
| Աղոյան Ա.— *Մեծ գործերի ու պայծառ խոհերի գիրքը* | 8 | 19—31 |
| Աղոնց Մ.— *Կոլտնտեսային էկոնոմիկայի մի քանի հարցեր* | 12 | 42—53 |
| Ազատյան Հ.— *Ռումին ժողովրդի ազգային տոնը* | 8 | 43—52 |
| Ազիզբեկյան Հ.— *Համոզել և համակել ունկնդիրներին* | 7 | 99—103 |
| Ալեքյան Գ.— *Նոր ու ավելի մեծ հաջողությունների համար* | 1 | 57—66 |
| Ալեքսանյան Ա., Եղիազարյան Զ.— *Պարտլուսցանցի ուսումնական տարվա արդյունքները* | 6 | 98—104 |
| Ալեքսանյան Տ., Մարտիկյան Մ.— *Ստ. Շահումյանի պայքարը հանուն լենինյան ագրարային ծրագրի պաշտպանության* | 9 | 33—41 |
| Այվազյան Հ.— *Արհմիությունների աշխատանքը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին* | 2 | 37—44 |
| Աղաբաբյան Ս.— *Մեր ժամանակի հերոսի գեղարվեստական լիարժեք պատկերման համար* | 9 | 54—67 |
| Առուշանյան Շ.— *Սովետական լայն դեմոկրատիայի նշանաբանով* | 2 | 19—26 |



| | №№ | Էջ |
|---|---|---|
| Առուշանյան Շ.— *Սոցիալիստական ազգերի անխախտ բարեկամությունը* | 11 | 67—72 |
| Ամիրբեկյան Վ.— *Փոքրիկ թերթերի լավ գործերը* | 6 | 111—117 |
| Արզումանյան Գ.— *Թող բարգավաճի մեր Երևանը* | 8 | 32—42 |
| Ավետիսյան Վ.— *Հավերժ կենդանի Շահումյանը* | 10 | 12—23 |
| Բարլումյան Հ.— *Ավելի մոտ մասսաներին* | 8 | 90—98 |
| Բաղդասարյան Հովհ.— *ՍՄԿՊ XX համագումարի նշած ուղիներով* | 1 | 17—28 |
| | | 9—18 |
| Բաղդասարյան Հովհ.— *Պարտիական լուսավորության գաղափարական բարձր մակարդակի համար* | 9 | 59—68 |
| Բայրամյան Լ.— *Սոցիալիստական Բուլղարիան* | 9 | 68—76 |
| Բաղմանյան Ա.— *Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օրինաչափությունների շուրջը* | 4 | 9—18 |
| Բարսեղյան Խ.— *Ստ. Շահումյանի նոր նյութերը* | 9 | 15—32 |
| Բդոյան Լ.— *Ավելի շատ անասնաբուծական մթերքներ* | 4 | 87—92 |
| Բզնունի Ա.— *Ն. Գ. Չերնիշևսկի* | 7 | 26—38 |
| Գաբրիելյան Ս.— *Կուրորտային շինարարության հեռանկարները Հայաստանում* | 6 | 71—79 |
| Գաբուչյան Վ.— *Աշխատանքի ինտենսիվության ուժեղացումը որպես պրոլետարիատի աղքատացման գործոն* | 8 | 80—89 |
| Գասպարյան Դ.— *Արտաշատը կուլտուրական վերելքի ճանապարհին* | 3 | 77—84 |
| Գևորգյան Վ.— *Սովետական ժողովրդի բարեկեցության աճը* | 6 | 60—70 |
| Գևորգյան Ա.— *Պարտիական աշխատանքը շինարարական կազմակերպություններում* | 10 | 138—146 |
| Գևորգյան Լ.— *Ուսանողության դաստիարակությունը կարևոր խնդիր է* | 1 | 79—86 |
| Գրիգորյան Վ.— *Զարգացման լայն հեռանկարներ* | 4 | 93—97 |
| Դանիելյան Մ.— *Ինչ է կոմունիստական բարոյականությունը* | 1 | 95—104 |
| Դանիելյան Խ.— *Լավ դասախոսը հասարակական լավ գործիչ է* | 10 | 119—128 |
| Դիլանյան Ա.— *Միչուրինցիների առաջին քայլերը* | 7 | 76—82 |
| Դարբինյան Վ.— *Կոմերիտական ակտիվին դաստիարակել համեստության և ազնվության ոգով* | 9 | 83—90 |
| Զարոբյան Յա.— *Նախնական արդյունքներ, մի քանի կարևոր խնդիրներ* | 1 | 9—16 |
| Թելունց Ա.— *Մարքսիստական փիլիսոփայության կլասիկ աշխատությունը* | 11 | 73—84 |
| Թումանյան Հ.— *Հեռանկարային պլանավորման մի քանի հարցեր* | 5 | 77—86 |
| Թումանյան Հ.— *Մարդահամարի նշանակությունը սոցիալիստական պլանավորման գործում* | 12 | 54—63 |
| Ինճիկյան Հ.— *Պրոլետարական ինտերնացիոնալիզմի աննկուն մարտիկը* | 11 | 85—93 |
| Խաչատրյան Ռ.— *Ալլոյդ Ջորջը «Ճշմարտության» մունետիկի դերում* | 6 | 45—59 |
| Խաչատրյան Ս.— *Ոչխարաբուծության զարգացման համար* | 6 | 80—89 |
| Խոջաբեկյան Վ.— *Ռիթմիկ աշխատանքի դերը արտադրության մեջ* | 1 | 47—56 |
| Ծատուրյան Մ.— *Մեր սեմինարի փորձից* | 6 | 105—110 |
| Կիրակոսյան Ջ.— *Այդպես էլ սպասելի էր* | 2 | 63—69 |
| Կիրակոսյան Ջ.— *Ընդդեմ մարքսիզմ-լենինիզմի ռևիզիայի* | 5 | 47—58 |
| Կիրակոսյան Ջ.— *Խաղաղության ուժերի կարևոր հաղթանակը* | 9 | 106—115 |
| Կիրակոսյան Ա.— *Աշխատանքը պարտիական ակտիվի հետ* | 6 | 90—97 |
| Կիրակոսյան Ն.— *Վերակառուցումից հետո* | 3 | 85—88 |
| Կիրակոսյան Ա.— *Կյանքի հետ կապված քաղաքական ագիտացիայի համար* | 10 | 147—152 |
| Կոլոմիյչենկո Ի.— *Պայքարի ու հաղթանակների 40 տարին* | 7 | 15—25 |
| Կոստանյան Ա.— *Աշխատավորներին ակտիվ մասնակից դարձնել արտադրության կառավարմանը* | 9 | 98—105 |
| Կոկինոս Պ.— *Էջեր բալկանների հայկական կոմունիստական կազմակերպությունների պատմությունից* | 4 | 43—54 |

## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### Կոնսուլտացիա

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.





*ՎՖ 09544* *Պատվեր 2964* *Տիրաժ 6400*

Տպ. 8 մամուլ, մամուլում 68.840 նիշ: *Ստորագրված է տպագրության 24/XII 1958 թ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:*

Գինը 2 ռ. 50 կ.



# Բ Ա Ց Վ Ա Ծ Է

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ

# „ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ"

ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ

1959 ԹՎԱԿԱՆԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ՝

Մեկ տարին — 30 ռուբլի, վեց ամիսը — 15 ռուբլի:

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է՝**

ԿԱՊԻ ԲՈԼՈՐ ԳՐԱՍԵՆՅԱԿՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԳՈՐԾԱՐԱՆՆԵՐՈՒՄ, ՖԱԲՐԻԿԱՆԵՐՈՒՄ, ՀԻՄՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ, ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ, ՆՏ ԿԱՅԱՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ:

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

